### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5** ՄԱՅԻՍ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

1969 թվականի հոկտեմբերի 1): «Սառը պատերազմի այդ ոգին ամրապնդված է ՉԿԿ կենտկոմի անփառունակ XII «պլենումի» կողմից:

Այն լկտի զինված պրովոկացիաները, որ Մաո Ցզե-դունի խումբը կազմակերպել էր ընթացիկ տարվա մարտի 2-ին, 14-ին և 15-ին, հանդիսանում են հակասովետական գծի կենտրոնական օղակներից մեկը: Այդ պրովոկացիաներից անմիջապես հետո Չինաստանում բարձրացված հակասովետական հիստերիան կարևոր մոմենտ էր մաոիստների այն հաշիվներում, որոնց նպատակն էր ՉԿԿ առաջիկա IX համագումարում ամրապնդել հակասովետական պլատֆորմը որպես կուսակցության գլխավոր գիծ, չինական աշխատավորների ուշադրությունը շեղել մաոիստական ներքին և արտաքին քաղաքականության ձախողումներից, շովինիստական տրամադրություններ բորբոքել երկրում և այդ հիման վրա փորձել համախմբել իրենց կողմնակիցների ուժերը: Միջազգային մասշտաբներով վերցրած այդ պրովոկացիան ուղղված է այն բանին, որպեսզի դժվարացնի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության հրավիրումը, օժանդակի այն անսկզբունք քաղաքական անուրդին, որ Մաո Ցզե-դունի խումբը անց է կացնում իմպերիալիստական պետությունների հետ, ու նախ և առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգների և ԳՖՀ-ի հետ:

Սովետա-չինական սահմանում այդ արյունահեղ պրովոկացիան՝ երկու կողմերից էլ մարդկային զոհերով, ցայտուն վկայությունն է մաոիստների ավանտյուրիստական, միլիտարիստական քաղաքականության, հանուն որի, ինչպես բազմիցս հայտարարել է այդ մասին Մաո Ցզե-դունը, նա պատրաստ է զոհել Չինաստանի բնակչության կեսը և նույնիսկ երկրագնդի բնակչության կեսից ավելին:

Վերջին ժամանակները չինական պրոպագանդան խիստ ուժեղացրել է զրպարտչական հարձակումները ՍՍՀՄ և ՍՄԿԿ ներքին կյանքի վրա: Մաոիստները փաստորեն հանդես են գալիս մեր երկրի տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման հիմնական գլխավոր ուղղությունների դեմ: Լայնորեն կիրառվում է այն անհեթեթությունների հորինումը, թե սովետական մարդիկ իբր «ջերմորեն սիրում են» Մաո Ցզե-դունին: Չինաստանից ՍՍՀՄ ժողովուրդների հասցեով ուղղակի դիմումներ են հնչում՝ «զենքի դիմելու» և ապստամբության դիմելու» կոչերով: Ըստ ամենայնի դատելով, Մաո Ցզե-դունը հիմնական դիրքորոշումը ուղղում է այն բանին, որ քայքայի մեր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովրդի և կուսակցության միասնությունը՝ նրա լենինյան կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ: Վերջին հաշվով Մաոն կուզենար հասնել այն բանին, որ ՍՍՀՄ ժողովուրդներին պարտադրեր իր գաղափարական-քաղաքական պլատֆորմը, մեր կուսակցությունն ու երկիրը դարձներ իր քաղաքականության գործիքը:

Մաոիստների հակասովետական գործունեությունը, բնականաբար, չէր կարող չանդրադառնալ սովետա-չինական հարաբերությունների վրա՝ կուսակցական և պետական ասպարեզներում: 1960 թվականից սկսած չինական իշխանությունները սկսեցին խախտումներ հարուցել ՍՍՀՄ-ի սահմանում: 1964 թվականին Մաո Ցզե-դունը տերիտորիալ պահանջներ առաջադրեց Սովետական Միությանը (զրույցը ճապոնական սոցիալիստների հետ): ԿԺՀ և ՍՍՀՄ միջև տնտեսական համագործակցությունը ընդհատվեց Մաոյի խմբի մեղքով 1965 թվականին: Իսկ 1966 թվականից Մաոյի խումբը լիովին խզեց բոլոր կապերը ՉԿԿ և ՍՄԿԿ-ի միջև: 1967 թվականից դադարել են կուլտուրական և գիտատեխնիկական կապերը, բարեկամության ընկերությունների և մյուս հասարակական կազմակերպությունների միջև եղած հարաբերությունները, դադարեցված է զբոսաշրջիկների և զանազան պատվիրակությունների փոխանակությունը:

Իրենց գործողություններով ու հայտարարություններով, մաոիստները կոպիտ կերպով խախտել և շարունակում են խախտել 1950 թվականի փե-



տրվարի 14-ին ԿԺՀ և ՍՍՀՄ-ի կնքված բարեկամության, դաշինքի, փոխադարձ օգնության պայմանագրի բոլոր հոդվածներն ու սկզբունքները:

Չնայած Չինաստանի հետ նորմալ հարաբերություններ պահպանելու և զարգացնելու մեր երկրի ձգտմանը, չինական կողմը անընդհատ ամեն կերպ գրոհում է միջպետական կապերի ոչ մեծաքանակ գործող ուղիների վրա: Չինական իշխանությունները մինչև այժմ էլ սովետական դեսպանատունը և Պեկինում գտնվող սովետական մյուս հիմնարկները լարված վիճակի մեջ են պահում, պարբերաբար պրովոկացիոն միջադեպեր են կազմակերպում սովետական աշխատողների նկատմամբ, ամեն կերպ խանգարում նրանց նորմալ գործունեությանը:

Մեր կուսակցությունը հաստատուն քաղաքականություն է վարում մաոիստների հակամարքսիստական գաղափարական-քաղաքական պլատֆորմին, այսպես կոչված «Մաոյի գաղափարներին» հականերգործելու և դրանք մերկացնելու, Մաո Ցզե-դունի խմբի հակասոցիալիստական և հակասովետական քաղաքականությանն ու պառակտողական գործունեությանը հակահարված տալու հարցերում: Դրա հետ միասին մեր կուսակցությունը Չինաստանն ու չինական ժողովրդին երբեք չի նույնացրել Մաո Ցզե-դունի խմբի հետ:

ՍՄԿԿ-ն անփոփոխ կերպով անց է կացնում չինական ժողովրդի, նրա կուլտուրայի, սովորույթների և հեղափոխական պատմության նկատմամբ սովետական մարդկանց հարգանքի ոգով դաստիարակելու ուղղություն: Դրա ցուցանիշ է հանդիսանում չինական կլասիկների և ժամանակակից գրողների երկերի հրատարակությունը բազմահազար տպաքանակներով: Սովետական Միությունում լայնորեն նշվեցին Չինաստանի բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հիշարժան տարելիցները, ինչպես նաև՝ Սուն Յաթ-սենի ծննդյան 100-ամյակը, ՉԿԿ-ի հիմնադիրներից մեկի՝ Լի Դաչժաոյի 80-ամյակը, չինական կոմունիստ-ինտերնացիոնալիստ, ՉԿԿ-ի ականավոր ղեկավարներից մեկի՝ Ցյույ Ցյու-բոյի 70-ամյակը, չինական արդի գրականության հիմնադիր Լու Սինի 80-ամյակը, չինական աչքի ընկնող գրողներ Չժոու Լի-բոյի ու Լաո Շեի և ուրիշների ծննդյան տարելիցները: Վերջերս Մոսկվայում անցկացվեց սովետա-չինական բարեկամության ընկերության համամիութենական II կոնֆերանսը: Եվ այդ ամենը Սովետական Միությունում անց է կացվում այն ժամանակաշրջանում, երբ Մաոն և իր շրջապատը տխրահռչակ «կուլտուրական հեղափոխության» ընթացքում արմատավորում են հակասովետիզմ և բարբարոսաբար ոտքի տակ են տալիս չին մեծ ժողովրդի լավագույն նվաճումները, որոնք համաշխարհային կուլտուրայի գանձարան են մտել:

Մեր կուսակցությունը այսուհետև էլ կընթանա բարեկամության ուղիով, ինտերնացիոնալ համերաշխություն կպահպանի չինական կոմունիստների, չին ժողովրդի հետ: Մարքսիզմ-լենինիզմից լիովին խզված Մաո Ցզե-դունի և նրա խմբի գաղափարախոսության ու քաղաքականության մերկացումը նշանակում է պայքար ոչ թե Չինաստանի դեմ, այլ հանուն Չինաստանի կոմունիստական կուսակցության, հանուն նրա վերադարձի ինտերնացիոնալիզմի ուղին, հանուն նրա համախմբման բոլոր եղբայրական կուսակցությունների հետ՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների, միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի հիման վրա:

ՎԵՐՋԻՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՍ ակտիվանում է ՉԺՀ քաղաքական շփումներն և տնտեսական կապերը կապիտալիստական աշխարհի առաջատար պետությունների հետ: Դա չին ժողովրդի բարեկամների մեջ մտահոգություն չէր առաջացնի, եթե այդպիսի գործողությունները Մաո Ցզե-դունի խմբի կողմից ենթարկված չլինեին սոցիալիստական երկրների դեմ մղվող պայքարի նպատակներին, սպառնալիքի տակ չդնեին Չինաստանի աշխատավորների շահերը:

Այդ ասպարեզում Մաոյի խմբի գործնական քայլերից առաջնակարգ նշանակություն ունի ՉԺՀ-ի դիմումը ԱՄՆ-ին 1968 թվականի նոյեմբերին, որով պատրաստակամություն է հայտնվում համաձայնություն կնքելու խա-

ծունեությունը բարդացրել և դժվարացրել են կոմունիստական կուսակցությունների դրությունը կապիտալիստական աշխարհում: Սոցիալիստական երկրների մարքսիստ-լենինյաններն իրենց ինտերնացիոնալ պարտքը տեսնում են այն բանում, որ իրենց դասակարգային եղբայրներին օգնեն մերկացնելու Մաո Ցզե-դունի կեղծհեղափոխական լոզունգները, բացահայտեն այն բոլոր վտանգները, որոնք դարանակալում են հասարակության վճռականորեն տրամադրված խավերին, և հատկապես երիտասարդությանը, երբ նրանք տարվեն այդ լոզունգներով:

Մաո Ցզե-դունի խմբի քաղաքականությունը ուղղություն է վերցրել խարխլելու խաղաղության և ժողովուրդների անվտանգության հիմքերը, ուժեղացնելու միջուկային լարվածությունը, օգտագործելու սոցիալիզմի և կապիտալիզմի հակասությունները հեգեմոնիստական նպատակներով: Սոցիալիստական երկրների կողմից կիրառվող խաղաղության քաղաքականության յուրաքանչյուր հաջողություն համապատասխանում է սոցիալիզմի, դեմոկրատիայի և առաջադիմության շահերին, նշանակում է՝ դրա հետ միասին՝ սատարում է չին ժողովրդին:

Գնահատելով չինական հասարակության զարգացման հեռանկարները, չի կարելի հաշվի չառնել, որ ՉԺՀ վերադարձը գիտական սոցիալիզմի ուղին բարդ և դժվար պրոցես է, որը զուգորդված է ամեն տեսակ անակնկալներով: Վստահություն հայտնելով, որ Չինաստանի կոմունիստական կուսակցության առողջ ուժերը կկարողանան հաղթահարել իրենց երկրի ապրած սուր ճգնաժամը, մարքսիստ-լենինյանները չպետք է թուլացնեն իրենց ջանքերը ռազմաշունչ մաոիզմի տեսության ու պրակտիկայի դեմ մղվող պայքարում:

«Коммунист» ամսագիր № 5, 1969 թ.





Ս. Ս. ԱՄԻՐՅԱՆ

# ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐԻ ԸՄԲՌՆՄԱՄԲ

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը գիտական կոմունիզմի հիմնարար սկզբունքներից է, հասարակության սոցիալիստական վերափոխման վճռական գործոնը: Այն առաջ է քաշվել Մարքսի և Էնգելսի կողմից, զարգացել ու հարստացել Լենինի աշխատություններում, մարմնավորվել սոցիալիստական հեղափոխությունների պրակտիկայում:

Բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հարցի շուրջը ստեղծված է պատմա-փիլիսոփայական և քաղաքական գրականություն, սակայն, դեռևս անբավարար է լուսաբանված պրոբլեմի առաջացման ու զարգացման պատմությունը, հատկապես Մարքսի և Էնգելսի դերը՝ գիտական կոմունիզմի այդ կարևորագույն սկզբունքի մշակման գործում:

Հայտնի է, որ պատմական նոր պայմաններում ելնելով Մարքսի և Էնգելսի դրույթներից, Լենինը բազմակողմանի մշակեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին ուսմունքը: Այս իրողությունը ջանում են նենգափոխել հակակոմունիզմի գրչակները, որոնք ձգնում են սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը հակադրել գիտական կոմունիզմի հիմնադիրների դրույթներին:

* * *

Գրականության մեջ տարածված է այն թյուր տեսակետը, թե Մարքսը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի գաղափարն առաջին անգամ արտահայտել է 1856 թ. Էնգելսին գրած իր նամակում, որտեղ նա Գերմանիայում պրոլետարական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը կապում էր գյուղացիական պատերազմի աջակցության հետ:

Իրականում բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի պատմական անհրաժեշտությունը՝ կապիտալի դեմ մղվող պայքարում, Մարքսը հիմնավորել է ավելի վաղ շրջանի աշխատություններում («Դասակարգային պայքարը Ֆրանսիայում, 1850 թ.» և «Լուի Բոնապարտի Բրյումերի տասնութը»,





1851—1852 թթ.)։ Ըստ որում, նա դաշինքի գաղափարին վերջնականապես հանգել է 1848—49 թթ. Եվրոպայում, հատկապես Ֆրանսիայում ծավալված հեղափոխական շարժումների փորձի, դրանցում տարբեր դասակարգերի դիրքի բազմակողմանի վերլուծության հիման վրա։

Հայտնի է, որ դեռևս հեղափոխությունից առաջ գրած Կոմունիստական կուսակցության մանիֆեստում Մարքսն ու Էնգելսը որոշակի խոսել են պրոլետարիատի հեղափոխական պայքարի նկատմամբ միջին դասերի՝ ինչպես և գյուղացիության գրավելիք դիրքի մասին։ Բայց այստեղ նրանք գյուղացիությունը հիմնականում դիտել են որպես պահպանողական, անգամ ռեակցիոն ուժ՝ բուրժուազիայի դեմ մղվող պայքարում։ Իրոք, 1848 թ. ֆրանսիական պրոլետարիատի ամենավճռական ելույթների ժամանակ գյուղացիությունն անցավ բուրժուազիայի կողմը և դրա հետևանքով էլ «փետրվարյան հեղափոխության սոցիալիստական անորոշ պոռթկումները արագորեն վերացվեցին» (Էնգելս)։

Բայց երբ պրոլետարիատը պարտվեց ու վերստին հաստատվեց բուրժուազիայի դիկտատուրան, գյուղացիությունը դառնորեն հուսախաբվեց։ Նրա պահանջները ո՛չ միայն չբավարարվեցին, այլև ուժեղացան շահագործումն ու ճնշումը։ Գյուղացիության տնտեսական դրության վատացումը նրա տրամադրության մեջ առաջ բերեց աստիճանական հեղաշրջում, պրոլետարիատին հարելու ձգտում։ Վերլուծելով կատարվածը, Մարքսը եկավ այն եզրակացության, որ, վերջին հաշվով, գյուղի աշխատավոր մասսաները պետք է կողմնորոշվեն դեպի պրոլետարիատը։ «Երբ պրոլետարիատն առժամանակ իջավ բեմից և պաշտոնապես ճանաչվեց բուրժուազիայի դիկտատուրան,— գրում է Մարքսը 1850 թվականին,— բուրժուական հասարակության միջին շերտերը— մանր բուրժուազիան և գյուղացիությունը պետք է սկսեին ավելի ու ավելի սերտորեն հարելու պրոլետարիատին այն չափով, ինչ չափով, որ նրանց դրությունը վատանում էր և անտագոնիզմը նրանց և բուրժուազիայի միջև սրվում։ Ինչպես առաջ նրանք իրենց թշվառությունների պատճառը տեսնում էին պրոլետարիատի ուժեղանալու մեջ, այնպես էլ այժմ նրանք այդ պիտի տեսնեին նրա պարտության մեջ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, 1950, էջ 175—176)։

Այսպիսով, պրոլետարիատին հարելու գյուղացիության ձգտումների հիմքը Մարքսը համարեց վերջինիս և բուրժուազիայի միջև անտագոնիզմի ուժեղացումը, նրանց շահերի ներհակության աճը, գյուղացիության դրության վատացումը։

Արևմտյան Եվրոպայի երկրներում բուրժուազիան պայքարում էր ֆեոդալիզմի դեմ գյուղացիության հետ դաշնակցած, որը նրա հաղթանակի երաշխիքն էր։ Բավարարելով հողի նկատմամբ գյուղացիության պահանջները, բուրժուազիան հաղթանակից հետո, առաջին շրջանում, շարունակում էր դաշինքը վերջինիս հետ։ Սակայն շուտով, ամրապնդելով իր տնտեսական ու քաղաքական տիրապետությունը, բուրժուազիան հանդես է բերում շահագործողական ձգտումներ նախկին դաշնակցի՝ գյուղացիության նկատմամբ։ Գյուղացու ստացած հողակտորը մի պատրվակ էր, որ թույլ էր տալիս կապիտալիստին շահագործելու նրան։

Ուսումնասիրելով Ֆրանսիայի աշխատավոր գյուղացիության սոցիալ-տնտեսական դրությունը, Մարքսը ցույց տվեց, որ XIX դարի 50-ական թթ. արդեն կապիտալը Ֆրանսիայում 10—15 միլիոն գյուղացիների կործանման



էր հասցրել։ Բնական էր, որ գյուղացիական այդ հոծ զանգվածների և իշխող բուրժուական դասակարգի միջև ընդհանուր ոչինչ լինել չէր կարող։ «Մի խոսքով,— գրում է Մարքսը,— գյուղացիների շահերն այլևս ոչ թե ներդաշնակ են բուրժուազիայի շահերի, կապիտալի հետ, ինչպես Նապոլեոնի ժամանակ էր, այլ անհաշտելիորեն հակառակ են նրանց։ Այդ պատճառով գյուղացիներն իրենց բնական դաշնակիցն ու առաջնորդն են գտնում քաղաքային պրոլետարիատի մեջ, որը կոչված է բուրժուական կարգը տապալելու» (նույն տեղը, էջ 394)։

Այնուհետև, Մարքսը հանգամանորեն քննում է այն հարցը, թե ինչու գյուղացիությունը պրոլետարիատի մեջ է գտնում իր բնական դաշնակցին և առաջնորդին, որոնք են նրանց ընդհանուր շահերը։

Սոցիալ-քաղաքական ուժերի միջև ամեն մի դաշինքստեղծվում է շահերի ընդհանրության վրա։ Գյուղացին տեսնում և աստիճանաբար համոզվում էր, որ պրոլետարիատը այնպիսին չէ, ինչպիսին նրան ներկայացնում էր բուրժուազիան. թե, իբր, բանվորները սեփականության վրա ձեռք բարձրացնող, ծույլ ու ագահ քաղաքացիներ են։ Կյանքը գյուղացուն ցույց էր տալիս, որ պրոլետարիատը ևս աշխատավոր դասակարգ է, նա նույնպես ճնշվում ու շահագործվում էր բուրժուազիայի, կապիտալի կողմից, որ նրանց երկուսի թշնամին մեկն է։ Հետևաբար, միայն կապիտալի անկումը բանվորներին ու գյուղացիներին կբերի սոցիալական ազատագրություն, որը կնվաճվի նրանց համատեղ պայքարով։ «...գյուղացիների շահագործումը արդյունաբերական պրոլետարիատի շահագործումից միայն ձևով է տարբերվում,— գրում է Մարքսը։— Շահագործողը նույնն է՝ կապիտալը։ Կապիտալի անկումը միայն կարող է գյուղացուն բարձրացնել, միայն հակակապիտալիստական, պրոլետարական կառավարությունը կարող է նրա տնտեսական աղքատությանը և հասարակական դեգրադացիային վերջ տալ (նույն տեղը, էջ 243)։

Մարքսը ագրարային հարցը, դարերի հնություն ունեցող հասարակական այդ մեծ ու սուր պրոբլեմը, որը շոշափում է գյուղի միլիոնավոր աշխատավորական մասսաների արմատական շահերը, դրեց գիտական հիմքի վրա, ցույց տվեց նրա վերջնական լուծման ուղին, այն կապելով պրոլետարական հեղափոխության հաղթանակի հետ։ Դրանով նա բացահայտեց պրոլետարիատի և գյուղացիության շահերի ընդհանրությունը, նրանց համատեղ պայքարի պատմական անհրաժեշտության հիմքը։

Հեղափոխական շարժումների փորձը վկայում է, որ ո՛չ միայն գյուղացիությունն է ձգտում դեպի պրոլետարիատը, նրա մեջ տեսնելով իր ազատարարին, այլև բուրժուազիայի դեմ մղվող պայքարում պրոլետարիատը չի կարող հաջողության հասնել, մինչև իր շուրջը չհամախմբի միջին դասերին, նրանց չհեռացնի բուրժուազիայի ազդեցությունից։ Հաղթանակ կտանի նա, ում կհարի գյուղացիությունը։ 1850 թ. Մարքսը գրում է. «Ֆրանսիական բանվորները չկարողացան ոչ մի քայլ անել դեպի առաջ, չկարողացան մազաչափ անգամ դիպչել բուրժուական հասարակարգին, մինչև որ հեղափոխության ընթացքն այդ հասարակարգի դեմ, կապիտալի տիրապետության դեմ, ոտքի չհանեց պրոլետարիատի և բուրժուազիայի միջև կանգնած ազգի մասսան, գյուղացիներին ու մանր բուրժուաներին, և չստիպեց սրանց հարել պրոլետարիատին, ճանաչելով նրանում իրենց առաջամարտիկին (նույն տեղը, հ. 1, 1950, էջ 158)։

Ընդգծելով պրոլետարիատի և գյուղացիության համատեղ պայքարի

պատմական անհրաժեշտությունն ու նշանակությունը բուրժուական հասարակարգի վերացման գործում, Մարքսը խորապես համոզված էր, որ առանց այդ դաշինքի պրոլետարիատի ջանքերն ապարդյուն կանցնեն հատկապես մանրգյուղացիական երկրներում։ Նա գրում էր, որ, երբ գյուղացիությունն անցնի բանվոր դասակարգի կողմը «պրոլետարական հեղափոխությունը կստանա այն նվագախումբը, առանց որի նրա մեներգը բոլոր գյուղացիական երկրներում կփոխարկվի կարապի երգի» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. VIII, стр. 412)։ Իր այդ դրույթը Մարքսն ավելի որոշակի առաջադրում է 1856 թ., Էնգելսին գրած հայտնի նամակում, որտեղ նշում է, որ Գերմանիայում պրոլետարական հեղափոխության հաղթանակը կախված կլինի գյուղացիական պատերազմի երկրորդ հրատարակությունից։

Այդ գաղափարի և առհասարակ դաշինքի մասին ուսմունքի տեսական հիմքը Մարքսի հայտնագործած պատմության մատերիալիստական ըմբռնումն է, ըստ որի հասարակական կյանքի հիմքը նյութական բարիքների արտադրությունն է, իսկ բարիքներ արտադրող մասսաները պատմական առաջադիմության վճռական ուժն են։ Քաղաքի և գյուղի աշխատավոր մասսաները ո՛չ միայն առաջ են մղում հասարակության արտադրաուժերը, այլև սոցիալական հեղափոխությունների շարժիչ ուժն են։

Դաշինքի վերաբերյալ Մարքսի գաղափարները հաստատում են, որ բանվոր դասակարգի և գյուղացիության համատեղ պայքարի անհրաժեշտությունը ծագում է պատմական որոշակի էտապում, սոցիալ-տնտեսական որոշակի հիմքերի առկայության պայմաններում։ Այդ տեսակետից ճիշտ չեն գրականության մեջ երբեմն հանդիպող միակողմանի մեկնաբանությունները, որոնք դաշինքի ծագումը գլխավորապես դիտում են իբրև բանվոր դասակարգի կուսակցության քաղաքականություն, մասսաների դաստիարակության ուղղությամբ նրա համառ, համբերատար աշխատանքի արդյունք (տե՛ս «Вопросы истории КПСС», № 4, 1968, стр. 128)։ Առանձին հեղինակներ ընդգծում են դաշինքի առաջացման սուբյեկտիվ կողմը, թերագնահատելով նրա օբյեկտիվ հիմքերը։ Մինչդեռ, Մարքսի հարցադրումներից հետևում է, որ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը ծագում է սոցիալ-տնտեսական ու պատմական հասունացած պայմաններում, երբ բանվոր դասակարգը քաղաքական պայքարի ասպարեզում ձեռք է բերել որոշ փորձ. կապիտալի հարվածների տակ գյուղացիության քայքայման պրոցեսը խորացել, առաջ է եկել գյուղացիության և բուրժուազիայի շահերի ուժեղ ներհակություն, անտագոնիզմ՝ նախկին դաշնակիցների միջև։ Գյուղացիությունը համակրանք է ցուցաբերում պրոլետարիատի պայքարի հանդեպ, ի հայտ բերում նրան հարելու ձգտումներ։ Գիտական կոմունիզմի հիմնադիրները նշում էին, որ գյուղացիությունն ինքն իրեն չի կարող համախմբվել պրոլետարիատի շուրջը։

Աշխատավոր գյուղացին փորձով ու բնազդով զգում է պրոլետարիատի հոգեհարազատությունը, դրսևորում նրան հարելու ձգտումներ։ Բայց նա անվերապահորեն ու վճռական չի անցնում վերջինիս կողմը։ Կան նրան ետ պահող հանգամանքներ, որոնցից գլխավորը գյուղացու հոգեբանության երկակի բնույթն է՝ սեփականատիրոջ և աշխատավորի խառնվածքը, գիտակցության ցածր աստիճանը, քաղաքական մտահորիզոնի սահմանափակությունը։ Մարքսը բազմիցս նշել է, որ գյուղացիական սեփականությունը այն թալիսմանն է, որով բուրժուազիան գյուղացիությանը պահել է իր իշխանության տակ, նրան գրգռել պրոլետարիատի դեմ։ Փոքր հողամասերի վրա տնտեսություն վարող



աշխատավոր գյուղացիները կապված են սեփականության հետ և մասնավոր սեփականության վերացման պրոլետարիատի առաջադրած ծրագիրը առաջին հայացքից վանում է նրանց, գցում տատանումների մեջ։ Նրանք չեն հասկանում, որ այդ հողակտորը իրենց շահագործման աղբյուրն է և պրոլետարիատը առհասարակ գյուղացիությանը սեփականազրկելու խնդիր չի դնում, այլ պայքարում է շահագործման ու ճնշման բոլոր ձևերի հիմքը հանդիսացող մասնավոր սեփականության վերացման համար։

Մարքսը և Էնգելսը նկատել են, որ պրոլետարիատն ու նրա կուսակցությունը կոչված են լայն ու հետևողական մասսայական-քաղաքական աշխատանք տանելու գյուղացիության շրջանում, բացատրելու իրերի իսկական վիճակը, ցույց տալու նրա արմատական շահերն ու դրանց ապահովման ուղիները, համոզելու իրենց ծրագրի ճշտությունը։

Այդ գաղափարին Մարքսն ու Էնգելսն ավելի որոշակի հանգեցին հատկապես Փարիզի կոմունայի պարտությունից հետո։

Մարքսն իր Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում աշխատության մեջ, վերլուծելով Փարիզի կոմունայի փորձը, ֆրանսիական պրոլետարիատի անհաջողության պատճառներից մեկը համարեց գավառների աշխատավոր գյուղացիության հետ կապ չստեղծելը։ Մարքսը նշում է, որ շահագործող դասակարգերը, զգալով այդ կապի վտանգավորությունը, երկյուղով շտապեցին Փարիզը շրջապատել ոստիկանական բլոկադայով, կանխելով հեղափոխության տարածումը գյուղացիության շրջանում։

1871 թ. սեպտեմբերին I Ինտերնացիոնալի լոնդոնյան կոնֆերանսը, Փարիզի կոմունայի մասին Մարքսի զեկուցման հիման վրա, ընդունեց հատուկ բանաձև, որտեղ առաջարկվում էր գլխավոր, ինչպես նաև ֆեդերալ խորհուրդներին կամ կոմիտեներին՝ հերթական կոնգրեսի համար զեկուցումներ պատրաստել այն միջոցառումների վերաբերյալ, որոնք անհրաժեշտ են պրոլետարիատի հետ գյուղատնտեսական արտադրողների միացման համար։ Միաժամանակ առաջարկվեց գյուղական շրջաններում կազմակերպել հրապարակային ժողովներ, տարածել Ինտերնացիոնալի սկզբունքները, և հիմնել գյուղական սեկցիաներ։

90-ական թվականներին խիստ որոշակի ընդգծելով գյուղացիության հետ պրոլետարիատի դաշինքի նշանակությունը, Էնգելսը գրում է. «Սոցիալիստական կուսակցության կողմից քաղաքական իշխանության նվաճումը մոտ ապագայի գործ է դարձել։ Բայց քաղաքական իշխանություն նվաճելու համար այդ կուսակցությունը պետք է նախ քաղաքից գնա գյուղ, պետք է ուժ դառնա գյուղում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 543—544)։

Որպեսզի պրոլետարիատի կուսակցությունը ուժ դառնա գյուղում, նա պետք է առաջադրի այնպիսի ծրագիր, որն արտահայտի գյուղացիության արմատական շահերը։ Այդ տեսակետից Էնգելսը հավանություն էր տալիս ֆրանսիական սոցիալիստների ագրարային ծրագրին, որտեղ գյուղացիների համար նախատեսվում էր գյուղացիական ընկերությունների ստեղծում, նրանց նյութական ու ֆինանսական օգնության կազմակերպում, հարկերի վերացում, ձրի գյուղատնտեսական կրթություն, գյուղատնտեսական փորձակայանների հիմնում և այլն։

* * *

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին ուսմունքի կարևոր սկզբունքներից մեկը դաշինքում բանվոր դասակարգի ղեկավար դերի հիմնա-

վորումն է։ Հակակոմունիզմի ժամանակակից գաղափարախոսներից ամերիկյան պատմաբան Թոուստերը գրում է, թե մարքսիզմի թեորիան նախատեսում է անհավասարություն բանվորների և գյուղացիների միջև, քանի որ նրանց դաշինքում ղեկավար դերը վերապահվում է բանվոր դասակարգին։ Նման եզրակացության համար իրական ոչ մի հիմք չկա։ Այդ հարցում Մարքսը ելնում էր նախ՝ պրոլետարիատի համաշխարհային պատմական դերից. պրոլետարիատը կոչված է շահագործումից ու ճնշումից ազատագրելու ո՛չ միայն իրեն, այլև բոլոր ճնշված ու շահագործվող մասսաներին՝ այդ թվում և գյուղացիությանը։ Ուստի, պրոլետարիատը նրանց պետք է համախմբի իր շուրջը և առաջնորդի հեղափոխական պայքարի։

Մարքսը մանր գյուղացիությանը դիտել է որպես ցաք ու ցրիվ, անկազմակերպ մասսա, որը միասնական սոցիալական ուժ չէ։ Արտադրաեղանակը մեկուսացնում է մանր գյուղացիներին, չի ապահովում նրանց միջև փոխադարձ հարաբերություններ։ Գյուղացիների դասակարգը կազմված է համանուն մեծությունների հասարակ գումարից։ Շահերի նույնությունը նրանց միջև ոչ մի ընդհանրություն, ազգային կապ, քաղաքական կազմակերպություն չի ստեղծում։ Ելնելով դրանից, Մարքսը եզրակացնում է. «Այդ պատճառով նրանք անընդունակ են իրենց դասակարգային շահերը պաշտպանել իրենց սեփական անունից, լինի այն պառլամենտի միջոցով, թե Կոնվենտի։ Նրանք չեն կարող իրենց ներկայացնել, նրանց պետք է ներկայացնեն ուրիշները» (նույն տեղը, հ. 1, էջ 390)։ Շատ երկրներում ֆեոդալիզմի դեմ մղվող պայքարում գյուղացիությունն ապավինեց բուրժուազիային։ Վերջինս գյուղացուն հող տվեց, բայց կարճ ժամանակ հետո սկսեց շահագործել ու ճնշել նրան։ Այս անգամ գյուղացիությունը կապիտալի ճնշումից ազատագրվելու համար դիմեց նոր դասակարգի օգնությանը։ Ի դեմս քաղաքային պրոլետարիատի նա գտավ իր բնական դաշնակցին ու առաջնորդին, շահերի պաշտպանին, ազատարարին։

Մարքսը ցույց տվեց, որ գյուղացիությունն ունի հեղափոխական հնարավորություն, բայց ինքը չի կարող այն իրականացնել, քանի որ հեղափոխական նախաձեռնություն երևան բերելու համար բացարձակապես անընդունակ է։ Ճնշված ու շահագործվող մասսաների մեջ պրոլետարիատն այն նախաձեռնող ուժն է, դասակարգը, որն, ի տարբերություն գյուղացիության, տասնամյակների ընթացքում միավորվել, դաստիարակվել ու կոփվել է կապիտալի դեմ մղվող գործադուլային ու քաղաքական պայքարի բովում, ստեղծել է իր մարտական կուսակցությունը, հետևաբար կոչված է ղեկավարելու սոցիալական ազատագրության համար ոչ-պրոլետարական, աշխատավորական մասսաների հեղափոխական շարժումը։ Այս կապակցությամբ պետք է նշել, որ դաշինքում պրոլետարիատի ղեկավար դերի մասին Մարքսի դրույթներն ու հետագա պատմական ամբողջ պրակտիկան լիովին հերքում են չինական ռևիզիոնիստների պնդումները, որոնք արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսում ինքնուրույն դեր են հատկացնում գյուղացիությանը, անտեսելով միջազգային բանվոր դասակարգի վճռական ու ղեկավար դերը։ Մինչդեռ, եթե չլիներ միջազգային պրոլետարիատի, հաղթանակած սոցիալիստական երկրների բանվոր դասակարգի դաշինքը հետամնաց գյուղացիական շատ երկրների աշխատավորության հետ, նրանք դժվար կարողանային մտնել սոցիալական առաջադիմության, հատկապես սոցիալիստական զարգացման ուղին։



* * *

Վերը նշվեց, որ Մարքսը և էնգելսը գյուղացիության հետ պրոլետարիատի դաշինքի հարցին գլխավորապես մոտեցել են սոցիալիստական հեղափոխության իրականացման, նրանում գյուղացիության մասնակցության տեսանկյունից։ Գերմանիայի կապակցությամբ, նրանք արտահայտվել են նաև բուրժուա-դեմոկրատական վերափոխություններում բանվոր դասակարգի և գյուղացիության համատեղ պայքարի անհրաժեշտության օգտին, որտեղ ղեկավար ու գլխավոր շարժիչ ուժը պրոլետարիատն է, իսկ բուրժուազիան բռնել է դավաճանական դիրք։ Ինչպես նշում է Լենինը, Մարքսն այն ժամանակ ուղղակի չի օգտագործել բանվորների և գյուղացիների դաշինք արտահայտությունը, այլ խոսել է ժողովրդի հետևողական պայքարի ճանապարհով դեմոկրատական հեղափոխությունը մինչև վերջ հասցնելու մասին։ Իսկ ժողովրդահասկացողության մեջ նա նկատի է ունեցել պրոլետարիատին և գյուղացիությանը (տե՛ս Երկեր, հ. 9, էջ 162)։

Գյուղացիության սոցիալիզմին անցնելու պրոբլեմը միշտ վեճի առարկա է եղել։

Քննադատելով մանրբուրժուական տեսությունները, Մարքսն ու էնգելսը ցույց տվեցին ու գիտականորեն հիմնավորեցին գյուղացիության նոր հասարակարգին անցնելու ուղիները։ Նրանք հաստատապես նշեցին, որ պրոլետարիատը գյուղացիության հետ միասին պետք է գնա դեպի կոմունիզմ։ «...մենք վճռականապես կողմնակից ենք մանր գյուղացուն,— գրում է էնգելսը.— մենք կնախաձեռնենք այն ամենը, ինչ փոքր ի շատե հնարավոր լինի նրա վիճակը ավելի տանելի դարձնելու համար, դեպի ընկերություն նրա անցումը հեշտացնելու համար...» (Կ. Մարքս, Ֆ. էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 562)։

Գիտական կոմունիզմի հիմնադիրները պրոլետարական պետության խնդիրն են համարել գյուղում հանրային սեփականության հիմքի վրա խոշոր գյուղական տնտեսությունների ստեղծումը։

1868 թ. I ինտերնացիոնալի երրորդ կոնգրեսում քննարկվեց Մարքսի զեկուցումը հողի ազգայնացման և մանր տնտեսությունների հանրայնացման անհրաժեշտության վերաբերյալ։ Այդ կոնգրեսում Մարքսը և նրա կողմնակիցները հակահարված տվին պրուդոնիստներին, որոնք գյուղացու մասնավոր սեփականությունը կենսունակ էին համարում։ Մարքսը և էնգելսը համոզիչ ցույց տվեցին, որ միայն խոշոր հանրայնացված տնտեսությունները հնարավորություն կունենան օգտագործելու տեխնիկան և գյուղացիներին ազատելու աղքատությունից։ Կոնգրեսի ընդունած որոշման մեջ նշվեց, որ հողը պետք է լինի հասարակական սեփականություն և տրվի գյուղատնտեսական արտադրողների ընկերություններին։

Հաշվի առնելով մանր գյուղացիների մասնավոր սեփականատիրական հոգեբանությունը, նրանք նախ նշել են գյուղացիական ընկերությունների կամ կոոպերատիվ տնտեսությունների որպես անցման ձևի ստեղծման անհրաժեշտությունը։ 1886 թ. հունվարի 20-ին Բեբելին գրած իր նամակում էնգելսը գրել է. «որ լիակատար կոմունիստական տնտեսության անցնելիս մենք ստիպված կլինենք, որպես միջանկյալ օղակ, լայն մասշտաբներով կիրառել կոոպերատիվ արտադրությունը,— դրանում Մարքսը և ես երբեք չենք կասկածել»։

Այդ հարցին էնգելսն ավելի հանգամանորեն է անդրադարձել Գյուղացիական հարցը Ֆրանսիայում և Գերմանիայում աշխատության մեջ, որտեղ նա

զգուշացրել է, որ մանր գյուղացիների նկատմամբ պրոլետարիատը չպետք է բռնություն գործադրի և պահանջել՝ ընկերությունների մեջ նրանց համախմբելու համար անպայման կիրառել կամավորության սկզբունքը, և եթե գյուղացին անմիջապես չի կարողանում վճռել, նրան մտածելու ժամանակ ու հնարավորություն տալ:

«Մանր գյուղացիների նկատմամբ մեր խնդիրը նախ և առաջ այն է,— գրում է Էնգելսը,— որ նրանց մասնավոր արտադրությունը և մասնավոր ունեցվածքը դարձնենք ընկերական, բայց ոչ թե բռնի ճանապարհով, այլ օրինակի և այդ նպատակի համար հասարակական օգնություն առաջարկելու միջոցով» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 559—560):

Գիտական կոմունիզմի հիմնադիրների գործունեության դարաշրջանում ոչ մի երկրում պրոլետարիատի և գյուղացիության ուժերի միավորում տեղի չունեցավ: Ավելին, կատարված բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների ժամանակ գյուղացիությունը հարեց բուրժուազիային: Սակայն գյուղացիության դրության, նրա հետագա զարգացման տենդենցների խոր վերլուծությունը, ռեակցիոն ռեժիմների ու կապիտալի դեմ նրա ընդվզումների և պրոլետարիատի նկատմամբ գյուղացիության համակրանքի, ձգտումների դրսևորումները, պրոլետարիատի հեղափոխական շարժումների հետագա ծավալման հնարավորությունների ուսումնասիրությունները Մարքսին և Էնգելսին հանգեցրին պրոլետարիատի և գյուղացիության համատեղ պայքարի հնարավորության ու պատմական անհրաժեշտության հստակ գաղափարին: Նրանք գիտականորեն հիմնավորեցին այդ երկու աշխատավոր դասակարգերի դաշինքը, մշակեցին վերջինիս վերաբերյալ ուսմունքի հիմքերը:

Սակայն բանվորա-գյուղացիական դաշինքի մասին Մարքսի և Էնգելսի դրույթները մոռացության տվեցին II ինտերնացիոնալի օպորտունիստ լիդերներն ու տեսաբանները, որոնք գյուղացիությանը դիտում էին որպես ռեակցիոն ուժ և առաջ էին քաշում բուրժուազիայի դեմ պրոլետարիատի միայնակ ու ռեֆորմիստական պայքարի ուղին:

Վ. Ի. Լենինը օպորտունիզմի դեմ պայքարում ո՛չ միայն վերականգնեց պրոլետարիատի և գյուղացիության համատեղ պայքարի անհրաժեշտության վերաբերյալ գիտական կոմունիզմի հիմնադիրների դրույթները, այլև, հենվելով տեսական այդ հիմքերի վրա, պատմական նոր պայմաններում՝ իմպերիալիզմի դարաշրջանում, Ռուսաստանի կոնկրետ փորձի հիման վրա, համակողմանիորեն մշակեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ գիտական կոմունիզմի տեսությունը և այն ներկայացրեց որպես մի կուռ ու ամբողջական ուսմունք, որով առաջնորդվել ու առաջնորդվում են բոլոր երկրների մարքսիստական կուսակցությունները:

Ելնելով Մարքսի և Էնգելսի ցուցումներից ու դրույթներից, Լենինը հիմնավորեց Ռուսաստանի պրոլետարիատի հեգեմոն դերը բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ և գյուղացիության հետ նրա դաշինքի պատմական անհրաժեշտությունը:

Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ բուրժուազիան մայրամուտ է ապրում և գործարքի մեջ մտնում ռեակցիոն ուժերի հետ, լենինյան տեսությունը դեմոկրատական վերափոխությունների իրականացման համար ուղեցույց է:

Այնուհետև, ելնելով մանրգյուղացիական երկրներում պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի կենսական անհրաժեշտության վերաբերյալ Մարք-



սի դրույթից, Վլադիմիր Իլյիչը հիմնավորեց Ռուսաստանում սոցիալիստական
հեղափոխության հաղթանակի հնարավորությունը:
Գիտական կոմունիզմի հիմնադիրները դրել են բանվորա-գյուղացիական
դաշինքի ուսմունքի հիմքերը: Բայց նրանք կոնկրետ չեն մշակել աշխատավոր
երկու դասակարգերի համատեղ հեղափոխական պայքարի կազմակերպման
և իրականացման կոնկրետ ձևերը, մեթոդները, այդ հարցում կուսակցության
ստրատեգիական ու տակտիկական պլանը, թե ո՛ր գյուղացիության հետ պետք
է գնա պրոլետարիատը բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական հեղա-
փոխություններում: Մարքսը և Էնգելսը բանվոր դասակարգին զգուշացրել են
մանր գյուղացիների տատանումներից, ուշադրությունը սևեռել գյուղական
պրոլետարիատի վրա, սակայն չեն անդրադարձել սոցիալիստական հեղա-
փոխության ժամանակ գյուղացիության հետ ուժերի տեղաբաշխմանը:
Խորապես ուսումնասիրելով սոցիալական շերտավորման պրոցեսը ռու-
սական գյուղում, Լենինը գտավ, որ գյուղական բնակչության մեծամասնու-
թյունը կազմող չքավոր գյուղացիությունը կամ կիսապրոլետարական մասսա-
ները, որոնց քայքայման պրոցեսը ընդհուպ մոտեցրել է պրոլետարիատին,
բուրժուազիայի տիրապետությունը տապալելիս վերջինիս համար ամուր
դաշնակից կլինեն: Լենինը առաջադրեց բուրժուա-դեմոկրատական հեղափո-
խությունից սոցիալիստականի վերաճման ժամանակ դաշինքի պլանը, ցույց
տվեց, որ պրոլետարիատը գյուղացիության հետ դաշնակցած, պայքարում է
միապետության դեմ, իսկ սոցիալիստական հեղափոխության ժամանակ, հեն-
վելով գյուղի պրոլետարական և կիսապրոլետարական մասսաների վրա,
մեկուսացնում է միջակ գյուղացիությանը: Հեղափոխությունից հետո, սոցիա-
լիզմին անցնելիս, նորից պրոլետարիատը դաշինքի մեջ է մտնում միջակի
հետ: Վ. Ի. Լենինը մշակեց նաև դաշինքի ստեղծման, ամրապնդման ու զար-
գացման գործում բանվոր դասակարգի և նրա առաջավոր ջոկատի՝ կոմունիս-
տական կուսակցության ղեկավար դերի իրականացման սկզբունքները, ձևերն
ու մեթոդները:
Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ
ուսմունքը մշակեց Ռուսաստանում դրա ստեղծման ու ամրապնդման պրոցե-
սում. նա ոչ միայն հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում,
այլև պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանում գյուղացիության
նկատմամբ բանվոր դասակարգի քաղաքականության հարցերը լուծելիս ղե-
կավարվում էր իր հանճարեղ նախորդների դրույթներով:
Կոնկրետ փորձի հիման վրա նա փայլուն լուծեց պրոլետարիատի դիկ-
տատուրայի ժամանակաշրջանում դաշինքի գործունեության, քաղաքի և գյու-
ղի աշխատավոր դասակարգերի տնտեսական ու քաղաքական հարաբերու-
թյունների կազմակերպման հարցերը: Բանվոր դասակարգի և գյուղացիու-
թյան դաշինքը համարելով պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն
սկզբունքը, Լենինը զարգացրեց պրոլետարիատի քաղաքական իշխանության
մասին մարքսիստական ուսմունքը:
Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վերաբերյալ լենինյան
ուսմունքը, որի հիմքերը տվել են Մարքսը և Էնգելսը, գիտական կոմունիզ-
մի բաղկացուցիչ մասն է: Արդի դարաշրջանում դրանով են առաջնորդվում
կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, որոնք իրենց պրակ-
տիկ գործունեության ընթացքում զարգացնում ու հարստացնում են հեղափո-
խական այդ մեծ ուսմունքը:

Զ. Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՎՃՌԱԿԱՆ ՈՒԺԸ

Մեր երկրում սոցիալիստական և կոմունիստական շինարարության ավելի քան կեսդարյա փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, թե սովետական ժողովրդի մեջ ինչպիսի հսկայական եռանդ, աշխատանքի թափ, ստեղծագործական նախաձեռնություն, ձեռներեցություն առաջ բերեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, այն պատմական մեծ պրոցեսը, որը հարկադրական աշխատանքը փոխարինեց իր համար կատարվող աշխատանքով։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո սովետական ժողովրդի կատարած հերոսական աշխատանքում վառ արտացոլված է մասսաների կենդանի ստեղծագործության՝ սոցիալիստական մրցության ուժը, հասարակության համար շատ և լավ գործեր կատարելու նրանց ձգտումը։ Սոցիալիստական մրցությունն այժմ դարձել է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն արագացնող մի հզոր գործոն, այն թափանցել է մեր կյանքի բոլոր բնագավառները, իր մեջ ընդգրկելով միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր մարդկանց։

Ինչպես մեր երկրի տնտեսության զարգացման անցած բոլոր էտապներում, այնպես էլ այժմ՝ հնգամյակի խնդիրների հաջող իրականացման համար սոցիալիստական մրցություն կազմակերպելով, կոմունիստական կուսակցությունն անշեղորեն առաջնորդվել և առաջնորդվում է լենինյան գաղափարներով ու ցուցումներով։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին, սահմանելով մեր երիտասարդ երկրի իշխանության խնդիրները, նոր հասարակարգի կառուցման ու զարգացման ուղիները, Վ. Ի. Լենինն ընդգծում էր սոցիալիստական հիմունքներով կազմակերպված մրցության հսկայական նշանակությունը։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից մոտ երկու ամիս հետո՝ Ինչպես կազմակերպել մրցությունը հոդվածում, Վ. Ի. Լենինը բացահայտեց այդ մրցության նպատակն ու բնույթը։

Իր այդ նշանավոր հոդվածում և մյուս աշխատություններում, Վլադիմիր Իլյիչը տեսականորեն հիմնավորել է սոցիալիզմի օրոք մրցության կենսական անհրաժեշտությունը և վիթխարի դերը։ Կապիտալիստական հասարակարգում բանվորների մրցակցությունն ըստ էության մարդկանց դաժան պայքար է մի կտոր հացի և պրուստի, աշխատանք ունենալու համար։ Այդպիսի մրցակցությունը, ինչպես ընդգծում էր Լենինը, նշանակում էր աշխատավոր մասսաների նախաձեռնության անլուր ճնշում, նրա փոխարինումը ֆինանսական խարդախությամբ, հարկադրանքով, ստորաքարշությամբ՝ սոցիալական սանդուխքի վերևում։ Մինչդեռ, սոցիալիստական մրցությունը պայմաններ է ստեղծում աշխատավոր մասսաների ձեռներեցության, եռանդի համար, ապահովում է հանուրի ու իրենց բարեկեցությունը։

Կյանքը, մեր երկրի ժողտնտեսության զարգացման փորձը հաստատեցին և շարունակում են հաստատել Վլադիմիր Իլյիչի հանճարեղ այն հետևությունը, թե՝ «Սոցիալիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլ ընդհակառակը, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով» (Երկեր, հ. 26, էջ 493—494)։

Մրցության լենինյան գաղափարները տիրապետելով մասսաներին, դարձել են մեծ ուժ կոմունիստական շինարարության գործում։ Դրանք թափանցել են յուրաքանչյուր գործարան, հանքահոր, կոլտնտեսություն, սովխոզ և համակել աշխատավոր մասսաներին ժողովրդատնտեսական խնդիրների հաջող լուծման ոգով։

Այս տարվա մարտի 5-ին լրացավ 40 տարին, երբ Լենինգրադի «Красный выборжец» գործարանի կոլեկտիվը նամակ-կոչով դիմեց երկրի բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ աշխատանքային մրցություն ծավալել։ Դա առաջին հնգամյակի առաջին տարին էր։ Կուսակցությունը խնդիր էր դրել կարճ ժամանակամիջոցում երկիրը դարձնել ինդուստրիալ տերություն։ Գործարանների ու ֆաբրիկաների աշխատողները պաշտպանեցին կուսակցության գլխավոր գիծը և իրենց ջերմ պատրաստակամությունը հայտնեցին արագացնելու հնգամյակի գիգանտների կառուցումը։ Հենց այդ ժամանակ էլ ծնունդ առավ լենինգրադցիների հիանալի շարժումը։ «Красный выборжец» գործարանում բռնկված կայծից առաջացավ մասսաների հայրենասիրական շարժման մեծ կրակը։ Լենինգրադցիների այդ նախաձեռնությունը հանդիսացավ համաժողովրդական սոցիալիստական մրցության տարեգրության առաջին էջը։

Մեր երկրի ավելի քան կես դարում կատարված սոցիալ-տնտեսական բոլոր վերափոխումները, մեր ժողովրդի նյութական և հոգևոր ուժերի ժամանակակից ծաղկումն անխզելիորեն կապված են սոցիալիստական մրցության զարգացման հետ։ Այդ մրցությունը տասնյակ հազարավոր ու միլիոնավոր առաջավորների՝ հարվածայինների, ստախանովականների, արտադրության նորարարների է ասպարեզ բերել երկրի տնտեսության վերականգնման շրջանում, առաջին հնգամյակների տարիներին, Հայրենական մեծ պատերազմի ժամանակ, հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Սոցիալիստական մրցությունն իր զարգացման ճանապարհին որակական լուրջ բարեփոխումներ է ունեցել։ Մեր էկոնոմիկայի հզորացման հետ միասին, մրցությունը ծավալվել և հզորացել է, դառնալով ավելի մասսայական, ավելի գործնական։

Սոցիալիստական մրցությունն իր պատմության ընթացքում շատ խոչընդոտներ է հաղթահարել, տիրապետել է աշխատանքի առավել նոր, կատարյալ

ձևերի, որոնցից մեկը կոմունիստական աշխատանքի շարժումն է, որի մեջ ընդգրկված են միլիոնավոր աշխատավորներ: Այդ շարժման հիմքում դրվել են Լենինի գաղափարները, կոլեկտիվիզմի լենինյան սկզբունքները:

«Մենք կաշխատենք վերացնել «յուրաքանչյուրն իր համար, միայն աստված բոլորի համար» անիծյալ կանոնը... Մենք կաշխատենք մասսաների գիտակցության մեջ, սովորության մեջ, նրանց ամենօրյա կենցաղի մեջ արմատավորել «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» կանոնը» (Երկեր, հ. 31, էջ 140):

Կոմունիստական աշխատանքի շարժումը նախապատրաստվեց սոցիալիստական շինարարության ամբողջ ընթացքով, մեր էկոնոմիկայի վիթխարի հաջողություններով, սովետական մարդկանց կուլտուրայի և կրթության վերելքով: Այն օրգանապես զուգակցում է նորագույն գիտության ու տեխնիկայի հիման վրա աշխատանքի ամենաբարձր արտադրողականություն ապահովելու համար մղվող պայքարը և նոր մարդու դաստիարակումը: Միավորելով աշխատանքը, ուսումն ու կենցաղը, այդ շարժումն ակտիվորեն ազդում է մարդկանց կյանքի ու գործունեության բոլոր կողմերի վրա:

Ինչպես ողջ երկրում, այնպես էլ Սովետական Հայաստանում կոմունիստական աշխատանքի շարժումն ընդգրկել է հարյուրավոր կոլեկտիվների, տասնյակ հազարավոր բանվորների, որոնք ձգտում են իրենց աշխատանքով և կենցաղով կոմունիստականի օրինակ ծառայել շրջապատի մարդկանց համար:

Սոցիալիստական մրցությունը հատկապես նոր ուժով է ծավալվում այս օրերին, երբ մեր ամբողջ երկիրը նախապատրաստվում է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին: Ամենուրեք սովետական մարդիկ պատրաստվում են մեծ առաջնորդի ծննդյան հոբելյանը դիմավորել արժանավայել, հնգամյակը կատարել ժամկետից շուտ: Քաղաքի և գյուղի աշխատավորներն իրենց եռանդուն աշխատանքով բազմապատկում են երկրի ինդուստրիալ հզորությունը, ձգտում ապահովել գյուղատնտեսության զարգացման արագ և բարձր տեմպեր: Դրա վառ վկայությունը հնգամյակի անցած տարիների աշխատանքի արդյունքներն են:

Սակայն հաջողությունները բնավ չեն հանգստացնում մեր աշխատողներին: Մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյա հոբելյանի պատվին նրանք ստանձնել են նոր, ավելի բարձր պարտավորություններ, նախանշելով այն բնագծերը, որ նվաճվելու են 1969 թվականին:

Ալավերդու և Ղափանի մետալուրգներն ու հանքագործները, Կիրովականի քիմիագործներն ու Չարենցավանի մեքենաշինարարները պարտավորվել են արտադրանքի իրացման տարեկան առաջադրանքները կատարել ժամկետից շուտ, երկրին տալ ավելի շատ պղինձ, մոլիբդեն, պարարտանյութեր, մետաղահատ հաստոցներ, սիստեմատիկաբար բարձրացնել արտադրության արդյունավետությունը, ավելացնել ձեռնարկությունների շահութաբերությունը, որակավորել հազարավոր բանվորների, բարելավել բանվոր-ծառայողների կուլտուր-կենցաղային և բնակարանային պայմանները:

Ելնելով յուրաքանչյուր ձեռնարկության, տնտեսության առանձնահատկություններից մրցող կոլեկտիվներն իրենց ուժերն ուղղում են այն ցուցանիշների բարձրացմանը, որոնցով պայմանավորվում է արտադրության առաջընթացը, որոնք ապահովում են փոքր ծախսումներով մեծ արդյունքի ստացումը: Մասսայական նախաձեռնության համար լայն ասպարեզ է բացել



արտադրության պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը: Տընտեսական ռեֆորմին անցնելուց հետո պլաններում նախատեսվում է այնպիսի կարևոր ցուցանիշ, ինչպիսին է, օրինակ, արտադրանքի իրացման ծավալը, որից կախված են խրախուսման ֆոնդերի չափերը: Սա բարձրացնում է արտադրանքի որակի բարելավման գործում մրցության մասնակիցների շահագրգռվածությունը: Եվ պետք է ասել, որ մեր շատ ձեռնարկություններում դրա առավելությունները շոշափելի դարձան: Այսպես, եթե 1966 թ., այսինքն՝ մինչև տնտեսական ռեֆորմը, Լենինականի տեքստիլ կոմբինատն արտադրել է 79 մլն 705 հազար մետր գործվածք, ապա նոր պայմաններում, օրինակ, 1968 թ., թողարկվել է 84 մլն 650 հազար մետր:

Մեր էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում, անգնահատելի դեր է կատարում սոցիալիստական մրցությունը, որի մասնակիցները ջանում են հասնել մեծ խնայողության:

Դեռևս 1919 թվականին Վ. Ի. Լենինն իր Մեծ նախաձեռնություն աշխատության մեջ գրում էր. «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ո՛չ թե անձնապես աշխատողներին և ո՛չ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն ամբողջ հասարակայնությանը՝ տասնյակ ու հարյուր միլիոնավոր մարդկանց, որոնք սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո Սովետական Հանրապետությունների Միության մեջ» (Երկեր, հ. 29, էջ 524):

Բարեխղճությամբ և խնայողաբար տնտեսավարումը, արտադրության և բաշխման ամենախիստ հաշվառումն ու վերահսկումը լենինյան այն սկզբունքներն են, որոնց վրա խարսխվում է աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքը: Հենց այդպիսի վերաբերմունք են ցուցաբերում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի աշխատողները, որոնք մրցության իրենց պարտավորություններում միշտ էլ հատուկ ուշադրություն են նվիրում խնայողության հարցերին: Այդ բնագավառում կիրովցիները շարունակ աչքի են ընկնում իրենց լավ գործերով: Օրինակ, 1968 թ. կոմբինատի կոլեկտիվը տնտեսել է մոտ 3 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 60 տոննա պայմանական վառելանյութ, զգալի քանակությամբ քսայուղ, գոլորշի: Ռացիոնալիզատորների և գյուտարարների առաջարկությունների արմատավորումից ստացվել է մոտ 2 մլն 650 հազար ռուբլու օգուտ: Միայն 1—3 արտադրամասն անցյալ տարի տնտեսել է այնքան գոլորշի, որը կբավարարեր արտադրամասի 21 օրվա պահանջները և այնքան էլեկտրաէներգիա, որի հաշվին կարելի է աշխատել 7 օր:

Կիրովցիների ընթացիկ տարվա սոցիալիստական պարտավորություններում ևս, մյուս ցուցանիշների հետ միասին, առանձնակի ուշադրություն է նվիրվում խնայողության հարցերին: Նրանք պարտավորվել են տնտեսել 1,5 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 2 մլն խորանարդ մետր բնական գազ, մի քանի տասնյակ տոննա պայմանական վառելանյութ և այլն:

Սոցիալիստական մրցման մասնակիցներին բնավ չեն հանգստացնում աշխատանքի արտադրողականության բնագավառում ձեռք բերված էական նվաճումները: Նրանք գիտեն, որ այսօր դեռևս շատ ձեռնարկություններում,

նույնիսկ արդյունաբերական առանձին ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը ցածր է, անբավարար ուշադրություն է նվիրվում տեխնիկական առաջադիմության հարցերին, ամեն ինչ չեն անում եղած կարողությունները, բանվորական ուժն արդյունավետ օգտագործելու համար։ Օրինակ, 1968 թ. հանրապետության շինանյութերի, սննդի արդյունաբերության մինիստրությունները ո՛չ միայն չապահովեցին աշխատանքի արտադրողականության նախորդ տարվա մակարդակը, այլ նույնիսկ իջեցրին այն։ Վիճակն առավել վատ է Երևանի Հայէլեկտրագործարանում, «Կրասնի Շվեյնիկ» ֆաբրիկայում, կերամիկական իրերի կոմբինատում։ Այդ ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը բավականին իջել է։

Կոմունիստաբար աշխատել նշանակում է՝ աշխատել ո՛չ միայն ազնվորեն, բարեխղճորեն, ամբողջ ուժով, այլև հմտորեն, գործի բոլոր նրբությունների իմացությամբ, ապահովել արտադրության առավելագույն արդյունավետություն։ Ահա ժամանակակից սոցիալիստական մրցության այն հատկանիշը, որը կարմիր թելի պես անցնում է Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին ստանձնած պարտավորություններում։

Ինչպես Մոսկվայի և Լենինգրադի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվներին, այնպես էլ Երևանի քիմիագործներին և լամպագործներին, Կիրովականի հաստոցաշինարարներին ու Լենինականի տեքստիլագործներին, Ղափանի հանքագործներին ու Ալավերդու մետալուրգներին միավորում է 1969 թ. հարվածային աշխատանքի, բարձր արտադրողականության, լավորակ արտադրանք թողարկելու տարի դարձնելու ձգտումը։

Այդ հիանալի շարժումն ավելի է զարգացնում ու ամրապնդում կոմունիստական աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքը։ Հենց դա էլ այդ շարժման գլխավոր գիծն է։ Հայրենասիրական նորանոր նախաձեռնություններով հարուստ սոցիալիստական մրցությունն ավելի է բարձրացնում բարոյական խթանների կենսական նշանակությունը, զուգակցում դրանք նյութական շահագրգռվածության հետ։ Միայն դրանց ճիշտ զուգորդումն է պատասխանում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և մարդկանց կոմունիստական դաստիարակության շահերին։

«Մեզ մոտ աշխատանքը միայն ապրելու միջոց չէ,— նշել է Լ. Ի. Բրեժնևը 1968 թ. մարտին կայացած ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային կազմակերպության կոնֆերանսում։— Այն դառնում է սովետական մարդկանց հոգևոր պահանջմունքը, նրանց վեհ պարտքը հասարակության հանդեպ։ Եվ սխալ կլիներ ամեն ինչ հանգեցնել նյութական շահագրգռվածությանը, դա կաղքատացներ սովետական մարդու ներաշխարհը»։

Սովետական աշխատավորն արտադրության իսկական տերն է։ Նա հոգով ցավում է իր արտադրամասի, ձեռնարկության, գործարանի մակնիշի պատվի համար, իր կոլտնտեսության, սովխոզի համար։ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործման, հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու ձգտումով համակված սովետական մարդկանց աշխատանքի պաթոսը արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ ծնում է իսկական հերոսներ, կյանքի է կոչում մրցության նոր ձևեր, ստեղծարար նախաձեռնություններ։ Հենց աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի մեջ է արտահայտվում աշխատավորների գաղափարական հասունությունը, նրանց խոր նվիրվածությունը կուսակցությանը, կոմունիզմի իդեալներին։

Այժմ պահանջվում է ապահովել մրցության հրապարակայնությունը, ար-



դյունքների լայն մասսայականացումը։ Հարկավոր է հնարավորություն ստեղծել աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման, ընկերական լայն փոխօգնություն կազմակերպելու համար։ Անհրաժեշտ է հոգալ մրցության առաջավորների բարոյական և նյութական խրախուսման մասին։ Գործարանների ու ֆաբրիկաների, կոլտնտեսությունների, սովխոզների, տրանսպորտային ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, ինչպես նաև միջգործարանային, միջարտադրամասային, միջքաղաքային, միջշրջանային մրցության եռամսյակային արդյունքների ամփոփումը, հաղթողներին փոխանցիկ դրոշներ, դրամական մրցանակներ տալը նպաստում են գործին, պետական առաջադրանքների հաջող կատարմանը։

Բարեկամական ամուր կապ է ստեղծվել Երևանի Ձերժինսկու անվան, Բաքվի Շմիդտի անվան և Թբիլիսիի Կիրովի անվան գործարանների կոլեկտիվների միջև։ Երեքն էլ հաստոցաշինական ձեռնարկություններ են և նրանց կոլեկտիվների ներկայացուցիչները շարունակ այցելում են միմյանց, ուսումնասիրում են մրցակիցների աշխատանքը, առաջավոր փորձը, այն ինչ ուսանելի է՝ փոխանակում են, միմյանց օգնում։ Արդեն սովորույթ է դարձել Լենինական—Կիրովաբադ—Գորի—Տարտու, Կիրովական—Սումգայիթ—Բաթումի—Սուխումի, Ալավերդի—Ջեստաֆոնի, Հոկտեմբերյան—Նաթանեբի, Իջևան—Օչիմչիրի, Շամշադին—Թովուզ, Գորիս—Լաչին մրցությունը։ Բարեկամների փոխադարձ օգնությունը, այցելությունները, փորձի փոխանակումը նպաստում են մրցակիցների առջև ծառացած խնդիրների հաջող կենսագործմանը։

Ամեն տեսակ շաբլոնացման դեմ պայքարելու անհրաժեշտության մասին Վ. Ի. Լենինի ցուցումն անչափ կարևոր նշանակություն ունի մրցության կազմակերպման համար։ Մրցությունը չի կարող հանդուրժել քարացած սխեմաներ, միօրինակություն։ Այն պետք է հարստանա նոր ձևերով, դառնա ավելի կատարյալ, ավելի գործնական։

Մեր էկոնոմիկայի զարգացման վիթխարի թափի, գիտության ու կուլտուրայի աննախընթաց վերելքի հետևանքով բարդանում են կոմունիստական շինարարության խնդիրները, որոնց լուծման գործում աճում է սոցիալիստական մրցության, կոմունիստական աշխատանքի շարժման մոբիլիզացնող և դաստիարակչական դերը։ Մրցության կազմակերպման անհրաժեշտությունը բխում է մեր զարգացման շահերից, նրա շարժառիթները կյանքի են կոչված մեր հասարակության բնույթով։ Սոցիալիստական հասարակարգը մարդկանց մեջ բարոյական և նյութական շահագրգռվածություն է ստեղծում բարձր արտադրողական աշխատանքի հասնելու, իրենց ընդունակությունները դրսևորելու, զարգացնելու համար։

Մրցության մոբիլիզացնող դերը նոր ուժով դրսևորվեց նաև հենց վերջերս՝ համամիութենական կոմունիստական շաբաթօրյակների օրերին։ Այս տարվա ապրիլի 12-ին մեր երկրում լայնորեն նշվեց Մոսկվա-Սորտիրովոչնայա դեպոյում ծնունդ առած առաջին կոմունիստական շաբաթօրյակի 50-ամյակը։ Բանվորների անմիջական նախաձեռնությամբ երևան եկած այդ հիանալի շարժումը Վ. Ի. Լենինը անվանեց մեծ նախաձեռնություն։ Առաջին կոմունիստական շաբաթօրյակներում Վլադիմիր Իլյիչը տեսնում էր կոմունիզմի փաստական սկիզբը, հանրային աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ծիլերը, բանվորների կամավոր և գիտակից ձգտումը՝ պայքարելու աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Բնորոշն այն է, որ Մոսկվա-Սորտիրովոչնայա լոկոմոտիվային դեպոյի և Մոսկվայի երկաթուղու Մոսկվա—Ռյազան բաժանմունքի կոլեկտիվները նախապատրաստվելով արժանավայել դիմավորելու մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյակը, որոշեցին ապրիլի 12-ին, շաբաթ օրը, ինչպես կես դար առաջ, անցկացնել մասսայական կոմունիստական շաբաթօրյակ՝ ի պատիվ կոմունիստական առաջին շաբաթօրյակի 50-ամյակի, բայց ավելի հզոր, ավելի մեծ ընդգրկումով, երկրի մասշտաբով։ Այդ նախաձեռնությունը լայն արձագանք գտավ ամենուրեք։ Ինչպես Սովետական Միության ամբողջ ժողովուրդը, այնպես էլ Հայաստանի աշխատավորները այդ օրը միահամուռ շաբաթօրյակի դուրս եկան և իրենց ավանդը մուծեցին ժողովրդական տնտեսության զարգացման գործում։

Ապրիլի 12-ը շատ կոլեկտիվների համար աշխատանքային օր էր, մյուսները շաբաթօրյակն օգտագործեցին սարքավորումները նորոգելու, ձեռնարկությունների տերիտորիաները բարեկարգելու համար։ Հոբելյանական շաբաթօրյակը դաստիարակչական վիթխարի նշանակություն ունեցավ, այն ավելի ամրապնդեց բանվոր դասակարգի հիանալի ավանդույթները, հանդիսացավ Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական մրցության ուղենիշներից մեկը։

Կուսակցական կազմակերպությունները պետք է միշտ իրենց ուշադրության կենտրոնում պահեն մրցության կազմակերպման ու գլխավորման հարցերը, մոբիլիզացնեն աշխատավորների ուժերը սոցիալիստական պարտավորությունները գործի վերածելու համար։ Կարևոր է, որ մրցության շարժառիթներն իրենց ներդաշնակությամբ հմտորեն օգտագործվեն մասսաների արտադրական և աշխատանքային ակտիվությունը զարգացնելու, հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյա հոբելյանը արժանավայել գործերով դիմավորելու համար։



Վ. Կ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ԱՊԱԳԱՂԱՓԱՐԱՅՆԱՑՄԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՌԵԱԿՑԻՈՆ ԲՆՈՒՅԹԸ

Բուրժուական ու կոմունիստական գաղափարախոսությունների միջև մղվող ժամանակակից պայքարում հին աշխարհի հոգևոր պաշտպանները նորանոր մտացածին տեսություններ են առաջ քաշում՝ խեղաթյուրելու արդիականության բնորոշ տենդենցները, հասարակական ուժերի փոխհարաբերությունների ռեալ իրավիճակը։ Մոնոպոլիստական բուրժուազիան իր հակաժողովրդական իշխանությունը պահպանելու համար խտրություն չի դնում միջոցների միջև՝ զրպարտելու կոմունիզմի գաղափարախոսությունը, սոցիալիստական պրակտիկան։ Բուրժուազիային շատ են անհանգստացնում համաշխարհային սոցիալիզմի հաջողությունները. որպեսզի կարողանա իր ձեռքում պահել քաղաքական իշխանությունը, նա ներքին կյանքում վարում է բռնության, բացահայտ հակադեմոկրատական քաղաքականություն։ Կապիտալիստական շատ երկրներում պետական ապարատը, քաղաքական ողջ սիստեմը ֆաշիզացման է ենթարկվում։ Այս բոլորի արտացոլումը գաղափարախոսության մեջ հակակոմունիզմն է՝ իր տարբերակներով ու երանգներով, որոնցից մեկը ապագաղափարայնացումն է՝ դեիդեոլոգիզացիան։

Բուրժուական սոցիոլոգներից ոմանք հայտարարում են, որ XX դարը ամերիկանիզմի տիրապետման և ազատ շուկայական էկոնոմիկայի իշխման դարաշրջանն է։ Նրանք բարբաջում են, թե, իբր, մարքսիստական գաղափարախոսությունն աստիճանաբար կորցնում է իր վաղեմի հմայքն ու ձգողական ուժը և չի համապատասխանում ներկա ժամանակաշրջանի պահանջներին։ Կորցնելով իրական փաստերը վերլուծելու, կյանքն անկանխակալ ուսումնասիրելու ունակությունները, կապիտալի վարձու փաստաբանները նույնիսկ խոսում են այն մասին, թե մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունը էրոզիայի է ենթարկվում։ Նրանք սևով սպիտակի վրա գրում են, իբր, արդի ժամանակաշրջանում այլևս գաղափարախոսության անհրաժեշտություն չկա։ Կամ այն որպես քաղաքական և գաղափարական հայացքների որոշակի սիստեմ սպառել է իրեն՝ վերջ ամեն տեսակ գաղափարախոսություններին։ Նրանք անգամ հնարել են նոր հիպոթեզ, թե այժմ, իբր, ոչ թե գաղափարա-

խոսության, այլ իդեայի ժամանակաշրջան է։ Բուրժուական սոցիոլոգների նման հնարանքների նպատակը, ամեն տեսակ գաղափարախոսությունների բացասման քողի տակ, մարքս-լենինյան գաղափարախոսությունը հերքելն է։

Գաղափարախոսությունը՝ որպես որևէ դասակարգի քաղաքական, փիլիսոփայական որոշակի հասկացությունների սիստեմ, իր բովանդակությամբ կոնկրետ է։ Այն որոշակի հասարակության նյութական կյանքի կոնկրետ պայմանների արտահայտությունն է, հասարակական գիտակցության մի ձև։ Բուրժուական սոցիոլոգների և փիլիսոփաների ապագաղափարայնության հնարքները վկայում են, որ նրանք խոր ճգնաժամ են ապրում, նրանց զինանոցում չկան մարդկանց վրա ներգործելու նոր, առաջադեմ գաղափարներ, սոցիալական նոր մտահանգումներ։ Գաղափարախոսության վերացման քողի տակ նրանք հետապնդում են հեռավոր նպատակներ, ճգնում ապակողմնորոշել աշխատավորությանը, մասնավորապես՝ երիտասարդությանը։

Բուրժուական սոցիոլոգները գաղափարախոսությունը համարում են հետամնաց հասարակության առանձնահատկությունը, որը, իբր, բնորոշ է սոցիալիստական համագործակցության, մի շարք, մասնավորապես ասիական հետամնաց երկրների։ Դրա համար, ըստ նրանց, վերջիններս ղեկավարվում են մարքսիստական լենինյան գաղափարախոսությամբ։ Զարգացնելով այս թեզը, նրանք ասում են, թե կուլտուր-տնտեսապես բարձր մակարդակի վրա գտնվող երկրները հեռու են գաղափարախոսությունից, օտարում են այն։

Բուրժուական տեսաբանների նման հերյուրանքները չեն համապատասխանում իրականությանը, գոյություն ունեցող փաստերին։ Մարքսիզմ-լենինիզմը լոկալ, սահմանափակ շառավիղով ուսմունք չէ, այն իր էությամբ ինտերնացիոնալիստական է, ընդունելի սոցիալական տարբեր բնույթի բոլոր երկրների աշխատավորների համար։ Կապիտալիստական ամենազարգացած երկրներում գործող կոմունիստական և բանվորական կուսակցությունները պայքարում են իրենց ազգային մոնոպոլիստական կապիտալիզմի դեմ՝ հանուն հասարակության սոցիալիստական վերափոխման։

Կապիտալի երդվյալ գրչակները ճգնում են քողարկել իրենց տերերի, իշխող դասակարգի գաղափարախոսությունը։ Մի՞թե ժամանակակից բուրժուական սոցիոլոգիան, իր բազմաթիվ ճյուղերով, իշխող դասակարգի գաղափարախոսությունը չէ։ Հապա փիլիսոփայական իդեալիզմը, ֆիդեիզմը, ռասայական թեորիան, գեոպոլիտիկան բուրժուական գաղափարախոսության արտահայտությունները չե՞ն արդյոք։ Չկա, չի եղել և չի կարող լինել հասարակություն, որը չունենա իր գաղափարախոսությունը։ Դասակարգերի բաժանված հասարակության մեջ չկա ապադասակարգային կամ վերդասակարգային գաղափարախոսություն։ Դեիդեոլոգիզացիայի տեսությունն արդի բուրժուական գաղափարախոսության քողարկված ձևն է։ Մեր դասակարգային հակառակորդները գտնում են, թե, իբր, ներկա գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում հասարակական կյանքում գերիշխողը տեխնոկրատիան է։ Այս հարություն առած դրույթը, որի վրա նստած է ժամանակի փոշու շերտը, նորություն չէ։

Դեռևս XIX դարի բուրժուական իդեոլոգները, մարքսիզմի դեմ մղած պայքարում, զգալով իրենց դասակարգային գաղափարախոսության արատավոր և թույլ կողմերը, այն, առհասարակ, վերագրեցին գաղափարախոսությանը, ընդ որում, կոմունիզմի ուսմունքին։ Բուրժուական փիլիսոփայության մեջ ծագեց և զարգացավ պոզիտիվիստական ռեակցիոն ուղղությունը։



Պոզիտիվիստներն այն դրույթն էին առաջ քաշում, թե դրական, այսինքն՝ բնական գիտությունները, քանի որ ունեն իրենց «գիտության փիլիսոփայությունը», հատուկ փիլիսոփայության կարիք չունեն։ Այստեղից նրանք եզրակացնում էին, թե «պետք է դեն նետել փիլիսոփայությունը»։

Պոզիտիվիստական գրականության մեջ արծարծվեց այն տեսակետը, թե դասակարգային յուրաքանչյուր գաղափարախոսություն անհարիր է բնական գիտություններին։

Ամերիկացի սոցիոլոգ Դանիել Բելն իր աշխատություններից մեկը անվանել է Վերջ գաղափարախոսությանը: Ռեակցիոն այս թեզը նա փոխ է վերցրել XIX դարի պոզիտիվիստներից։ Հայտնի է, որ նեոպոզիտիվիստական հայացքները երևելի հետք չթողեցին բուրժուական հասարակական մտքի վրա, պարզապես դարձան փիլիսոփայական ուղղություններից մեկը։

Բուրժուական դեիդեոլոգիզացիայի տեսության տարատեսակներից է, այսպես կոչված՝ կոնվերգենցիայի թեորիան (կոնվերգենցիան լատինական տերմին է, նշանակում է մերձեցում, նմանեցում)։ Համաձայն այս տեսության, այժմ սոցիալիզմի ուղին բռնած երկրները, աստիճանաբար հաղթահարելով իրենց հետամնացությունը մոտենում են առաջավոր, զարգացած կապիտալիստական երկրներին, որպեսզի միաձուլվեն միանման ինդուստրիալ զարգացում ունեցող հասարակության մեջ, ուր հեռավոր ապագայում, սոցիալիզմը տարրալուծվելով կապիտալիզմի մեջ, կստեղծվի մի նոր «միասնական ինդուստրիալ հասարակություն»։ Այսպիսով, բոլորի համար ընդունելի է «լիբերալացված», «դեմոկրատականացված», ինչպես նրանք են անվանում, ամենալավ «սոցիալիստական հասարակությունը», կամ «ընդհանուր բարօրության հասարակարգը»։

Այս «տեսության» պրոպագանդիստները քարոզելով սոցիալիզմի և կապիտալիզմի փոխադարձ «մերձեցում» մի ինչ-որ «միասնական ինդուստրիալ հասարակություն», բուրժուազիան խորամանկորեն անցկացնում է յուր դասակարգային իշխանությունը հավերժացնելու գիծը։ Ավելին, նա իր տեսական ընդգրկումների ոլորտն է ներգրավել միջպետական հարաբերությունները, հորինելով, այսպես կոչված՝ կամուրջների կամ միջին Եվրոպայի թեորիան։ Ըստ սրա գոյություն ունի Եվրոպայի, այսպես կոչված՝ «տնտեսական ինտեգրացիան» կամ եվրոպական շուկա, որի մեջ մտնում են Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը։ Այս վեցյակի միավորման մեջ Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունը, շնորհիվ իր տնտեսական և ռազմական պոտենցիալի, վճռական դիրք է գրավում։ Բոննի կառավարությունը, հիմք ընդունելով եվրոպական ինտեգրացիան, ձգտում է կամուրջ գցել եվրոպական սոցիալիստական երկրների՝ Լեհաստանի, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Բուլղարիայի, Ռումինիայի միջև։ Ըստ Բոննի կառավարության ղեկավարների, առևտրա-ֆինանսական և վարկային կապերը կհանդիսանան այն կամուրջները, որ միմյանց հետ կկապեն երկու տարբեր մասերի բաժանված եվրոպական երկրները։ Կենտրոնական Եվրոպայի մեջ մտնող տնտեսական ինտեգրացիայի երկրներին պետք է միացնել հարավեվրոպական սոցիալիստական պետությունները։

Արևմտագերմանական պաշտպանության նախկին մինիստր (այժմ ֆինանսների մինիստր) Ժոզեֆ Շտրաուսը իր Նախագիծ Եվրոպայի համար գրքույկում բացահայտորեն գրում է. «Մենք պետք է սկզբից կենտրոնանանք

քաղաքական միավորված վեց երկրների (խոսքը եվրոպական տնտեսական ինտեգրացիայի մասին է) վրա։ Հետագա նպատակը եվրոպական ֆեդերացիան է։ Սրան աստիճանաբար կտրվի ազգային սուվերենություն։ Ներկա ազգային պետությունները ժամանակի ընթացքում կստանան առանձին հողերի ֆեդերալ օրենսդրություն... Արևմտյան Եվրոպան, «Եվրոպայի Միացյալ Նահանգների» ճանապարհին, պետք է նախապատրաստական աստիճան հանդիսանա, որոնց թվում ես ուզում եմ դասել կենտրոնական և արևելյան երկրները... Մեզ անհրաժեշտ է մտածել այն մասին, որ Լեհաստանը, Չեխոսլովակիան, Բուլղարիան, Հունգարիան, Ռումինիան և այլն, նույնպես Եվրոպային են պատկանում, ինչպես Շվեյցարիան, Հոլանդիան, Բելգիան։ Խոսքն այն մասին է, որ այդ երկրները նորից դառնան Եվրոպայի բաղկացուցիչ մասը (այսինքն՝ կապիտալիզմը վերականգնվի այդ երկրներում), հակառակ պարագայում, սկզբում, թեկուզ, որպես «բուֆերային Եվրոպա» հասկացողությամբ։ Մեր խնդիրը պետք է լինի Ռուսաստանի և Արևմտյան Եվրոպայի միջև ինչ-որ մի գոտի՝ «բուֆերային Եվրոպա» քաշելը («Известия», 15/8, 1968 թ.)։

Այս ընդարձակ մեջբերումից պարզ երևում է, որ ԳՖՀ-ի «Արևելյան նոր քաղաքականության» կուրսը գերմանական իմպերիալիզմի ագրեսիվ գաղափարախոսության արտահայտության քողարկված ձևն է։ Դիմակավորվելով կամուրջների և կամրջակների սնամեջ տեսությամբ, արևմտագերմանական ռևանշիստական ուժերը անհաջող փորձեր են անում արևելյան և հարավ-արևելյան Եվրոպայի երկրներն անջատել սոցիալիստական սիստեմից։ 1968 թ. օգոստոսին Չեխոսլովակիայում տեղի ունեցած հակահեղափոխական խմբավորումների օրերին Բոննի ռևանշիստները և նրանց վաշինգտոնյան հովանավորողները կարծում էին, թե վերջապես հասել է իրենց նպատակները իրականանալու ժամը։ Մինչ ԳՖՀ ռևանշիստներն իրենց տերերի ցուցումով սարդի ոստայն էին հյուսում, Վարշավայի պայմանագրի երկրների զորքերը մտան դաշնակից սոցիալիստական Չեխոսլովակիայի տերիտորիան և ի չիք դարձրին ԳՖՀ և նրա դաշնակիցների պլանները։ Ժողովրդական առածն ասում է՝ շաբաթը շուտ եկավ, քան ուրբաթը։ ԳՖՀ կոալիցիոն կառավարության «արևելյան նոր քաղաքականություն» կամ «կամուրջների թեորիան», շատ գերմանացիներ ևս համարեցին որպես ոչ-ռեալ, անիրականանալի քաղաքականություն, որը փորձ է անում հաշվի չառնել Սովետական Միության գոյությունը։

Արևմտագերմանական հայտնի սոցիոլոգ Ֆրանց Ռեյտերն այդ առթիվ գրել է. «Արևելյան քաղաքականության ակտիվացման վերաբերյալ, որ 1966 թ. սկսած շատ հաճախ են կոչեր անում, նույնպես պետք է կիրառել լայն հեռանկարների հաշվառում։ Եվ նկատի չառնել սոսկ երկկողմանի շահերը, այն գաղափարը, ըստ որի պետք է օգտագործել պոլիցենտրիզմը Արևելյան բլոկում, լավ հարաբերություններ ապահովել միմիայն կենտրոնական և Արևելյան Եվրոպայի հետ։ Պարզվեց, որ այդ քաղաքականությունը ճիշտ չէ։ Սովետական Միությունն առաջվա նման ավանգարդային պետություն է Արևելյան Եվրոպայի կոմունիստական պետությունների շրջանում։ Ընդհանուր գերմանական յուրաքանչյուր քաղաքականություն վերջանում է Մոսկվայում...»։ Այժմ ԳՖՀ-ի ռազմատենչ շրջանները հարկադրված են «հաշտվել» կատարված փաստի հետ։ Սակայն նրանք հույսները չեն կտրել, որ կիրականացնեն իրենց երազած կամուրջների թեորիան։

Չեխոսլովակիայում հակահեղափոխության ոտնձգությունները ձախողելուց հետո, կապիտալիստական գրեթե բոլոր երկրները, հատկապես Ամերիկայի Միացյալ Նահանգներն և Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունը, ուժեղացրել են հակակոմունիստական գաղափարական դիվերսիան։ ԳՖՀ-ում պատմության դասագրքերը լի են հակակոմունիստական զրպարտանքներով։ Աշակերտական նստարանից սկսած, երեխաներին դաստիարակում են նացիստական, ռևանշիստական, հակակոմունիստական ոգով։ Դասագրքերում ռուսներին, կոմունիստներին և խաղաղության կողմնակիցներին անվանում են արյունարբուներ, կռվարարներ, խռովարարներ։ Գերմանական կոմունիստական կուսակցության անդամներին և խաղաղության կողմնակիցներին համարում Մոսկվայի լրտեսներ և այլն։

Ամերիկացի պրոֆեսոր Գերման Կանը, թողնելով իր երբեմնի բացարձակ հակակոմունիստական մարտաշունչ հարձակումների տոնը, դիմել է, այսպես կոչված՝ «փափուկ ներթափանցման», «խաղաղ հակահեղափոխության» մոդայական տակտիկայի։ Բայց, խայթվելով Չեխոսլովակիայում հակահեղափոխական պլանների խայտառակ տապալումից, հարկադրված խոստովանում է, որ Արևմտյան ստրատեգները ռոմանտիկներ են։ Եվ նրանց պլանները շատ հաճախ իրականությանը չեն համապատասխանում, այսինքն՝ դրանք կառուցված են ավազի վրա։ Ամերիկյան խոշոր ձեռնարկությունների դիրեկտորների և գործարար շրջանների համար հրատարակվող «Ֆորչուն» կոչվող ամսագրում Կանը սրտի խոր կսկիծով գրել է. «Մենք իսկապես ֆանտաստիկորեն չենք գնահատել սովետական ղեկավարներին»։ Թույլ ենք տվել «Ռուսական ջղերի ամրության և վճռականության առասպելական թերագնահատում» («Правда», 13/11, 68)։ Ճարահատյալ խոստովանություն։

Իմպերիալիզմի գաղափարախոսներն ամեն կերպ ճգնում են քայքայել սոցիալիստական լագերի միասնությունն ու եղբայրական բարեկամությունը։ Հատկապես եվրոպական ժողովրդական դեմոկրատիայի երկրներում նրանք տարածում են բուրժուական ինդիվիդուալիստական, կեղծ պացիֆիստական հայացքներ, փորձում քայքայել սոցիալիստական կարգը, հասարակության կառավարման ոլորտից մեկուսացնել կոմունիստական կուսակցությունները։ «Մենք ապրում ենք համաշխարհային ասպարեզում ծավալված դասակարգային սուր պայքարի դարաշրջանում,— ասում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— իմպերիալիստական պետությունները գաղափարական կատաղի պատերազմ են ծավալել սոցիալիզմի երկրների դեմ, ձգտելով ակտիվացնել քայքայիչ աշխատանքը սոցիալիստական լագերի ներսում, սեպ խրել սոցիալիստական առանձին երկրների միջև, թուլացնել միջազգային կոմունիստական շարժման միասնությունը։ Այդ պայքարի ընթացքում մեր դասակարգային հակառակորդները մեծ ջանքեր են գործադրում, փորձելով ազդել սոցիալիստական երկրների երիտասարդների մտքերի վրա։ Նրանք քողարկվում են «երիտասարդության բարեկամների» դիմակով, ջանում իրենց ցանցի մեջ ներքաշել քաղաքականապես անկայուն, անփորձ երիտասարդներին, բթացնել նրանց դասակարգային, հեղափոխական զգոնությունը բուրժուա-լիբերալական կարգի կեղծ դատողություններով, ձգտում են բորբոքել նացիոնալիստական տրամադրություններ, փնտրում են հեշտ կյանք սիրող թափթփուկների» («Սովետական Հայաստան», 26 հոկտեմբերի, 1968 թ.)։

Դեիդեոլոգիզացիայի բուրժուական տեսությունը ընդհանուր ոչինչ չունի գիտության հետ, այն կոմունիզմի, նոր հասարակարգի կառուցման պրակտիկայի դեմ ուղղված բացահայտ իմպերիալիստական դոկտրինա է։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

**Վ. ՅԱ. ԲԱԵՎ**

ՍՄԿԿ Սվերդլովսկի մարզկոմի մեքենաշինության բաժնի վարիչ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ*

(Սվերդլովսկի մարզի կուսկազմակերպությունների աշխատանքի փորձից)

*Աշխատանքի գիտական կազմակերպումը 1964 թվականից դարձել է Սվերդլովսկի մարզային կուսկազմակերպության հոգսերից մեկը։ Ուրալի քիմիական մեքենաշինության, Սվերդլովսկի գործիքաշինական, Սինարսկի խողովակների գործարանների և այլ ձեռնարկությունների բանելատեղերում, բրիգադներում և տեղամասերում ԱԳԿ առաջին պլանների ներդրման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունն աճեց 12—18, իսկ մի շարք ձեռնարկություններում՝ 40—50 տոկոսով, նպաստեց տրավմատիզմի իջեցմանը, բարձրացավ աշխատանքային կարգապահությունը, ամրապնդվեցին կադրերը։*

*Բայց կուսկազմակերպությունները ավելի շոշափելի արդյունքներ էին սպասում, քանի որ ԱԳԿ պլանների մշակումն ամրապնդել էր բանվորների, ինժեներների, գիտնականների համագործակցությունը, արտադրության շատ մասնագետների աշխատանքը դարձրել իսկապես ստեղծագործական, բացահայտել աշխատանքի, արտադրության կազմակերպման և կառավարման մինչ այդ չնկատված մեծ ռեզերվներ։*

*Բանելատեղերում ԱԳԿ պլաններից ձեռնարկությունները շուտով անցան խոշոր տեղամասերի, արտադրամասերի ու ծառայությունների համար այդպիսի պլաններ կազմելուն, քանի որ լավագույն սանիտարա-հիգիենիկ պայմանների ստեղծման, աշխատանքի տեղի սպասարկման, արտադրության կազմակերպման շատ հարցեր չէին կարող լուծվել միայն բանելատեղի շրջանակներում։*

*ԱԳԿ պլանները մշակում են ստեղծագործական բրիգադները, որոնց մեջ մտնում են տարբեր մասնագիտությունների ինժեներատեխնիկական աշ-*

** Հոդվածը գրված է «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրության խնդրանքով։*



*խատողներ, բանվորներ, բժիշկներ, գիտաշխատողներ։ Այդ բրիգադների կազմն ու աշխատանքի ծրագիրը հաստատում է ձեռնարկության գլխավոր ինժեները։ Ձեռնարկությունների ղեկավարների կարգադրությամբ, ԱԳԿ հաշվարկների, վերլուծությունների կատարմանը, միջոցառումների մշակմանն ու կիրառմանը ներգրավվում են գործարանների համապատասխան բաժինների ու ծառայությունների մասնագետները։*

*Ստեղծագործական բրիգադների աշխատանքները կոորդինացնում, նրանց օգնում, միջոցառումների արմատավորմանը հետևում են ԱԳԿ բյուրոները, լաբորատորիաներն ու բաժինները, որոնք ստեղծված են 210 ձեռնարկություններում և ենթարկվում են գլխավոր ինժեներին կամ դիրեկտորին։ Շատ ձեռնարկություններում կան ԱԳԿ խորհուրդներ, որոնք կոորդինացնում են արտադրամասերի և բաժինների ջանքերը, հասարակայնությանը ներգրավում նոր ձևով աշխատանքի կազմակերպման մեջ։*

*Աշխատանքի գիտական կազմակերպման պլաններում միջոցառումներ են նախատեսվում աշխատանքի կազմակերպման համամիութենական խորհըրդակցության հանձնարարականներում ձևակերպված հիմնական ուղղությունների, ինչպես և դրանց հետ կապված տեխնիկայի, տեխնոլոգիայի կատարելագործման, արտադրության և կառավարման կազմակերպման բնագավառում։*

*Հենվելով բանելատեղերի ու տեղամասերի համար ԱԳԿ պլանները կազմելու փորձի վրա, Ուրալի մեքենաշինական գործարանում այդպիսի պլան կազմվեց սարքավորումների արտադրամասի համար։ 39 մարդուց բաղկացած ստեղծագործական բրիգադն գլխավորում էր արտադրամասի պետը. բրիգադայի անդամները գործարանի ԱԳԿ լաբորատորիայի և այլ ծառայությունների աշխատողներ էին։ Աշխատանքն ընթանում էր հետևյալ փուլերով. նկարագրել գոյություն ունեցող վիճակը, համեմատել առաջավոր փորձը, վերլուծել, մշակել միջոցառումները, դրանք տնտեսապես հիմնավորել, կազմակերպել կատարումը։ Պլանով նախատեսված 200 միջոցառումներն էլ կատարվեցին։ Վերադասավորվեցին սարքավորումները, կրճատվեց բեռների շրջապտույտը։ Արդյունաբերական էսթետիկայի պահանջներին համապատասխան վերափոխվեց հատակը, ներկվեցին պատերը, առաստաղը, սարքավորումները, ստեղծվեց ռացիոնալ լուսավորություն։ Պատրաստվեցին հարմար պահարաններ, գործասեղաններ, պտտվող դարակներ. կահավորվեցին վարպետների բանելատեղերը։ Հաստոցները համալրվեցին բազմաթիվ մեքենայացված հարմարանքներով։ Կատարելագործվեց կառավարման ներարտադրամասային կառուցվածքը։ Վարպետներին և մյուս ղեկավարներին հրավիրում են երաժշտական համապատասխան եղանակով։ Վերակառուցված են կենցաղային շենքերը. ճաշելու համար աշխատողն այժմ ծախսում է ընդամենը 15—20 րոպե։*

*Ուրալի մեքենաշինական գործարանում մաթեմատիկական կոռելյացիայի մեթոդով պարզվել է աշխատողների կրթության, ստաժի, հասակի, որակավորման աստիճանի ազդեցությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա և դրանց հիման վրա աշխատանք է կատարվում կադրերի հետ։ Արտադրամասային կոմպլեքսային պլանի իրականացման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը 1967 թ. բարձրացավ 12 տոկոսով, զգալիորեն կրճատվեցին աշխատաժամանակի կորուստներն ու պարապուրդները, բարելավվեց արտադրամասի աշխատանքի համաչափությունը։*

ԱԳԿ արտադրամասային պլանների իրականացման շնորհիվ Ուրալի քիմիական մեքենաշինության, վագոնաշինական, Սվերդլովսկի և Նիժնի Տագիլի պլաստմասերի գործարանների և շատ այլ ձեռնարկությունների արտադրամասերը խիստ վերափոխվել են։

Արդյունաբերական ձեռնարկությունների փորձի հիման վրա ԱԳԿ արմատավորվում է շինարարության մեջ, ավտոմոբիլային, երկաթուղային տրանսպորտում, գյուղատնտեսության մեջ, կենցաղային սպասարկման ձեռնարկություններում։

Հաշվի առնելով, որ արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ արտադրություններում զբաղված է բանվորների մոտ կեսը, ձեռնարկությունների կուսկազմակերպություններն ու ղեկավարներն առավել մեծ ուշադրություն են նվիրում ԱԳԿ այդ ոլորտին։ Շատ գործարաններում օժանդակ աշխատանքները՝ շենքերի, սարքավորումների, էլեկտրաշարժիչների նորոգումը, պահեստամասերի պատրաստումը կատարվում են մասնագիտացված ծառայությունների միջոցով։ Համատեղվում են օժանդակ բանվորների մասնագիտությունները, արմատավորվում է անթերի արտադրանք ստանալու մեթոդը, կենտրոնացվում են ներգործարանային փոխադրումները։

Արտադրության կառավարման ոլորտում ավելի լայնորեն է կիրառվում հաշվողական տեխնիկան։ Ագրեգատների տարածական ու ծրագրային կառավարումը, կոմպլեքսային ինֆորմացիան, ֆոտոհեռագրակապը, ինժեներական հաշվումների մեծ մասը շատ ձեռնարկություններում իրականացվում է դրանց օգնությամբ։

ԱԳԿ բաղկացուցիչ մասերից է նաև արտադրության կուլտուրայի բարձրացումը։ Կադրերի ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր միջոց է ձեռնարկությունների պայքարը հանուն արտադրական բարձր կուլտուրայի, սանիտարա-հիգիենիկ լավագույն պայմանների, արտադրամասերում բանվորների կենցաղային սպասարկման բարելավման։

Ուրալի վագոնաշինական, Կամենսկ-Ուրալսկի մետալուրգիական գործարաններում իրականացվում են արտադրության կուլտուրայի բարձրացման եռամյա պլաններ. կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների մասնակցությամբ ամեն օր տրվում է արտադրամասերի աշխատանքի գնահատականը, մրցում է ծավալվել բարձր կուլտուրայի արտադրամասի և տեղամասի համար։ Այս ամենը բարձրացնում է արտադրանքի որակը, կրճատում տրավմատիզմը։

Աշխատանքի և արտադրության կազմակերպումը բարելավելու և սոցիալական այլ խնդիրներ վերջին տարիներս ավելի ու ավելի են գրավում կուսկազմակերպությունների ուշադրությունը։ Կոլեկտիվների սոցիալական զարգացման կամ համագործարանային հեռանկարային կոմպլեքսային պլաններում համապատասխան բաժիններ են մշակվել մի շարք խոշորագույն ձեռնարկություններում։

Աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպման գծով նախատեսվում է հետևյալը. գիտատեխնիկական առաջադիմություն և կոլեկտիվի կառուցվածքի փոփոխում, սոցիալիստական գիտակցության զարգացում, աշխատանքային կարգապահության և կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացում, կենցաղային և սոցիալ-կուլտուրական սպասարկման բարելավում։ Այս միջոցառումները մշակվում և իրականացվում են ձեռնարկությունների կուսկոմիտեների անմիջական ղեկավարությամբ։



Ընդլայնելով ԱԳԿ գործունեության շրջանակները, առաջավոր ձեռնարկությունները, բնականաբար, սկսեցին մշակել տեխնիկական առաջադիմության, աշխատանքի և ԱԳԿ-ի, կառավարման բարելավման և կոլեկտիվի սոցիալական զարգացման համագործարանային կոմպլեքս պլաններ։ Դրանք մշակում են գործարանների կոլեկտիվներն ու գիտաշխատողները և հիմնավորվում տվյալ ձեռնարկության գործունեության խոր վերլուծմամբ։ Կոմպլեքսային հեռանկարային պլանն իրականացվում է տարեկան պլանների միջոցով. այդպիսով ապահովվում է պլանավորման անընդհատությունը, բացառվում տարբեր պլանների կազմումը, քանի որ կոմպլեքսային պլանը ձեռնարկության միակ դիրեկտիվ փաստաթուղթն է։ Կոլեկտիվի գործունեության բոլոր կողմերը դիտվում են փոխադարձ կապի և համագործակցության մեջ։

Այդպիսի պլաններ են մշակված Ուրալի կոմպրեսորների, Նիժնի-Տագիլի պլաստմասսաների, Ուրալի մեքենաշինական, Սվերդլովսկի գործիքաշինական և այլ գործարաններում։ Այդ գործը ձեռնարկված է նաև տուրբինամոտորային, միջին Ուրալի պղնձաձուլական գործարաններում և այլուր։ Ըստ որում, տեղամասերի, արտադրամասերի ու բաժինների համար ԱԳԿ պլանների հետագա մշակումը բացառված չէ, այն նախատեսվում և պլանավորվում է։

Սվերդլովսկի «Պնևմոստրոյմաշ» գործարանի 1967—1970 թթ. կոմպլեքսային հեռանկարային պլանն ունի հետևյալ բաժինները.

1. Տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործման.

2. Աշխատանքի և արտադրության ռացիոնալ կազմակերպման.

3. Աշխատանքի պայմանների բարելավման, արտադրության կուլտուրայի բարձրացման.

4. Կառավարման, պլանավորման և հաշվառման կատարելագործման.

5. Արտադրական-կենցաղային և բուժսպասարկման բարելավման.

6. Կոլեկտիվի սոցիալական զարգացման.

7. Աշխատանքի ու պլանավորման կազմակերպում ԱԳԿ-ի համաձայն։

Երկու տարում իրականացնելով 1078 միջոցառում, գործարանի կոլեկտիվը 1968 թ., 1965 թ. համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 28, իսկ արտադրանքի ծավալը մեծացրել 33 տոկոսով. տարեկան պայմանական խնայողությունը հասցրել է 1,3 մլն ռուբլու, դրա հետ միասին 650 հազար ռուբլով կրճատել արտադրանքի իրացման ծախսերը։

* * *

Աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորումը կատարվում է կուսկոմիտեների մասնակցությամբ ու ղեկավարությամբ։ ՍՄԿԿ քաղկոմների, շրջկոմների բյուրոներում, պլենումներում, կուսակցական ակտիվի ժողովներում սիստեմատիկաբար քննության է առնվում այդ աշխատանքի ընթացքը։

ԱԳԿ հարցերին նվիրված քաղաքային և շրջանային տեխնիկա-տնտեսական կոնֆերանսները դարձել են առաջավոր փորձի ընդհանրացման և պրոպագանդման լավագույն ձև։ Միայն 1965—1967 թթ. անց են կացվել 120 այդպիսի կոնֆերանս, դրանց մասնակցում են գիտնականները, կազմակերպվում են ցուցահանդեսներ, ցուցադրվում ԱԳԿ պրոբլեմներին նվիրված կինոֆիլմեր։

ՍՄԿԿ Նիժնի-Տագիլի քաղկոմը վերջերս անցկացրեց երկու հետաքրքրական կոնֆերանս՝ «ԱԳԿ և ռեֆորմը», «Կառավարչական աշխատանքի ար-

դյունավետության բարձրացումը» թեմաներով։ Սվերդլովսկ քաղաքի ՍՄԿԿ Չկալովյան շրջկոմի արդյունաբերության գծով քարտուղարի գլխավորած տեխնիկա-տնտեսական խորհուրդը և ԱԳԿ սեկցիան ընդհանրացնում ու տարածում են առաջավոր փորձը, մեթոդական օգնություն ցույց տալիս ձեռնարկություններին, մշակում ԱԳԿ գործում աչքի ընկած լավագույն լաբորատորիայի և ձեռնարկության մրցանակաբաշխության պայմանները, հսկում տեխնիկա-տնտեսական կոնֆերանսների հանձնարարականների կատարմանը։

Ձեռնարկությունների գործունեության ակտիվացմանը նպաստում են ԱԳԿ լավագույն պլանի ստուգատեսներն ու մրցանակաբաշխությունները, որոնք կազմակերպում են ՍՄԿԿ քաղկոմներն ու շրջկոմները՝ քաղաքային և շրջանային թերթերի խմբագրությունների հետ միասին։ Մարզի քաղաքներում, շրջաններում, ձեռնարկություններում կազմակերպվել են 240 այդպիսի ստուգատես-մրցանակաբաշխություն։

Կուսկազմակերպությունների առաջարկությամբ, ԱԳԿ շատ բաժինների ու լաբորատորիաների ղեկավարներ են նշանակվել հմուտ մասնագետներ՝ արտադրամասերի, բաժինների պետեր։ Այդ գործին ներգրավվել են ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողության խմբերը, հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական, նորմավորման և տնտեսագիտական բյուրոները։

Աշխատանքի և ԱԳԿ կոմպլեքսային պլանների մշակման, այդ բնագավառի հետազոտությունների ժամանակ կապը գիտական հաստատությունների հետ հիմնականում իրականացվում է կուսկազմակերպությունների միջոցով։ Ձեռնարկություններում ԱԳԿ արմատավորման նպատակով 300 կուսհանձնաժողովներ ամենօրյա հսկողություն են իրականացնում։

Սվերդլովսկի գործիքաշինական գործարանի կուսկազմակերպությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում աշխատանքի գիտական կազմակերպմանը։ Կուսկազմակերպության բյուրոն քննության է առնում այդ աշխատանքի բոլոր հիմնական ուղղությունները, պլանների իրականացման ընթացքը։ Կոմունիստների 70 տոկոսն այստեղ մասնակցում է ԱԳԿ պլանների մշակմանն ու միջոցառումների իրականացմանը։ Դրանց կատարման ստուգման գործին ներգրավված են ժողովրդական վերահսկողության խումբը, «կոմերիտական լուսարձակի» շտաբը։ Դիրեկցիան ու կուսկազմակերպության բյուրոն գլխավոր մասնագետներից ստեղծել են ԱԳԿ պրոբլեմային խմբակ, որը նախանշում է հաջորդ տարվա աշխատանքների հիմնական ուղղությունները։

Կուսկազմակերպության բյուրոն, դիրեկցիան և գործարկոմը ամեն տարի անց են կացնում ԱԳԿ լավագույն պլանի ստուգատես-մրցանակաբաշխություն, աշխատողներին խրախուսում են դրամական պարգևներով և պատվոգրերով։ «Инструментальщик» բազմատիրաժ թերթը շարունակ նյութեր է հրապարակում աշխատանքի գիտական կազմակերպման ընթացքի մասին։

Թերմիկական արտադրամասում, որտեղ արմատավորված է ԱԳԿ պլանը, արտադրության ծավալը և աշխատանքի արտադրողականությունը երկու տարվա ընթացքում աճել են 18 տոկոսով, կրճատվել է խոտանը, պարապուրդները պակասել են 2,5, կադրերի հոսունությունը՝ 3,5 անգամ։ Ամբողջությամբ վերցրած գործարանում 1964—1968 թթ. աշխատաժամանակի ներհերթափոխային կորուստները կրճատվել են 2 անգամ, ներգործարանային



փոխադրումները՝ 50 տոկոսով. արտադրության ծավալն աճել է 1,5 անգամ, որի 90 տոկոսն աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, իսկ արտադրողականությունը՝ 36,7 տոկոսով։

Կամենսկ-Ուրալսկի մետալուրգիական գործարանի կուսկազմակերպությունը մեծ աշխատանք է կատարում արտադրության կուլտուրան բարձրացնելու համար։ Արդյունաբերական էսթետիկայի եռամյա պլանների իրականացումը, «առողջություն արտադրամասի», գործարանի տերիտորիայում պտղատու այգու ստեղծումը, դրանք արտադրամասերին ամրացնելը, արդյունաբերական էսթետիկայի գծով կուսակցական վերահսկողության հանձնաժողովի գործունեությունը, դաստիարակչական մեծ աշխատանքը տվեցին իրենց ցանկալի արդյունքը։ Այս ամենի շնորհիվ գործարանն արժանացավ կոմունիստական աշխատանքի բարձր կոչման։ Ամեն տարի նվազում են խոտանից առաջացած կորուստները. 1968 թ. կադրերի հոսունությունը հասել է 8,1 տոկոսի. լրիվին վերացվել են պրոֆեսիոնալ հիվանդությունները։ Այս ձեռնարկությունում ԱԳԿ պլանները մշակող ստեղծագործական բրիգադների մոտ կեսը կոմունիստներ են։ Արտադրամասերում գործում են կուսակցական վերահսկողության 11 հանձնաժողով։

ԱԳԿ ուղղությամբ միջոցառումների մշակումն ու իրականացումը դարձել են ձեռնարկությունների, շրջանների, քաղաքների և ամբողջ մարզի սոցիալիստական պարտավորությունների անբաժանելի մասը։ Մրցության արդյունքներն ամփոփելիս կարևոր նշանակություն է տրվում այդ բնագավառում կատարված աշխատանքին։

ԱԳԿ հաջող արմատավորման կարևորագույն պայմանը կադրերին ԱԳԿ հիմունքներով զինելն է։ Քանի դեռ մասնագետները, բանվորները, տնտեսական, կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների ղեկավարները չեն տիրապետում ԱԳԿ հիմունքներին, անհնար է հաջողության հասնել։

ՍՄԿԿ մարզկոմը, քաղկոմները, երկրամասի սկզբնական կուսակցական կազմակերպություններն ստեղծել են կադրերի ուսուցման մի ամբողջ սիստեմ։ Ուրալի Ս. Մ. Կիրովի անվան պոլիտեխնիկական ինստիտուտում ստեղծվել է արտադրության կազմակերպիչների իննամսյա ֆակուլտետ, ուր սովորում են արտադրությունից կտրված կադրեր։ Այն արդեն ավարտել են արդյունաբերության տարբեր ճյուղերի 200 ինժեներ։ Երեք տարի է, ինչ ինստիտուտին կից գործում են ԱԳԿ դասընթացներ, ուր ընդգրկված են մարզի ձեռնարկությունների ԱԳԿ բյուրոների, լաբորատորիաների և բաժինների աշխատողները։ Դասընթացներում ընդունվում են մեքենաշինության, սև և գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության, էներգետիկայի և շինարարության ինժեներներ ու տեխնիկներ։ Նրանք մեկ ամիս արտադրությունից կտրված սովորում են ինստիտուտում, իսկ մեկ ամիս նախապատրաստվում ավարտական աշխատանքին, որից հետո՝ պաշտպանում այն։ Մարզային այս դասընթացներն ավարտել են 650 մասնագետ։

Սվերդլովսկի ժողովրդական տնտեսության ինստիտուտում գործում է տնտեսական գիտությունների հասարակական եռամյա համալսարան, որտեղ սովորում են ձեռնարկությունների դիրեկտորներն ու արտադրամասերի պետերը։ Տնտեսագիտական առարկաներն այստեղ անցնում են բուհի ծավալով. մեծ տեղ է տրվում աշխատանքի գիտական կազմակերպմանը։

ԱԳԿ հասարակական հիմունքներով գործող ինստիտուտներ կան Պերվոուրալսկի նոր խողովակների, Սևերսկի խողովակների և մի շարք այլ գոր-

ժարաններում։ Նիժնի-Տագիլի Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատում կուսկոմիտեի նախաձեռնությամբ 1967 թ. գործում է ԱԳԿ հասարակական համալսարանը։ Դրա ճյուղային տասը ֆակուլտետներում և ղեկավար աշխատողների հինգ խմբերում սովորում են մոտ 2 հազար մասնագետ։ Հասարակական հիմունքներով գործող այս ինստիտուտի ռեկտորն է կոմբինատի գլխավոր ինժեները. դասախոսություններ կարդալու, սեմինար պարապմունքներ անցկացնելու համար ներգրավված են ձեռնարկության առավել պատրաստված 400 մասնագետ։ Համալսարանում ուսումնասիրում են ԱԳԿ կառավարման թեորիան, աշխատանքի ֆիզիոլոգիան, սոցիոլոգիայի հարցեր, ցանցային պլանավորումը, մտավոր աշխատանքի հիգիենան և այլն։

Վերխնե-Պիշմինսկու քաղկոմը ԱԳԿ գծով 8-ժամյա ծրագրով ուսուցում է կազմակերպել ժողովրդական վերահսկողության խմբերի, արտադրամասային կոմիտեների, մշտական գործող արտադրական խորհրդակցությունների նախագահների, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների, ՍՄԿԿ քաղկոմի անդամների ու թեկնածուների և վերստուգիչ հանձնաժողովի անդամների համար։

ՍՄԿԿ մարզկոմի հանձնարարությամբ ձեռնարկությունների մեծ մասում ԱԳԿ հիմունքներին տիրապետելը պարտադիր է կադրերի ուսուցման բոլոր ձևերի համար։ Օրինակ, Սվերդլովսկի առանցքակալների գործարանում արտադրական-տեխնիկական դասընթացներում ԱԳԿ հարցերին հատկացվում է 4 ժամ, բանվորների որակավորման բարձրացման դասընթացներում՝ նույնքան, վարպետների դպրոցում՝ 32, տնտեսագիտական խմբակներում՝ 8, ինժեներա-տեխնիկական աշխատողների լեկտորիումներում՝ 20 ժամ։

Աշխատանքի ընթացքում պարզվել է, որ անհրաժեշտ է ձեռնարկություններում պատրաստել նկարիչ-ձևավորողներ։ Դիտողական ագիտացիան, կարմիր անկյունները, ակումբները, գործարանի տերիտորիան գեղարվեստորեն ձևավորելն արտադրության կուլտուրայի բարձրացման, արդյունաբերական էսթետիկայի արմատավորման բաղկացուցիչ մասն է։

ՍՄԿԿ մարզկոմը, կուսակցության Սվերդլովսկի և Նիժնի-Տագիլի քաղկոմները կազմակերպել են ձևավորող նկարիչների մարզային և քաղաքային երկու դպրոց։ Այստեղ հասարակական հիմունքներով պարապմունքներ են անցկացնում նկարիչների միության անդամները, գեղարվեստական ուսումնարանների դասատուները, տեխնիկական էսթետիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Ուրալի մասնաճյուղի մասնագետները։ Պարապմունքներն անց են կացվում ստացիոնար և հեռակա։ Դպրոցն արդեն ավարտել են գործարանային 350 նկարիչ։

Արդեն մի քանի տարի է, ինչ ՍՄԿԿ քաղկոմների, շրջկոմների, կուսկազմակերպությունների քարտուղարների, ֆաբգործկոմների նախագահների յուրաքանչյուր սեմինարում անց են կացվում ԱԳԿ պրոբլեմներին նվիրված պարապմունքներ. սեմինարի մասնակիցներն այցելում են ձեռնարկությունները, կատարում փորձի փոխանակություն, ծանոթանում ցուցահանդեսներին, դիտում կինոֆիլմեր։

Կադրերի ուսուցման, ԱԳԿ պրոպագանդելու գործում կուսկազմակերպություններին ակտիվ օգնում են մարզային, քաղաքային և բազմատիրաժ թերթերը։ «Уралский рабочий» և «Тагилский рабочий» թերթերը տպագրում են ԱԳԿ հեռակա դպրոցի նյութերը։ Շատ թերթեր ունեն Ստուգում ենք աշխատանքի գիտական կազմակերպման պլանները, Աշխատանքի գիտական



կազմակերպումը կուսակցական հոգս է, Աշխատանքի գիտական կազմակերպման պլանները յուրաքանչյուր ձեռնարկության, և այլ խորագրեր։ Տպագրվում են ո՛չ միայն դրական փորձի մասին պատմող նյութեր, այլև ԱԳԿ աշխատանքում եղած թերությունները վեր հանող քննադատական հոդվածներ։ ԱԳԿ մասին մարզային ռադիոն և հեռացույցը ցիկլային հաղորդումներ են անցկացնում։ «Գիտելիք» ընկերության մարզային կոմիտեում ստեղծված է ԱԳԿ ավելի քան 100 հոգուց բաղկացած դասախոսական խումբ։ Գիտական, կուսակցական, տնտեսական աշխատողները գրել են 96 բրոշյուր, ժողովածու, մեթոդական ձեռնարկ։ Միջին Ուրալի տեխնիկական ինֆորմացիայի կենտրոնական բյուրոն հրատարակել է այդ պրոբլեմներին նվիրված 112 տեխնիկական թերթիկ ու պլակատ։

Կուսակցական օրգանները ԱԳԿ պրոպագանդման, փորձի փոխանակման աշխատանքներում ակտիվ օգնում են գիտատեխնիկական ընկերությանը, տեխնիկայի տանը։ Մարզի քաղաքներում կազմակերպվել են ԱԳԿ 3 շրջիկ ցուցահանդես. ձեռնարկություններում գործում են 450 կաբինետներ և անկյուններ։

ՍՄԿԿ մարզկոմի բյուրոյի և արհմիությունների մարզային նախագահության որոշմամբ ստեղծված է ԱԳԿ մարզային մեթոդական խորհուրդ, որն իր կաբինետն ունի տեխնիկայի տանը։ Այն ամփոփում, պրոպագանդում է ձեռնարկությունների ու գիտական հիմնարկությունների առաջավոր փորձը, կադրերին սովորեցնում ԱԳԿ հիմունքները։

* * *

Աշխատանքի գիտական կազմակերպման, կադրերի ուսուցման, առաջավոր փորձի փոխանակման գործում մասնագետներին, բանվորներին, գիտնականներին ներգրավելու շնորհիվ մարզային կուսկազմակերպությունը կարողացել է այդ աշխատանքը լավ հիմքերի վրա դնել ինչպես ձեռնարկություններում, այնպես էլ մարզում։ ԱԳԿ պլանների մշակմանը և իրականացմանը մասնակցում են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի 1020 ձեռնարկություն։ Արմատավորվել են ԱԳԿ պլանների մոտ 7 հազար միջոցառում, որոնց շնորհիվ ստացվել է ավելի քան 62 մլն ռուբլու տնտեսական արդյունք։ ԱԳԿ նոր տեխնիկայի, առաջադիմական տեխնոլոգիայի արմատավորմամբ, տնտեսական ռեֆորմի իրականացմամբ, առաջավոր փորձի տարածմամբ մարզի շատ ձեռնարկություններ կարողացան հնգամյակի երեք տարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 30—40 տոկոսով։

ԱԳԿ արմատավորելու և արտադրության կուլտուրան բարձրացնելու բնագավառում Սվերդլովսկի մարզային և Ռիբինսկի քաղաքային կուսկազմակերպությունների աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ խնդիր է դրված՝ ապահովել այդ բնագավառում կատարվող աշխատանքի հետագա ընդլայնումն ու խորացումը, այնպես, որ այն դառնա կուսակցական, տնտեսական, արհմիութենական բոլոր կազմակերպությունների, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի ամենօրյա հոգսը։ Այս գործում մենք մեծ նշանակություն ենք տալիս երկրի այլ մարզերում ու հանրապետություններում կուտակված փորձին։ Մոսկվայի, Լենինգրադի, Երևանի, Ռիգայի և այլ քաղաքների փորձի փոխանակումը կուսկոմիտեների ու ձեռնարկությունների հետ, մեզ օգնում է կատարելագործելու աշխատանքի, արտադրության կազմակերպումը, կառավարումը, ապահովում աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

## ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

# ԻՆՖՈՐՄԱՑԻԱ

Վերջերս ՀԿԿ Կենտկոմի բյուրոն լսեց Աշտարակի կուսշրջկոմի հաշվետվությունը: Այդ առթիվ ընդունած որոշման մեջ մատնանշված է, որ ՀԿԿ Աշտարակի շրջկոմը վերջին տարիներին որոշակի գործ է կատարել կուսակցության ու կառավարության դիրեկտիվների իրագործման համար կոմունիստների և աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու ուղղությամբ: Սակայն, չնայած դրան, շրջկոմի, շրջսովետի գործկոմի և գյուղատնտեսության արտադրական վարչության և շատ սկզբնական կազմակերպությունների գործունեությունը դեռևս չի համապատասխանում ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումների ներկայացրած պահանջներին:

Աշտարակի շրջանի էկոնոմիկայի գլխավոր ճյուղը եղել և մնում է խաղողագործությունը, սակայն կուսակցական, սովետական և տնտեսական օրգանները անբավարար են զբաղվում խաղողագործության զարգացման հարցերով, ներգործուն միջոցներ չեն ձեռնարկում գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղի ետ մնալը հաղթահարելու համար: Չնայած խաղողի այգետարածությունների ավելացմանը, վերջին տարիներին բերքատվության իջեցման պատճառով, խաղողի արտադրությունը նվազում է:

Դա հետևանք է այն բանի, որ անբավարար են կիրառվում ագրոտեխնիկական միջոցառումները, ցածր մակարդակով են մշակվում այգիները, դանդաղորեն են փոխվում հին, քիչ բերքատու վազերը, հետևողական աշխատանք չի տարվում դրանց նոսրությանը (20 տոկոս) վերջ տալու համար, վնասատուների և հիվանդությունների դեմ պայքար չի կազմակերպվում:

Այգեգործական, հացահատիկային, բանջարանոցային և այլ կուլտուրաների մշակության զարգացումը խիստ ետ է մնում հնգամյա պլանով նախատեսված ցուցանիշներից: Այդ կուլտուրաների մշակման համար թույլ են օգտագործվում առաջավոր ագրոտեխնիկան, հանքային պարարտանյութերը, ժամանակակից տեխնիկան, գիտության նվաճումները, առաջավոր տնտեսությունների փորձը: Միշտ չէ, որ խնայողաբար և նպատակահարմար է օգտագործվում ոռոգող ջուրը:

Դրությունն անբարեհաջող է նաև հանրային անասնաբուծության բնագավառում: Վերջին տարիներին կրճատվել է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, հանրային նախիրում իջել է կովերի տեսակարար կշիռը, բարձր է մայրական կազմի ստերջությունը: Շրջանում վատ է կազմակերպված անասունների բտման և գիրացման գործը: Մի շարք տնտեսություններ պետությանը վաճառում են միջինից ցածր գիրության մսացու անասուններ: Շատ տնտեսություններում անբավարար ուշադրություն է նվիրվում անասունների ցեղի բարելավման և անասնապահության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացման հարցերին:

Ցածր են շրջանի տնտեսական ցուցանիշները, շատ տնտեսություններ արտադրությունը վարում են վնասով: Բարձր է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը: Կոլտնտեսությունների և սովխոզների ստացած տարբեր վարկերի պարտքը կազմում է 7,5 մլն ռուբլի: Բարձր են վարչակառավարչական ծախսերը, նվազում են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերին արվող հատկացումները և այլն:

Կոլտնտեսությունների և սովխոզների խիստ ետ մնալը գլխավորապես բացատրվում է նրանով, որ շրջկոմը և շատ սկզբնական կուսակցական կազմակերպություններ թուլացրել են կազմակերպական և գաղափարական աշխատանքը: Միշտ և ամենուրեք չէ, որ անհրաժեշտ պահանջկոտություն է ցուցաբերվում կադրերի ընտրության նկատմամբ: Հաճախ պատասխանատու աշխատանքի են առաջ քաշվում թույլ, նախաձեռնությունից զուրկ, իսկ երբեմն էլ իրենց վարկաբեկած մարդիկ: Այդ տեսակետից բնորոշ է, որ շրջանի 18 կոլտնտեսությունների նախագահներից 8-ը նախկինում աշխատանքից հանվածներ կամ ազատվածներ են, գյուղսովետի նախագահներից 6-ը ունեն ոչ լրիվ միջնակարգ կրթություն: Թույլ է պահանջկոտությունը ղեկավար աշխատողների նկատմամբ, անհրաժեշտ աշխատանքներ չեն տարվում նոր կադրերի ուժերով պատրաստելու և աճեցնելու համար, բավարարվում են աշխատողների մի փոքրիկ խմբով, աշխատանքում տապալվածներին մի տեղից մյուսը փոխադրելով:

Կենտկոմի բյուրոյի որոշման մեջ ընդգծված է, որ Աշտարակի կուսշրջկոմը թույլ է զբաղվում սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմամբ: Շատ սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական և գաղափարական աշխատանքի մակարդակը չի բավարարում ժամանակակից պահանջները: Օրինակ, Աշտարակի սովխոզի, Օհանավանի, Ագարակի, Կարբի կոլտնտեսությունների և այլ կուսակցական կազմակերպություններ աշխատում են առանց պլանի, հազվագյուտ են հրավիրվում բյուրոյի նիստեր ու կուսժողովներ: Կուսժողովներում հաճախ քննարկվում են գլխավորապես անցյան տնտեսական հարցեր, վատ է ապահովվում կոմունիստների ավանգարդային դերը արտադրության մեջ: Գյուղատնտեսության մեջ աշխատող 1016 կոմունիստից միայն 13 հոգի են շարքային անասնապահներ, իսկ 11 կոլտնտեսային անասնաբուծական ֆերմաներում ոչ մի կոմունիստ չի աշխատում: Առանձին կոմունիստներ վատ են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները, իսկ երբեմն էլ, նույնիսկ, մասնակից են դառնում ժողովրդական ունեցվածքի հափշտակումներին:

Լուրջ թերություններ են բացահայտված գաղափարական աշխատանքի ղեկավարման գործում: Որոշ կուսկազմակերպություններում քաղուսուցման դպրոցները ձևական բնույթ են կրում, պարապմունքներն անցնում են ցածր մակարդակով: Մի շարք բնակավայրերում քաղաքական թեմաների շուրջ հազվագյուտ են կազմակերպվում դասախոսություններ և զեկուցումներ, վատ է կազմակերպված դիտողական ագիտացիան, քիչ են ցուցադրվում կինոնկարներ, անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծված կուլտուր-լուսավորական լայն աշխատանք ծավալելու համար:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությամբ անբավարար

են զբաղվում արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները: Վատ է կազմակերպված առևտուրը, շատ օբյեկտներ չեն կատարում ապրանքաշրջանառության պլանը, թույլ են տրվում վատնումներ և հափշտակումներ: Բարելավում է պահանջում նաև կենցաղ-սպասարկման գործը. շատ գյուղերում մինչև հիմա կենցաղ-սպասարկման օբյեկտներ չկան:

Աշտարակի կուսշրջկոմն վատ է ղեկավարում և ուղղություն տալիս նաև վարչա-կառավարչական օրգանների (միլիցիայի, դատախազության, դատարանի) գործունեությանը. դեռևս մեծ է հանցագործությունների թիվը (առանձնապես անչափահասների շրջանում), պրոֆիլակտիկ աշխատանքներ չեն տարվում դրանց կանխման և ընդհանրապես սոցիալիստական օրինականության ամրապնդման համար:

Աշտարակի կուսշրջկոմի աշխատանքում նշված թերությունները,— ասված է Կենտկոմի որոշման մեջ,— արդյունք են այն բանի, որ շրջկոմը քննադատաբար չի գնահատում իր գործունեության արդյունքները, խորապես չի թափանցում յուրաքանչյուր տնտեսության գործերի վիճակի մեջ, տնտեսական ղեկավարների, կուսակցական կազմակերպությունների ջանքերը անբավարար է ուղղում գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բստ ամենայնի բարձրացմանը:

Կենտկոմի բյուրոն Աշտարակի կուսշրջկոմի՝ գյուղատնտեսական արտադրության ղեկավարությունը գնահատեց անբավարար և նրան պարտավորեցրեց մշակել ու իրականացնել պրակտիկ միջոցառումներ՝ շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական օրգանների, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքում սույն որոշմամբ բացահայտված թերությունները վերացնելու համար:

Կենտկոմի բյուրոյի որոշման մեջ նշված է, որ կուսակցական կազմակերպությունների հիմնական խնդիրն է՝ մոբիլիզացնել կոմունիստների և աշխատավորների ուժերը ՍՄԿԿ XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի կայացած պլենումների որոշումների կատարման համար, ապահովել գյուղատնտեսական արտադրության բարձր ու հաստատուն տեմպերով աճը բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Անհրաժեշտ է գյուղատնտեսության աշխատողների շրջանում սոցիալիստական լայն մրցություն ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակն արժանավայել դիմավորելու համար և ապահովել դաշտավարության, անասնաբուծության մթերքների արտադրության ու պետական վաճառքի ավելացման վերաբերյալ ստանձնած պարտավորությունների հաջող կատարումը:

Աշտարակի կուսշրջկոմին (առաջին քարտուղար՝ Ս. Մուրադյան), Աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի գործկոմին (նախագահ՝ Մ. Մովսիսյան), գյուղատնտեսության արտադրական վարչությանը (պետ՝ Ս. Ցաքոյան) պարտավորեցրել է կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսական օրգանների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների, գյուղատնտեսության բոլոր մասնագետների և աշխատողների ուշադրությունը կենտրոնացնել արտադրության կոմպլեքսային մեքենայացման միջոցով, հողագործության և անասնաբուծության կուլտուրայի բերքատվության բարձրացման ծրագրի իրականացման վրա, հասնել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը: Հատուկ ուշադրություն դարձնել խաղողի, պտուղների արտադրության ավելացման, հանրային անասնաբուծության մթերատվության բարձրացման, նրա կերային բազայի ամրապնդման հարցերին:

Մշակել և իրականացնել շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարության արմատական բարելավմանն ուղղված ներգործուն միջոցներ, խորամուխ լինել յուրաքանչյուր տնտեսության էկոնոմիկայում, հենվելով հանրապետության լավագույն տնտեսությունների փորձի վրա, համառորեն իրականացնել արտադրության մասնագիտացում, աշխատանքի գիտական կազմակերպում, հմտորեն կիրառել կոլտնտեսությունների և սովխոզների բանվորների բարոյական և նյութական խրախուսման բազմապիսի ձևեր, բարձրացնել տնտեսության բոլոր ճյուղերի շահավետությունը:

ՀԿԿ Աշտարակի շրջկոմին հանձնարարված է կատարելագործել իր աշխատանքի ոճն ու մեթոդները, բարձրացնել շրջկոմի և նրա բյուրոյի՝ որպես կոլեկտիվ ղեկավարության օրգանների դերը, լայն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բարելավել վերահսկողության և կատարման ստուգման դրվածքը: Հատուկ ուշադրություն դարձնել կադրերի ընտրությանն ու դաստիարակությանը, բարելավել բրիգադավարների և ֆերմայի վարիչների որակական կազմը, բարձրացնել նրանց արտադրական որակավորումը, ուժեղացնել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, բարձրացնել կուսակցական ժողովների դաստիարակչական դերը, կոմունիստների ակտիվությունը, նրանց պատասխանատվության զգացումը՝ հանձնարարված գործի համար: Պահանջկոտություն հանդես բերել կոմունիստների կողմից մարքս-լենինյան տեսության ուսումնասիրման գործի նկատմամբ, գործնական ղեկավարություն ցույց տալ պետական հիմնարկներին, հասարակական կազմակերպություններին, բարելավել դատական-դատախազական և միլիցիայի օրգանների գործունեությունը:



Ս. Մ. ԹԵՎԱՆՅԱՆ
ՀԿԿ Մեղրու շրջկոմի առաջին քարտուղար

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐԻ ՀԱՄԱՐ

*Դաժան է Մեղրու բնությունը։ Այստեղ հողագործին բաժին են ընկել երկնաքերձ-կնճռոտ լեռներ, անդնդախոր կիրճեր ու ձորեր։ Մեղվի պես ժրաջան մեղրեցիները միշտ աննկուն պայքարել են բնության ահեղ ուժերի դեմ, գոտեմարտել։ Աշխատասեր գյուղացին ձորալանջերի և լեռնալանջերի ժայռաբեկոր տեղանքներում աճեցրել է խաղողի, դեղձենու, թզենու, նշենու, խնձորենու, սերկևիլի, ընկուզենու և այլ պտղատու այգիներ, որոնք վճռական դեր են կատարում շրջանի էկոնոմիկայում։ Բայց դա չի խանգարել մեղրեցուն զբաղվելու նաև անասնաբուծությամբ, որն, իր հերթին, նպաստում է այգեպտղաբուծության զարգացմանը։ Չէ՛ որ առանց օրգանական պարարտանյութերի աներևակայելի է գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքի ստացումը։ Այսպիսով, բազմաճյուղ տնտեսություն վարելը շրջանում դարձել է անհրաժեշտություն՝ կենսական խնդիր։*

*Գնալով ավելի է մեծանում անասնաբուծության դերը շրջանի հանրային արտադրության մեջ. մեծ աշխատանք է տարվում անասունների ցեղային կազմի բարելավման և մթերատվության բարձրացման համար։ 1968 թ. Մեղրու շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների եկամտի 39 տոկոսն ստացվել է անասնաբուծությունից։ Վերջին 2—3 տարիների ընթացքում շրջանը որոշ հաջողություններ է ձեռք բերել անասունների գլխաքանակի ավելացման, անասնաբուծական մթերքների, մասնավորապես, կաթի արտադրության ավելացման գործում։ Կովերի գլխաքանակը 1968 թ., 1964 թ. համեմատությամբ, ավելացել է 35, կաթի համախառն արտադրանքը՝ 38 տոկոսով։ Շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով պահում են 50 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 16 կով, 200 գլուխ մանր եղջերավոր անասուն, արտադրում միս՝ 55, կաթ՝ 175, բուրդ՝ 49 ցենտներ։*

*Մեկ տասնամյակ առաջ յուրաքանչյուր ֆուրաժային կովից, միջին հաշվով, ստացվում էր 550—600 կգ կաթ և շատերը կարծում էին, թե Մեղրու կովերը դրանից ավելի կաթ չեն կարող տալ։ Սակայն պարզվեց, որ անասունների խնամքը լավ կազմակերպելու դեպքում կովի կաթնատվությունը կարելի*



*է ավելացնել առնվազն 2—2,5 անգամ։ Ուստի, հարկավոր էր ամրապնդել հանրային անասնապահության կերային բազան, ընդարձակել եգիպտացորենի ցանքը, կովերի կերաբաժնում ավելացնել սիլոսի տեսակարար կշիռը։ Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները աշխատավորների հետ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով նրանց ստեղծագործական ուժերը մոբիլիզացրին գոյություն ունեցող ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու, անասնաբուծության մթերքների արտադրությունն ավելացնելու համար։*

*Շատ կոլտնտեսականներ գործուղվեցին հանրապետության տարբեր շրջանները՝ առաջավոր տնտեսությունների փորձն ուսումնասիրելու համար։ Արթիկից, Անիից, Գորիսից ու Սիսիանից ձեռք բերվեց կորնգանի անհրաժեշտ սերմացու. շրջանի անջրդի վարելահողի 80 տոկոսը հատկացվեց կորնգանի մշակությանը, իսկ ոռոգվող հողերում զգալի չափով ավելացավ առվույտի և եգիպտացորենի ցանքը։*

*Տարեցտարի հաջողությամբ կատարվում և գերակատարվում են պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառման առաջադրանքները. տնտեսությունները դրամական մեծ եկամուտներ են ստանում անասնաբուծությունից։ Անասնաբուծության զարգացման վկայությունն են ընթացիկ տարվա անցած ամիսների ցուցանիշները։ Մայիսի 1-ի տվյալներով մսի վաճառքի կիսամյակի պլանը կատարված է 95, կաթինը՝ 64 տոկոսով։ Արդեն ավարտված է ոչխարների ծինը. յուրաքանչյուր հարյուր մայր ոչխարից ստացվել և պահպանվում է 85 գառ։*

*Անասունների մթերատվության բարձրացման նպատակով կոլտնտեսություններն ու սովխոզները հաճախ վերանայում են իրենց արտադրական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, ընդարձակում բազմամյա խոտաբույսերի և եգիպտացորենի ցանքերը։*

*Կուսակցական կազմակերպությունները միաժամանակ ջանում են անասնապահների մրցությունն ավելի արդյունավետ դարձնել։ Սոցմրցման պայմանագրեր են կնքված բոլոր անասնապահների, անասնապահական բրիգադաների, ֆերմաների ու կոլտնտեսությունների միջև։ Շրջանը տրադիցիոն սոցիալիստական մրցության մեջ է եղբայրական Ադրբեջանական ՍՍՀ Օրդուբադի շրջանի հետ։*

*Կուսշրջկոմի բյուրոն ու շրջսովետի գործկոմը փոխանցիկ դրոշ և դրամական մրցանակ են սահմանել անասնաբուծական առաջավոր կոլտնտեսության ու սովխոզի համար։ Կազմվել է շրջանային հանձնաժողով, որը եռամսյակը մեկ անգամ, ամփոփելով մրցության արդյունքները, փոխանցիկ դրոշն ու 200 ռուբլի դրամական պարգևը հանձնում է հաղթող տնտեսությանը, իսկ տարեկան բարձր ցուցանիշների համար փոխանցիկ դրոշի հետ միասին տրվում է 300 ռուբլի դրամական մրցանակ՝ առաջավոր անասնապահներին պարգևատրելու։ Կուսկազմակերպությունները մրցության արդյունքներն ագիտատորների, պատի թերթերի և թերթիկների միջոցով մասսայականացնում են գյուղական աշխատավորության լայն զանգվածների շրջանում։*

*1968 թ. Կարճևանի սովխոզի անասնապահները համառ պայքար ծավալեցին շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը նվաճելու համար։ Նրանց հայրենանվեր աշխատանքը պսակվեց հաղթանակով։ Սովխոզի բանվոր-ծառայողների ժողովում (այս տարվա հունվարին), որտեղ կարճևանցի-*

ներին հանձնվեց փոխանցիկ դրոշն ու դրամական մրցանակը, անասնապահները հանդես եկան նոր առաջարկություններով։ Նրանք պարտավորվեցին կաթի արտադրության տարեկան պլանը կատարել երկու ամիս շուտ, անկորուստ անցկացնել անասունների ձմեռման ու ծնի կամպանիան, յուրաքանչյուր ոչխարից ստանալ մեկական գառ, առաջին եռամսյակում զգալիորեն ավելացնել մսի և կաթի արտադրությունը, անասնաբուծական մթերքների պետական վաճառքի պլանները կատարել մարտի 15-ին։

Կարճևանի սովխոզի անասնապահների օրինակին են հետևում մյուս կոլտնտեսություններն ու սովխոզները։ Կարճևանցիները մարտի 1-ին, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, 11—15 տոկոսով ավելացրել են կաթի և մսի արտադրությունը՝ առաջին եռամսյակի պետական պլանները կատարելով, համապատասխանաբար՝ 124—189 տոկոսով. անկորուստ ավարտվել է ոչխարների ծինը։

Կուսկազմակերպությունները և տնտեսությունների ադմինիստրացիան լուրջ ուշադրություն են նվիրում հանրային արտադրության զարգացման գործում անասնապահների նյութական շահագրգռվածության բարձրացմանը։

Այժմ արդեն մեր շրջանում մեկ ոչխարի բրդատվությունը գրեթե կրկնապատկվել է և հնարավորություն ունենք հորթերից աճեցնել միայն բարձրակիթ կովեր, զգալի չափով ավելացել է ինչպես կովերի, այնպես էլ մսացու անասունների կենդանի քաշը։

Անասնաբուծության վերելքի ասպարեզում կուսակցության և կառավարության առաջադրած խնդիրների լուծման գործում վճռական դեր են կատարում ֆերմաների կուսակցական խմբերը։ Վերջին ժամանակներս ֆերմաները մշտական աշխատանքի են ուղարկվել զգալի թվով կոմունիստներ, որոնցից 30-ը ֆերմայի վարիչներ են։ Կոմունիստների թվի ավելացման շնորհիվ մի շարք անասնապահական ֆերմաներում ստեղծվեցին կուսակցական խմբեր։ Ներկայումս շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների ֆերմաներում կան 16 կուսխմբեր։ Դրանք նկատում են յուրաքանչյուրի արժանիքներն ու բացերը, կազմակերպում աշխատանքը, օգնում առաջավոր փորձի արմատավորմանը, բացահայտում եղած թերությունները և կոնկրետ միջոցներ ձեռնարկում դրանց վերացման համար։

Լիճքի կաթնաանասնապահական սովխոզի կովաբուծական ֆերմայի կուսխմբի նախաձեռնությամբ սովխոզի դիրեկցիան և կուսկազմակերպությունը վերջին տարիներին կերի բազան ամրապնդելու համար իրականացրին մի շարք միջոցառումներ։ Այսպես, 1967—1968 թթ. սովխոզը տարիներ շարունակ անմշակ թողած հողերում ցանեց 226 հեկտար բազմամյա խոտաբույսեր և կերային այլ կուլտուրաներ, այդ թվում՝ 40 հեկտար եգիպտացորեն, բնական խոտհարքների տարածությունները պարարտացվեցին, կազմակերպվեց ոռոգումը։

Կուսակցական խումբն անասնապահների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանք է ծավալում մրցությամբ ստանձնած պարտավորությունները ժամկետից շուտ և անթերի կատարելու համար, պարբերաբար ստուգում կատարման ընթացքը։ Արոտային շրջանում կուսխմբի նախաձեռնությամբ կազմակերպվեց կթվող կովերի գիշերային արոտ և այլն։

Անասնապահների քաղաքական և աշխատանքային ակտիվության բարձրացման շնորհիվ, Լիճքի սովխոզը 1968 թ. կաթի արտադրության պլանը գերակատարեց 23 տոննայով. նախորդ տարվա համեմատությամբ, կաթի ար-



տադրությունն ավելացավ 40 տոննայով։ Սովխոզի անասնապահները 1968 թ. երկրորդ և երրորդ եռամսյակներում իրենց ձեռքին պահեցին շրջկոմի և շրջսովետի փոխանցիկ դրոշը և ստացան 400 ռուբլի դրամական մրցանակ։

Լավ է աշխատում նաև շրջկենտրոնի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի կուսակցական խումբը։ Նրա նախաձեռնությամբ կոնկրետ գործ ձեռնարկվեց ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացման, լուսավոր ու հարմարավետ անասնաշենքեր կառուցելու համար։ Կովանոցներում տեղադրվեցին ջրի տաքացման, գոմաղբի փոխադրման սարքեր, ջրախողովակներ։ 1968 թ. անցան խրամատային եղանակով եգիպտացորենի սիլոսի պահպանմանը։

Ծովի մակերևույթից 2700 մետր բարձրության վրա գտնվող Գյոլչիկ ամառային արոտավայրի դաշտային, նախալեռնային ու լեռնային գոտիներում կառուցվեցին տիպային ոչխարանոցներ։ Այս ամենը հնարավորություն ընձեռեց կոլտնտեսությանը հանրային հոտն անբարենպաստ եղանակներին փոխադրել համապատասխան շենքեր, խելացի կազմակերպել նրանց խնամքն ու կերակրումը, նվազագույնի հասցնել անկումներն ու կորուստները, բարձրացնել մթերատվությունը։ Զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև Նյուվադու, Շվանիձորի, Ալդարայի և Վարդանիձորի կոլտնտեսությունների ֆերմաների կուսխմբերը, որոնց առաջարկությամբ անցած երկու տարում կառուցվել են ավելի քան 30 կովանոց և ոչխարանոց, բարեկարգվել է 200 կմ լեռնային ճանապարհ, որի շնորհիվ մթերքները տեղափոխում են առավելապես ավտոմեքենաներով։

Սակայն ամենուր չէ, որ կուսակցական խմբերը և սկզբնական կուսկազմակերպությունները պատշաճ ուշադրություն են նվիրում անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացմանը։ Դեռևս կան կոլտնտեսային ֆերմաներ, որոնք սարքավորված չեն, չկան ջրի տաքացման սարքեր, պատշաճ ջանքեր չեն գործադրվում կովերի կաթնատվությունը բարձրացնելու և կթվորների աշխատանքը հեշտացնելու համար։

Շրջկոմին դեռևս չի հաջողվել բոլոր կուսկազմակերպություններն ու կուսխմբերը դարձնել անասնաբուծության մթերատվության բարձրացման համար մղվող պայքարի իսկական կազմակերպիչներ, սոցմրցության և անասնապահների աշխատանքի առաջավոր փորձի արմատավորման նախաձեռնողներ։

Վատ են աշխատում Լեհվազի սկզբնական կուսկազմակերպությունն ու ֆերմայի կուսակցական խումբը։ Այստեղ քիչ ուշադրություն է նվիրվում անասնապահների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքին, ցավոտ հարցերի շուրջ խորհրդակցելու համար կոմունիստների և անասնապահների հավաքներ չեն հրավիրվում։ Կուսկազմակերպության տեսադաշտից դուրս են մնացել անասունների խնամքի և ցեղի բարելավման, մատղաշների հատուկ խնամքի կազմակերպման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, հանրային ունեցվածքի պաշտպանության հրատապ հարցերը։

Կուսկազմակերպությունը գրեթե չի զբաղվում առաջավոր փորձի ընդհանրացման և արմատավորման հարցով. կոլտնտեսությունում երբեմն թույլ են տրվում չարաշահումներ, արհեստական խոչընդոտներ ստեղծում գործարար մրցության կազմակերպման գործում։ Այսպես, 1968 թ. առաջին եռամսյակում Լեհվազի կոլտնտեսության անասնապահները, հաջողությամբ կազմակերպելով անասունների ձմեռումն ու ծնի կամպանիան, նվաճեցին կուս-

շրջկոմի և շրջսովետի փոխանցիկ դրոշն ու ստացան 200 ռուբլի դրամական մրցանակ։ Սակայն, ինչպես բացահայտվեց արտելի հերթական հաշվետու-ընտրական ժողովում, կոլտնտեսության ղեկավարությունը ստացած գումարն առաջավոր անասնապահներին պարգևատրելու փոխարեն, մտցրել է ընդհանուր դրամական եկամտի մեջ և ապա ընդհանուր հիմունքներով բաշխել բոլոր կոլտնտեսականներին՝ նրանց վաստակած աշխօրի արժեքը բարձրացնելու նպատակով։ Այս արտառոց վերաբերմունքը թուլացրել է անասնապահների աշխատանքային ակտիվությունը։ Պատահական չէ, որ հետագա եռամյակներում ֆերման այլևս հաջողություն չունեցավ, իսկ որոշ անասնապահներ հեռացան աշխատանքից։ Կուսշրջկոմի միջամտությամբ շտկվեց դրությունը, դրամով պարգևատրվեցին առաջավոր անասնապահները, կոլտնտեսության վարչության նախագահն ու կուսակցական կազմակերպության քարտուղարն ազատվեցին իրենց պաշտոններից։

Դժբախտաբար, նման փաստեր տեղի են ունենում նաև այլ կոլտնտեսություններում, որոնց ղեկավարները, թերագնահատելով նյութական շահագրգռվածության սկզբունքի խելացի կիրառման նշանակությունը, զանազան պատճառներով առաջավոր անասնապահներին զրկում են պարգև-հավելումներ ստանալու իրավունքից, չմտածելով, որ այդպիսով նրանք արգելակում են հանրային անասնաբուծության հետագա վերելքը։

Որոշ կոլտնտեսային ֆերմաների նախիրի կառուցվածքը չի համապատասխանում ներկայացվող պահանջներին. ցածր է կովերի տոկոսը։ Իսկ դա բացասաբար է անդրադառնում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման և դրանց ինքնարժեքի վրա։ Շրջկոմը և կուսկազմակերպությունները ջանք չեն խնայում մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը հանրային նախիրում կովերի գլխաքանակը հասցնել 40, իսկ ոչխարների հոտում մաքիների գլխաքանակը՝ 70 տոկոսի։

Մեր շրջանի պայմաններում կովերից ավելի շատ կաթ է ստացվում մսուրային շրջանում։ Ամառվա ուժեղ շոգերի հետևանքով ժամանակից շուտ թոշնում և չորանում է կանաչ խոտը, արոտավայրերը չորանում են։ Հաշվի առնելով այս ամենը, ջանում ենք կովերի բեղմնավորման գործը կազմակերպել այնպես, որ դրանց մասսայական ծինը սկսվի հաշվետու տարվա նոյեմբերին և հիմնականում ավարտվի հաջորդ տարվա փետրվարի սկզբին։ Այս տեսակետից գործը լավ է կազմակերպված Վարդանիձորի Լենինի անվան լեռնային կոլտնտեսությունում, որտեղ յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվում է շրջանում ամենաշատ կաթը՝ 1490 կիլոգրամ։

Մենք ձգտում ենք այն բանին, որ շրջանի կոլտնտեսությունները կովերի բեղմնավորումը կազմակերպելու գործում հետևեն վարդանիձորցիների օրինակին։ Թեպետ կաթի արտադրության նրանց ցուցանիշը ևս վերջնական սահման չէ։

Եթե բոլոր տնտեսություններին հաջողվի հիմնովին ամրապնդել կերային բազան, յուրաքանչյուր կովի համար տարեկան պատրաստել 4—5 տոննա սիլոս և կազմակերպվի ցեղային էգ մատղաշների առանձնահատուկ խնամքը, ապա հնարավոր կդառնա շրջանում ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 1800—2000 կգ։ Դրան հասնելու հեռանկար ունենք։ Այսօրվա տվյալներով շրջանի տնտեսություններում մոտ 500 հեկտար հողատարածություն չի օգտագործվում։ Եթե գյուղատնտեսության մինիստրությունն օգնի մեզ սերմացու ձեռք բերելու գործում, ապա մենք այդ հողերում կարող ենք



ցանել կորնգան և ստանալ մեծ քանակությամբ լրացուցիչ կեր (յուրաքանչյուր կովին՝ 1 տոննայի հաշվով), և հողը փրկել էռոզիայից։

Հաճախ տնտեսությունների ղեկավարները ջրովի հողերում եգիպտացորենի և առվույտի փոխարեն ցանում են կորնգան, որն ավելի ցածրարժեք կերակուլտուրա է։ Պարզ է, որ դրանով չի ամրապնդվում տնտեսության կերային բազան։ Ուստի, լավ կլինի հրաժարվել այդ բանից։

Մեր բոլոր տնտեսությունները չէ, որ լուրջ ուշադրություն են նվիրում եգիպտացորենի ցանքին ու մշակությանը։ Մինչդեռ շրջանում կան բոլոր հնարավորությունները 50 տոկոսով ավելացնելու եգիպտացորենի ցանքատարածությունները։ Ինչպես ցույց է տալիս Լիճքի և Վարդանիձորի կոլտնտեսությունների առաջավոր դաշտավարների փորձը, բավարար խնամքի ու մշակության դեպքում յուրաքանչյուր հեկտարից կարելի է ստանալ 600—800 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա, անցյալ տարվա շրջանի միջին 236 ցենտների փոխարեն։ Այդ դեպքում տնտեսությունները հնարավորություն կունենան պատրաստելու 10—11 հազար տոննա եգիպտացորենի սիլոս (յուրաքանչյուր կովին 6—7 տոննայի հաշվով) և մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 1800—2000 կգ։

Ահա այն հիմնական հարցերը, որոնք զբաղեցնում են շրջկոմին, սկզբնական կուսկազմակերպություններին, բոլոր կոմունիստներին։

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումի որոշումներով, շրջանային կուսկազմակերպությունը, ինչպես միշտ, աշխատավորության ուժերը նպատակամղում է անասնաբուծության զարգացման բնագավառի հասունացած խնդիրների հաջող լուծմանը։

Ծավալելով սոցիալիստական մրցությունը Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի պատվին, մեր շրջանի կոմունիստները և բոլոր աշխատավորները նոր բնագծեր կնվաճեն հանրային անասնաբուծության զարգացման բնագավառում։



## ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻՆ՝ ԱՐԺԱՆԻ ՀԱՄԱԼՐՈՒՄ

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր քիմիական կոմբինատը մեր հանրապետության ինդուստրիայի հսկաներից է։ Այստեղ աշխատում են մի քանի հազար բանվորներ ու ինժեներատեխնիկական մասնագետներ։ Բազմամարդ կոլեկտիվի աշխատանքային գործունեությունը ղեկավարում է կոմբինատի կուսակցական կոմիտեն (քարտուղար՝ Ն. Քուրշյան), որին արդեն մեկ տարի է, ինչ տրված է շրջկոմի իրավունք՝ կոմունիստների հաշվառման, ընդունելության և անձնական գործերի լուծման համար։ Ներկայումս կոմբինատում աշխատում են կուսակցության 980 անդամ և 58 թեկնածու, որոնք միավորված են 33 սկզբնական կուսկազմակերպությունում։ Կոմունիստների 53 տոկոսը բանվորներ են, որոնք ինժեներատեխնիկական աշխատողների և ողջ կոլեկտիվի հետ միասին լարված պայքար են տանում ընթացիկ հնգամյակի առաջադրանքների կատարման համար։

Կոմբինատը 1968 թ. գերակատարեց արտադրանքի թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի իրացման պլանները, խնայելով մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, շոգեէներգիա, հումք և այլ նյութեր։

Քիմիագործներն աշխատանքային մեծ խանդավառությամբ թևակոխեցին հնգամյակի չորրորդ տարին։ Նրանք իրենց կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում ընդունել են 1969 թ. սոցիալիստական բարձր պարտավորություններ և միահամուռ որոշել արժանավայել դիմավորել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակը։

Ինչպես ամենուրեք, կոմբինատի կոլեկտիվում ևս կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման պրոցեսում մարդիկ հմտանում են, ձեռք բերում արտադրական նոր մասնագիտություններ, կատարելագործում իրենց աշխատանքային վարպետությունը, քաղաքականապես աճում են, գաղափարապես կոփվում։ Առաջավոր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները ձգտում են ամրապնդել իրենց կազմակերպական կապերը լենինյան կուսակցության հետ, ընդունվել ՍՄԿԿ շարքերը։

Հաշվի առնելով այս ամենը, կոմբինատի կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները սիստեմատիկ աշխատանք են տանում անհատական ընտրության միջոցով լավագույն մարդկանց ՍՄԿԿ շարքերն ընդունելու ուղղությամբ։ Վերջին չորս տարում ձեռնարկության կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու է ընդունել 187 մարդ, այդ թվում 133



բանվոր։ 1967 թ. կոմբինատի կուսկազմակերպությունը մասամբ թուլացրել էր ընդունելության գործը. նվազել էր ընդունվածների թիվը։ Այդ թերությունը քննադատվեց ՀԿԿ Երքաղկոմի հերթական պլենումում, որտեղ քննարկվում էր ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցը։ Դա օգնեց գործին։ 1968 թ. կոմբինատի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ շարքերն ընդունեց 55 հոգու, նրանցից 6 կին, 23 կոմերիտական, ըստ սոցիալական դրության՝ 40 բանվոր։ Նոր ընդունվածների մեջ տարրական կրթություն ունեցողներ չկան։ Այս ամենը վկայում է կուսշարքերի և՛ քանակական, և՛ որակական աճի մասին։

Զգալիորեն բարելավված է նաև ՍՄԿԿ անդամ ընդունելու գործը, որը կուսթեկնածուների հետ տարվող աշխատանքի աշխուժացման անմիջական արգասիքն է։ Վերջին 2 տարում կոմբինատի կուսկազմակերպությունները ՍՄԿԿ անդամ են ընդունել 98 մարդ, ժամկետանց թեկնածուներ գրեթե չկան։

Չնայած այս ամենին կուսակցական կազմակերպությունները և կուսկոմիտեն դեռևս լուրջ անելիքներ ունեն ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցում կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները մինչև վերջ կատարելու գործում։ Ամենից առաջ պետք է նշել, որ նոր ընդունվածների մեջ դեռևս ցածր է կանանց տոկոսը։ Կոմբինատի կոլեկտիվում կանայք կազմում են 28, իսկ կուսկազմակերպությունում՝ 9 տոկոս։ Պետք է առաջիկայում ևս ուշադրություն դարձնել առաջատար մասնագիտության բանվորներից առաջավորներին կուսակցության մեջ ներգրավելու վրա։ Մյուս թերությունն այն է, որ ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են նորմալ աճում, օգտագործում եղած ռեզերվներն ու հնարավորությունները։ Ընդունելության հարցով լավ են զբաղվում, օրինակ, 1—2, 1—11ա, 1—7, 1—10, 2—3, 2—8 արտադրամասերի, հսկիչ-չափիչ սարքերի, վարչության կուսկազմակերպությունները, որոնք կուսակցության շարքերն են ընդունել բազմաթիվ առաջավոր բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների։ Բայց նորմալ երևույթ չէ, երբ 1968 թ. կոմբինատի 33 սկզբնական կուսկազմակերպություններից 14-ը ընդունելություն չեն կատարել։ Դրանցից են 1—9, 1—11բ, 2—12, 2—1 և այլ արտադրամասերի կուսկազմակերպությունները, որոնց ղեկավարներն անբավարար են զբաղվում ընդունելության և երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերով։

Կուսակցության աճի բնագավառում կոնկրետ շատ բան կարող են անել արտադրամասերի կուսակցական խմբերը (կոմբինատում դրանց թիվը հասնում է 36-ի), որոնք ավելի մոտ են կանգնած աշխատավորական զանգվածներին, լավ են ճանաչում մարդկանց, յուրաքանչյուրի արժանիքները։ Բայց, ցավոք, կուսխմբերի մի մասը ևս թույլ է զբաղվում ներկուսակցական աշխատանքի այդ կարևոր հարցով։ Անցյալ տարի կուսկոմիտեն իր 33 նիստերից 17-ում քննարկել է ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործերը։ Ընդհանուր առմամբ ընդունելության մասին ստացվող դիմումները քննության են առնում առանց ձգձգումների։ Սակայն առանձին սկզբնական կուսկազմակերպություններում երբեմն ձգձգվում են ընդունելության գործերի քննարկումները, ճիշտ չեն ձևակերպվում փաստաթղթերը, նոր ընդունվողների հետ համակողմանի նախապատրաստական աշխատանք չեն տանում և այլն։

ՍՄԿԿ XXIII համագումարից հետո կոմբինատի կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպություններն զգալիորեն բարելավել են երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործը։ Կուսկոմիտեին կից ստեղծվել և

գործում են երիտասարդ կուսանդամների և անդամության թեկնածուների ուսուցման երկու դպրոց։ Առաջինում սովորում են 135 երիտասարդ կոմունիստ, որոնք ՍՄԿԿ անդամ են ընդունվել վերջին երեք տարում, իսկ երկրորդում՝ 40 թեկնածու։ Այդ դպրոցներում պարապմունքներն անցնում են կանոնավոր՝ ամիսը մեկ անգամ, նախօրոք հաստատված թեմատիկայով։ Դպրոցների հիմնական խնդիրն է՝ երիտասարդ կոմունիստներին և կուսթեկնածուներին ծանոթացնել ՍՄԿԿ ծրագրին և կանոնադրությանը, կուսակցական շինարարության հիմնական հարցերին, խորապես պարզաբանել կուսակցության և կառավարության ընթացիկ որոշումները և այլն։ Բացի դրանից, 108 երիտասարդ կոմունիստ սովորում են կուսակցական ուսուցման ցանցի տարբեր օղակներում, 72-ը՝ զանազան հանրակրթական դպրոցներում և մասնագիտական ուսումնական հաստատություններում։

Երիտասարդ կոմունիստների և կուսթեկնածուների դաստիարակության, նրանց գաղափարական կոփման ու պատասխանատվության բարձրացման լավագույն միջոց են կուսակցական հանձնարարությունները։ Կուսկազմակերպությունները լայնորեն օգտագործում են նաև այդ հնարավորությունը։ 137 հոգի ներգրավված են հասարակական աշխատանքում, 21-ը ղեկավար կոմերիտական աշխատանք են կատարում (ԼԿԵՄ կոմիտեների, բյուրոների քարտուղարներ, անդամներ) և այլն։

Երիտասարդ կոմունիստների հետ տարվող պրակտիկ աշխատանքները լավ հիմքերի վրա են դրված հատկապես 1—2, 1—11ա, 1—8 և այլ արտադրամասերի կուսկազմակերպություններում։ Օրինակ 1—2 արտադրամասի «Դ» հերթափոխության կուսակցական խմբի (կուսկազմակերպիչ՝ Կ. Մկրտչյան) բոլոր 7 կոմունիստներն ունեն հանձնարարություն և բարեխղճորեն կատարում են դրանք։ Նրանք առաջատար դեր են կատարում արտադրության մեջ, անհաշտ են թերությունների նկատմամբ։ Հերթափոխության ավելի տարեց, փորձված կարբիդագործները օգնում են երիտասարդներին՝ պրակտիկ աշխատանքում, ուղղում սխալները, սովորեցնում նրանց։ Այսպես, երիտասարդ կոմունիստներից մեկն ուզում էր ազատվել աշխատանքից։ Կուսկազմակերպիչ Կ. Մկրտչյանը, հին կոմունիստ, փորձված կարբիդագործ Խ. Նազարյանը զրուցեցին նրա հետ, պարզեցին պատճառը, խոստացան օգնել նրան։ Սխալը կանխվեց և երիտասարդ բանվորը մնաց ձեռնարկությունում։

Հերթափոխությունում իր բարեխիղճ աշխատանքով լավ անուն է վաստակել կարբիդագործ Վ. Պողոսյանը։ Կուսակցական խումբը օգնեց նրան կուսակցության շարքերն ընդունվելու համար։ Ընկերները չսխալվեցին։ Վ. Պողոսյանն արդարացրեց նրանց վստահությունը։ Որոշ ժամանակ անց բեռնաթափող բանվորից նա դարձավ կարբիդագործների բրիգադավար։ Այսպիսի օրինակներ շատ կան կոմբինատում։

Երիտասարդ կոմունիստների դաստիարակության, նրանց հետ տարվող աշխատանքում կան և թերություններ։ Բոլոր երիտասարդ կոմունիստները չէ, որ ընդգրկված են ուսուցման տարբեր օղակներում և ունեն հանձնարարություններ։ Առանձին կուսկազմակերպությունների քարտուղարներ և կուսկազմակերպիչներ մոռանում են երիտասարդ կոմունիստներին ստուգել աշխատանքում, հասարակական հանձնարարություն կատարելիս, իսկ երբեմն էլ անուշադրության են մատնում նրանց։ Բայց չէ՞ որ երիտասարդ կոմունիստների մի մասը անփորձ է, ավագ ընկերոջ խորհուրդների ու օգնության կարիք է զգում։



Դաստիարակչական աշխատանքը բարդ պրոցես է։ Նրանում մանրուքներ չկան։ Մինչդեռ առանձին կուսկազմակերպություններում հաճախ անուշադրության են մատնում այս կամ այն կոմունիստի ուշացումն ու բացակայումը ժողովներից, քաղպարապմունքներից, կուսանդամավճարի ժամանակին չմուծելը։ Իսկ հետո, երբ մարդը չի շտկում իր սխալները, կատարում լուրջ զանցանքներ, հարկ է լինում նրան ենթարկել պատասխանատվության։

Հասկանալի է, որ երիտասարդ կոմունիստների վատ արարքի համար պատասխանատու են նաև սկզբնական կուսկազմակերպությունները և նրանց ղեկավարողները։ Սկզբնական կուսկազմակերպություններում է, որ կոմունիստները համատեղ աշխատանքի պրոցեսում լավ ճանաչում են միմյանց, գիտեն մեկը մյուսի արժանիքներն ու թերությունները։ Ուստի, նպատակահարմար է, որ զանցանք կատարած կոմունիստների անձնական գործերը նախապես քննարկվեն սկզբնական կուսկազմակերպություններում, ապա՝ կուսակցական կոմիտեում։

Կոմունիստների դաստիարակության և նրանց ակտիվացման գործում մեծ նշանակություն ունեն նաև կուսակցական ժողովները, որոնք, որպես կանոն, հրավիրվում են ամիսը մեկ անգամ։ Սակայն, միշտ և բոլոր կազմակերպություններում չէ, որ կուսժողովները լավ են նախապատրաստվում և անցնում բարձր մակարդակով։ Մասամբ դրանով է բացատրվում այն, որ վարչության, 1—7, 1—11 արտադրամասերի կուսկազմակերպություններում երբեմն առանձին երիտասարդ կոմունիստներ բացակայում են ժողովներից, հանդես չեն գալիս, չեն մասնակցում հարցերի քննարկմանը և այլն։

Անցյալ տարի քիմկոմբինատի կուսկոմիտեն և շատ սկզբնական կուսկազմակերպություններ հատուկ քննարկման առարկա չեն դարձրել ՍՄԿԿ շարքերի ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի վիճակի հարցը։ Եթե այդպես արվեր՝ անշուշտ քիչ կլինեին թերությունները և ավելի լավ՝ արդյունքները։

Ն. Ա. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ
ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի հրահանգիչ



## ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԻ ԱՄԲԻՈՆ

# ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՄԵՐՁԱՎՈՐ ԶԻՆԱԿԻՑԸ

Մի ամբողջ տասնամյակ (1906—1916 թթ.), գրեթե առանց ընդհատումների, Թիֆլիսում լույս էր տեսնում հեղափոխական ուղղության երգիծական «Խաթաբալա» շաբաթաթերթը։ Այդ ուշագրավ պարբերականը քաղաքական երգիծանքի մարտական օրգան էր, որի ծնունդն ու ողջ գործունեությունը սերտորեն կապված էին ռուսական առաջին հեղափոխության փոթորկահույզ տարիների ու դարասկզբի՝ նշված տասնամյակում ծավալված հասարակական-քաղաքական շարժման, ցարիզմի դեմ մղվող համաժողովրդական պայքարի հրատապ հարցերի հետ։ Այդ տարիներին հեղափոխական սոցիալ-դեմոկրատները՝ բոլշևիկները, հասկանալի պատճառներով, չէին կարող իրենց երգիծական օրգանն ունենալ. ուստի, ավելի են ընդգծվում այդ շաբաթաթերթի դերն ու նշանակությունը հեղափոխական շարժման պատմության մեջ։ «Խաթաբալա»-ն, իր էջերում բարձրացրած հասարակական-քաղաքական կյանքի հուզող հարցերով, դրանք հեղափոխական դիրքերից դիտելու մեկնակետով, բոլշևիկյան մամուլի ամենամերձավոր զինակիցն էր, և շատ անգամ՝ նրա երգիծական հավելվածը։

«Խաթաբալա»-ն լույս էր տեսնում փոխարքայության կենտրոնում, և, բոլշևիկյան մամուլի օրինակով, տեղական կյանքի հրատապ ու հուզիչ հարցերի լուսաբանման հետ միասին լայնորեն արձագանքում էր երկրի քաղաքական կյանքի կարևորագույն իրադարձություններին, որի շնորհիվ երգիծաթերթի նյութերի զգալի մասն ունի ո՛չ միայն տեղական, այլև համառուսական նշանակություն։

Իր հիմնադրման առաջին օրերից շաբաթաթերթը լուսաբանել է միջազգային կյանքի կարևորագույն իրադարձությունները, ցասումով դատապարտել անգլիական, գերմանական ու ճապոնական իմպերիալիստական-էքսպանսիոնիստական քաղաքականությունն ու արևելյան բռնապետությունը և մեծագույն համակրանքով արձագանքել բալկանյան, ինչպես և Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին։

Դարասկզբի հայ մամուլի պատմության մեջ եզակի մի երևույթ էր «Խաթաբալա»-ն՝ հեղափոխական լեգալ մամուլի այդ օրգանը, որը ցարական գրաքննության ու ոստիկանական հալածանքների դաժան պայմաններում բնավ չէր զիջում իր դիրքերը, չէր մեղմում իր մերկացնող, ցասկոտ խոսքը։

Այն ժամանակվա համար զարմանալի լայն էր «Խաթաբալա»-ի տարածման ոլորտը, մեծ էր բաժանորդների թիվը. երգիծաթերթը տպագրվում էր 10.000 օրինակով, իսկ նրա առանձին համարները, ընթերցողների պահանջով, հաճախ վերատպագրվում էին երկուից երեք անգամ։ Ցարական ինքնակալության բիրտ ռեժիմի դեմ ցասումով լցված ժողովուրդը կարոտ էր ճշմարիտ ու սուր խոսքի։

«Խաթաբալա»-ն հիմնադրել և երգիծաթերթի հրատարակության ողջ ժամանակաշրջանում նրա խմբագիրն է եղել շնորհալի երգիծաբան, դեմոկրատական շարժման ձախ թևի ներկայացուցիչ Աստվածատուր Երիցյանը։ Երգիծաթերթի հիմնադրմանն ակտիվ մասնակցել և երկրորդ խմբագիրն է եղել արևելահայ տաղանդավոր երգիծաբան, հասարակական գործիչ ու ժուռնալիստ Աշոտ Աթանասյանը. նրա մասնակցությամբ էին մեծ չափով պայմանավորված «Խաթաբալա»-ի քաղաքական սուր բովանդակությունն ու լայն ժողովրդականությունը։

Հայ մշակույթի ականավոր գործիչներից երգիծաթերթում շատ հաճախ զետեղվել են անվանի նկարիչ Գ. Բաշինջաղյանի գործերը։ Ուսումնասիրություններից պարզվում է, որ Ավ. Իսահակյանը ևս այնտեղ տպագրել է որոշ բանաստեղծություններ. այսպես՝ հանրահայտ Շափաղ կուտասը...-ը *(1907, № 28)*, Անտուն հավքի պես... *(1907, № 27)*, Միշտ հաղթվողն է մեղավոր *(1907, № 32)*, և այլն։ Հովհ. Թումանյանի արձակ ֆելիետոններից տպագրվել են՝ Ջրօրհնեքի Երազ, կամ մի պտույտ հայկական դժոխքում *(1909, № № 2 և 4)*, Ահը մեծ է քանց մահը *(1909, № 5)*, Աշխարհիս բաները *(1909, № 7)* և այլն, նրանց երկերի ժողովածուներում մինչև օրս չզետեղված ստեղծագործություններ։ Իրենց երգիծական, հումորիստական ստեղծագործություններով «Խաթաբալա»-ին աշխատակցել են նաև Ղ. Աղայանը, Ատրպետը, ինչպես նաև հասարակական-գրական գործիչներ՝ Մ. Բագրատունին (Փալանդուզ Մկո), Գարեգին Լևոնյանը, Կ. Մելիք-Շահնազարյանը (Տրմբլաչի Խաչան), հայտնի դերասան-հումորիստ Արամ Վրույրը։

Գրաքննական, գրական, անձնական և այլ նկատառումներով «Խաթաբալա»-ի աշխատակիցներն ու հեղինակները մեծ մասամբ հանդես են եկել ծածկանուններով։ Ամենայն հավանականությամբ դրա պատճառն այն էր, որ անկախ նրանից թե ինչ է տպագրել հեղինակը, հենց միայն ցարական գրաքննության մշտական հսկողության տակ գտնվող հեղափոխական երգիծաթերթի հետ որևէ առնչություն ունենալը կարող էր առիթ ծառայել նրանց նկատմամբ կասկածանքների, հալածանքի, ինչպես նաև գաղափարական հակառակորդների, մանավանդ մշակական-կադետական ու ազգայնական գործիչների, հարձակումների։ Առաջադեմ-դեմոկրատական տարրերի դեմ մղած իրենց պայքարում վերջիններս լայնորեն օգտագործում էին ո՛չ միայն բանադրանքն ու լուտանքը, այլև անձնական սպառնալիքները, մինչև իսկ՝ տեռորը։ Ժամանակի հայ բուրժուական և ազգայնական մամուլում նման բաների հաճախ կարելի է հանդիպել. հանրահայտ փաստ է, որ Անդրկովկասի ցարական իշխանությունները բազմիցս տուգանել են «Խաթաբալա»-ի հրատարակչին և սպառնացել փակել պարբերականի հրատարակությունը։

Երգիծաթերթի աշխատակիցների ու հեղինակների ծածկանունները հաճախ կոմիկական բովանդակություն ունեին։ Իսկ նրա հեղափոխական նկարիչներն ստեղծում էին սրամիտ ու տարօրինակ ծածկանուններ ու գաղտնագրեր, որոնք երբեմն դժվարընթեռնելի պայմանական նշաններ, հիերոգլիֆներ էին։ «Խաթաբալա»-ում տեղ գտած ծածկանունների ու գաղտնագրերի թիվը հարյուրների է հասնում, և այժմ՝ տասնամյակներ անց, անհնար է պարզել, թե ովքեր են թաքնված, օրինակ, այնպիսի ծածկանունների տակ, ինչպես՝ Կըլլան Հակոբ, Արգոսիկ, Գրագետ Բաբուր, Պոնժուրին Մելքոն, Պոլետիկոս, Ռեպորտյոր, Ապտակունի, Շուինդ, Շատել-Արաբ, Միլիոներ, Խենթ, Սերվանտես և այլն։ Մեր վերծանած ծածկանուններից հասարակական-գրական առումով հետաքրքրական են՝ Գասպար Կալատուզյանց և Բիոգրաֆ—Աստվածատուր Երիցյան, Սալ-ման, Ես չեմ, Ստորա-կետ և Խաթաբալիստ Տերտեր—Աշոտ Աթանասյան, Նաղըշքար Գիզոլ—Գևորգ Բաշինջաղյան, Ջենով Օհան—Հովհ. Թումանյան, Avis—Ավ. Իսահակյան և այլն։

Երգիծաթերթում տպագրված նյութերի գերակշռող մասը ցարական միապետությունը ներկայացնում է որպես ոստիկանական բռնակալական մի զազրելի իշխանություն, որի ճիրաններում հեծում են երկրի բազմազգ ժողովուրդները, իսկ Ռուսաստանի աշխատավորը ոչ թե երկրի քաղաքացին է բառիս բուն իմաստով, այլ՝ իրավազուրկ ստրուկը։ Այդ է արտահայտում 1906 թ. № 2-ում տպագրված Աշխարհագրություն դիպուկ ու սրամիտ ֆելիետոնը, ուր ժողովրդի քաղաքական իրավազրկության հետ մեկտեղ բացահայտված են երկրում տիրող հասարակական անարդարություններն ու աշխատավորների նյութական-տնտեսական ծանր կացությունը։

Հայտնի է, որ դեռևս 1906 թ. ամռանը ռեակցիան կատաղի հարձակման էր անցել հեղափոխական ուժերի դեմ։ Այդ ծանր օրերին բոլշևիկյան «Կայծ», իսկ այնուհետև «Նոր խոսք» թերթերը հեղափոխական կրքոտությամբ մեկացնում ու մտրակում էին Ստոլիպինի կառավարության դավադիր քայլերը, հեղափոխական ժողովրդի եռանդը ջլատելու նրա բոլոր ջանքերը։

Հեղափոխական ուժերի և նրա մամուլի օգնականն էր «Խաթաբալա»-ն. դիպուկ միջոցներով նա մերկացնում էր ջարդարարների կառավարությունը, երկրում մոլեգնող զինվորական դիկտատուրան ու ռազմադաշտային դատարանները։ Այդ նպատակով նա օգտագործում էր հեգնանքն ու ծաղրական արտահայտությունները, մեկ և մի քանի գործողություններով թվաբանական խնդիրներ, հարց ու պատասխաններ, երգիծական բանաստեղծություններ և, վերջապես, ծաղրանկարներ ու գրաֆիկական այլ միջոցներ։

Երկրում ստեղծված իրադրությունը «Խաթաբալա»-ն իրավամբ գնահատում էր իբրև պատերազմական դրություն և հարցնում. Ի՞նչ տարբերություն կա պատերազմի և պատերազմական դրության միջև, ապա պատասխանում. «Պատերազմում գիտես, որ կարող ես հաղթել կամ սպանվել, իսկ պատերազմական դրության ժամանակ՝ միայն սպանվել» *(1906 թ., № 2, էջ 15)*։ Նախկին գեներալ-գուբերնատոր-ում կարդում ենք. գեներալ-գուբերնատորը «Կարող է մի ամսում մի քանի տասնյակ գյուղեր քանդել և հազարավոր անմեղ մարդիկ կոտորել. հայտնի պրոգրոմշչիկ. ռումբերից ապահովված. առաջարկում է իրեն Ռուսաստանի մի որևէ նահանգի համար։ Հասցեն բոլորին հայտնի է» (նույն տեղը)։

Հեղափոխականների դեմ ռեակցիայի գործադրած սանձարձակ տեռորն է արտացոլված երգիծաթերթի՝ պարզ ու մատչելի թվաբանական խնդիրներում։ «Խաթաբալա»-ն ընթերցողներին

առաջարկում էր լուծել նման խնդիրներ, № 211. Ռուսաստանում կա 89 նահանգ, 481 գավառ, իմանալ՝ քանի՞ պուլեմյոտ է հարկավոր Ռուսաստանը հանգստացնելու համար, եթե ամեն մի գավառում կան 2001 հեղափոխական, 320 հրեա և 16 ներքին թշնամի, երբ հայտնի է, որ մի պուլեմյոտը մի րոպեում կարող է սպանել 15 հեղափոխական, 2 հրեա և 3 ներքին թշնամի։

№ 991. Ե՞րբ կվերջանան Ռուսաստանում գաղտնի ոստիկանները, երբ գիտենք, որ մի տարում սպանված են 365 հոգի և վիրավորված են 174, իսկ դրանց տեղը ոչ ոք չի ուզում բռնել։

№ 992. Քանի՞ սիշշիկներ կան պահված Պետական դումայում, եթե հայտնի է, որ պատերի ամեն մի սաժենը տեղավորում է 4 հոգի, իսկ սյուներից յուրաքանչյուրը՝ 3 հոգի։

№ 1012. Ե՞րբ կվերջանա պատերազմական դրությունը, եթե ամեն մի գավառում կա մի գեներալ-գուբերնատոր, որ ստանում է ամիսը 460 ռուբլի ռոճիկ և մանր ծախսերի համար 800 ռուբլի» (1906 թ. № 3, էջ 23)։

Ցարական բյուրոկրատիան, օրեցօր ավելի ու ավելի մոլեգնող ռեակցիան էին խարազանում ծաղրանկարներն ու գրաֆիկական այլ միջոցներ։ Հաջողված երգիծանկարներ են ցարի ու նրա սատրապների, ժողովրդի կեղեքիչների և նրա այլ թշնամիների գրոտեսկային կերպարները։ «Խաթաբալա»-ի խմբագիրների, արվեստագետ-նկարիչների համակրանքը աշխատավոր ժողովրդի՝ իր ազատության համար մղած անձնազոհ պայքարի կողմն է։ Այդ վերաբերմունքից է բխում ապագա սերունդներին հեղափոխական ռեալիզմով հագեցած ժամանակաշրջանն արտացոլող ճշմարտացի պատմական վավերագրեր, արվեստի իսկական գործեր թողնելու ձգտումը։

Ցարական բարձրաստիճան պաշտոնյաներին մերկացնող երգիծանկարներում աչքի է ընկնում Կ. Պոբեդոնոսցևի կոմիկական նողկալի կերպարը։ Ցարական այդ հանգուցյալ սատրապի ուրվականն է սավառնում գահի գլխավերևում։ Մի այլ համարի ամբողջ շապիկը գրավում է տաղանդավոր հրապարակախոս-նկարիչ Օ. Շմեռլինգի ծաղրանկարը, ուր պատկերված է ռեակցիայի հարություն առած հայրը՝ «սուրբ Պոբեդոնոսցևը»։ Մի խումբ սատանաներ դիվային քրքիջով ետ են քաշում գերեզմանաքարն ու դուրս հանում Պոբեդոնոսցևի կմախքացած դին, որը նայողի նողկանքն է հարուցում։

Այնուհետև։ Դեկտեմբերյան զինված ապստամբությունը ճնշելուց, մասսայական տեռորներից հետո Արյունոտ Նիկոլայը, Հեռագրի դարի այդ Չինգիզ-խանը հաղթանակ էր տոնում, մտածելով, թե արդեն վերջնական հաշվեհարդար է տեսել հեղափոխության հետ ու ապահովել գահի անսասան, մշտնջենական գոյությունը։ Հակահեղափոխության այդ կարծեցյալ հաղթանակն է ծաղրում «Խաթաբալա»-ն, երգիծական ընդհանրացման օբյեկտ ընտրելով դարձյալ ռեակցիայի ու խավարամոլության փողհար Կ. Պոբեդոնոսցևին։ Ինչպիսի՜ այրող ատելություն ցարական միապետության նկատմամբ։ Ինչպիսի՜ պայծառ լավատեսություն, անխորտակելի հավատ ժողովրդի հեղափոխական եռանդի, գալիք հաղթանակների հանդեպ։ Եվ այդ սևհարյուրյակային սանձարձակ տեռորի, ոստիկանական աննախընթաց ու դաժան հալածանքի պայմաններում։

Զավեշտական մի տեսարան է ներկայացնում «Խաթաբալա»-ի 1906 թ. № 16-ի շապիկը. այն ևս նկարիչ Շմեռլինգինն է։ Նկարի տակ կարդում ենք. «Հաղթեցինք։ Ռեակցիայի հայր Պոբեդոնոսցևը պարում է կամարինսկի»։ Ծաղրանկարի կենտրոնում կամարինսկի պարող Պոբեդոնոսցևն է։ Հրճվալից դեմքով, հարմոշկա է նվագում դևը, իսկ պարողին ծափահարում են մի խումբ խուլիգաններ։

Գաղափարական հագեցվածությամբ ու սոցիալական մերկացման ուժով բացառիկ է Աստղի պալատ մակագրությամբ ծաղրանկարը (1906 թ., № 3)։ Աստղազարդ սփռոցով ծածկըված սեղանի շուրջը նստած են անդրկուլիսյան սևհարյուրյակային խորհրդի անդամ, ցարական բարձրաստիճան չինովնիկները, բռունցքները՝ սեղանին։ Կենտրոնում կանգնած է գնդացիր-Տրեպովը։ Այն Տրեպովը, որին Լենինն անվանել է ցարիզմի վայրագ ու կոպիտ, ամբողջ Ռուսաստանի կողմից առավել ատելի ծառաներից մեկը։ Սեղանի առջև, հատակին, մարդկային գանգերի կույտ է։ Տրեպովը բռունցքները սեղմած, հիստերիկ ճառ է արտասանում, պահանջելով բռունցքի քաղաքականություն վարել երկրի ներսում և կախաղաններով ու գնդակահարություններով պատասխանել ժողովրդի ազատաբաղձ ճիգերին։ Հետին պլանում, Տրեպովի գըլխավերևում, Կ. Պոբեդոնոսցևի ուրվականն է՝ չղջիկի այլանդակ կերպարանքով, ոսկրացած ձեռքերը պարզած. «Աստղի պալատի» հովանին է նա։

Քաղաքական սրությամբ բացառիկ են նաև Տրեպովին պատկերող մյուս ծաղրանկարները։

Ռուսական առաջին հեղափոխության տարբեր շրջանների բազմապիսի իրադրություններում «Խաթաբալա»-ն պատկերել է նաև ցարական միապետության մյուս սյուներին՝ Ստոլիպինին, Դուռնովոյին, Գորեմիկինին, Վիտտեին, Պուրիշկևիչին, Սուվորինին և այլոց։

XX դարի սկզբի, մանավանդ ռուսական առաջին հեղափոխության ժամանակաշրջանի, Ռուսաստանի հասարակական-քաղաքական կյանքի նշանավոր իրադարձություններից էր ռուսական սահմանադրության ու ներկայացուցչական մարմինների շուրջ ծավալված պայքարը։ «Խաթաբալա»-ն ցույց է տալիս, թե ինչպիսին էր դեմոկրատական շրջանների, մասնավորապես, դեմոկրատական մամուլի վերաբերմունքը ռուսական պառլամենտի գործունեության տարբեր կողմերի նկատմամբ։ Պետական դուման հակահեղափոխության հիմնարկությունն էր, ցարական մանյովր, ինքնակալության և ժողովրդի միջև դրված սքողող պատնեշ։ Դրա հրավիրումն ու գործունեությունը պայմանավորված էին Ռուսաստանի առանձնապես մանրբուրժուական խավերի շրջանում լայնորեն տարածված սահմանադրական պատրանքներով։

Համակվա՞ծ էր արդյոք «Խաթաբալա»-ն, ինչպես հայ բուրժուական «Մշակ», «Արշալույս» օրաթերթերը, «Մուրճ» ամսագիրը, նման պատրանքներով, գտնո՞ւմ էր, արդյոք, որ դումայական անցուդարձերը ժամանակի քաղաքական կյանքի գլխավոր էությունն էին կամ Ռուսաստանի հասարակական շարժման ու քաղաքական պայքարի, Լենինի արտահայտությամբ՝ «գեթ գլխավոր կիզակետը»։ Երգիծաթերթի դավանանքը հստակ էր և զգալի չափով համընկնում էր հեղափոխական ձախ բանակի՝ հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի դիրքորոշմանը։ Այն լիովին ազատ էր սահմանադրական թույնից։ Հենվելով ռեալ իրականության վրա, չայլափոխելով այն, «Խաթաբալա»-ն ժողովրդին պաշտպանում էր կադետական սահմանադրական ագրեսիայից, երգիծանքով նպաստում բնակչության աշխատավոր խավերի զարթոնքին, սահմանադրական պատրանքներից ձերբազատվելուն։

Ողջամտորեն գնահատելով ռուսական պառլամենտի դերն ու նշանակությունը, Ժամանակագրության ֆելիետոնի հեղինակ գրագետ Բա-բուրը (1906, № 1, էջ 10) Դուման անվանում է «համառուսական խոսարան», քաղաքական անզոր մարմին, «կրկեսային ներկայացում ու կատարյալ զավեշտ»։

Դժվար չէ նկատել, որ «Խաթաբալա»-ն իր այդպիսի գնահատականով արձագանքում էր բոլշևիկյան «Կայծ»-ին, ուղղակի պաշտպանում նրա դիրքորոշումը։ «Խաթաբալա»-ի լույսընծայումից մեկ ամիս առաջ «Կայծ»-ում Ստ. Շահումյանի գրած Կառավարությունը և Դուման առաջնորդողում կարդում ենք. «...կարելի է կարծել, Դուման դառնում է ֆրանսիական մեծ հեղափոխության «Ազգային ժողովը»։ Որքա՜ն կուզեինք հավատալ այդ երազին։ Բայց և ավա՜ղ... Պետական դուման իր կարճատև գործունեությամբ բավական ապացույցներ է տվել մեզ հոռետես լինելու իր վերաբերմամբ։ Նա պարզապես ցույց է տվել, որ ինքը կոչված է լինելու ոչ թե ֆրանսիական «Ազգային ժողով», այլ ընդամենը... մի «ֆրանկֆուրտյան խոսարան», («Կայծ», 1906, № 15)։

Ռուսական պառլամենտը՝ Դուման միայն խոսարան հռչակելը, ինչպես վկայում են երգիծաթերթի նյութերը, դեռևս այն չէր, ինչ կցանկանար ասել «Խաթաբալա»-ն։ Պետական դուման, ինչպես գրում էր երգիծաբան Ստորա-կետը—Աթանասյանն իր Ռուս ազատագրության պատմությունը սուր հրապարակախոսական ֆելիետոնում (1906, № 4, էջ 26—27), լոկ խոսարան չէ, այլ բյուրոկրատիայի, ցարական բռնակալության, նրա արբանյակների՝ «Պատրիոտների, Խուլիգանների, Պոգրոմների, Պրովոկացիաների խաղը»։ Երգիծաբանը գրել է. Դուման «պրովոկացիայի մի նոր տեսակի խորամանկություն էր, որ դրանով բռնակալությունը ցանկանում էր միայն ժամանակ շահել, իր ուժերը վերակազմելու և նորից գրոհ տալու հեղափոխության վրա»։

Հեղափոխական և հակահեղափոխական ուժերի հավասարակշռության շրջանում ցարական միապետության նախասիրած «մտրակի և կարկանդակի» քաղաքականության կենդանի մարմնացումն էր Ստոլիպինը։ Ահա թե ինչու, ինչպես II, նմանապես և III պետական դումաների շուրջ ծավալված քաղաքական պայքարի ողջ ժամանակաշրջանում հեղափոխական մամուլը, ինչպես և «Խաթաբալա»-ն, մերկացման ամենաբազմազան միջոցներն ուղղում է Ստոլիպինի դեմ։ Սրամիտ, քաղաքական նպատակասլացությամբ հագեցած՝ Ստոլիպինը օրորում է Երիտասարդ Ռուսաստանին (1906, № 19), Իսկական ռուս մարդկանց բալետը. դիրիժորությամբ Գրինգմուտի (1906, № 20), Ա՜խ, Դումա՜, Դումա՜, Երազումն իսկ ինձ հանգիստ չի տալիս (1907, № 12) և այլ ծաղրանկարներ։

Տիրող հասարակական մթնոլորտը գաղափարական ու գեղարվեստական նոր երանգ է հաղորդում քաղաքական ծաղրանկարին։ Շիտակ ու սուր միտքը կարելի էր արտահայտել միայն այլաբանորեն։

Ահա շաբաթաթերթի դարձյալ ամբողջ շապիկն զբաղեցնող մի խորիմաստ ծաղրանկար ևս (1906, № 7) Փորձենք, գուցե ետ դարձնենք։ Ցարական բարձրաստիճան չինովնիկի գրոտեսկային կերպարանքը խորհրդանշում է տիրող ցարական կարգերը. երկու ձեռքով նա կառչել է սայլի անիվից և փորձում է ետ շրջել դրա ընթացքը։ Անանուն նկարչի այս գործը ցույց է տալիս, թե ինչպես էր ընկալում ու մեկնաբանում «Խաթաբալա»-ն ռեակցիան։ Այստեղ արտահայտված է այն ճշմարտությունը, թե ապարդյուն են Ռուսաստանում հին կարգերը պահպանելու՝ խավարամոլների փորձերը։ Երգիծաթերթն, այսպիսով, հայտարարում է, որ անհնար է շրջել պատմության անիվը, որ երբեք, ոչ մի ուժ չի կարող կասեցնել պատմության առաջընթացը։

Հունիսերեքյան ռեժիմը և ստոլիպինյան ռեակցիան, սևհարյուրյակային դաժան տեռորն ու ցարական գրաքննությունն անհնար դարձրին լեգալ հեղափոխական մամուլի գոյությունը, իսկ առաջավոր դեմոկրատական մամուլին հարկա-

դրեցին անցնել ընդհատակ, փոխել պայքարի ձևերը։ Անշուշտ, անհնար էր պահպանել հեղափոխության վերելքի շրջանի պաթոսն ու լարվածությունը։ Այդ է պատճառը, որ այս տարիներին «Խաթաբալա»-ն տեղական քաղաքական սուր հարցերից ավելի ծաղրում է կենցաղային արատներն ու շոշափում միջազգային իրադրության հարցեր։ Այդուհանդերձ, գալիք հեղափոխության նկատմամբ հավատով տոգորված. «Խաթաբալա»-ն ծանր մղձավանջի տարիներին էլ չի իջնում հասարակական երգիծանքի բարձունքից։

Ցարական զազրելի ռեժիմի ամենամռայլ էջերից են հայ-ադրբեջանական ազգամիջյան կոտորածներն Անդրկովկասում։ Երկրում տեղի ունեցածն անասելի ահավոր էր, ողբերգական։ Առատորեն ու անիմաստ հոսում էր հարևան ժողովուրդների արյունը։ Մամուլի ամենաբազմազան օրգաններում նկարագրվում էին արյունահեղ ընդհարումները Բաքվում, Գանձակում, Ղարաբաղում (առանձնապես Շուշի քաղաքում), Թիֆլիսում, Երևանում, Կարսում, Սուրմալուում և այլուր։ Ազգամիջյան այդ ընդհարումները բոլշևիկները դիտում էին որպես ցարական կառավարության սարքած պրովոկացիա, ռուսական բյուրոկրատիայի ոճրագործություն։ Նրանք ընդգծում էին, որ քանի դեռ գոյություն ունի ցարական բռնակալությունը, ծովի պես կհոսի ժողովուրդների անմեղ արյունը։

Արյունոտ «շեյթանը», որի ուրվականով ահաբեկում էին հայ բնակչության հետամնաց խավերին կադետական «Մշակ»-ն ու «Մուրճ»-ը, լիբերալ-ազգայնական «Արշալույս»-ը և դաշնակցական «Ալիք»-ը, ոչ թե «ադրբեջանական տարրն» էր, այլ երերվող ցարական գահը։ Այդպես էին խորհում ազգամիջյան ընդհարումների մասին հասարակության ողջամիտ տարրերը՝ բոլոր ազգությունների աշխատավորների շահերի իսկական պաշտպանները։ Ազգամիջյան համերաշխության ջատագովն էր «Խաթաբալա»-ն, որն անգնահատելի դեր խաղաց Անդրկովկասի բազմազգ ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համերաշխության մթնոլորտ ստեղծելու գործում։ Զնայած շաբաթաթերթի առաջին իսկ համարներից բացահայտ է «Խաթաբալա»-ի կարծիքը կոտորածների դրդապատճառի ու արյունալի դրամայի գլխավոր մեղսագործի մասին, սակայն, այդուհետ ևս, երգիծաթերթը հաճախ է անդրադառնում այդ հարցերին, ընդգծելով այն բացահայտ ու անառարկելի ճշմարտությունը, որ ընդհարումները հավասարապես մեծագույն դժբախտություն էին երկու կողմի աշխատավորների համար։ Ահա «Խաթաբալա»-ի 1906 թ. № 4-ի շապիկը՝ նկարիչ Օ. Շմեռլինգի մի նոր, ցնցող նկարով. ահռելի վիշապ օձը շրջապատի միակ տիրակալն է։ Հեռվում պարզ նշմարվում են մարդկային բնակավայրի ավերակները։ Վիշապ օձի գալարումների մեջ տանջամահ թպրտում են հայ և ադրբեջանցի բնակիչները։ Արյան բոսոր լճակներն են գոյացել։ Տղամարդկանց, կանանց, երեխաների դիակներ... Հատ ու կենտ կենդանի մնացածներին նույն վիճակն է սպասում և, նրանք՝ ձեռքերը պարզած, օգնություն են աղերսում։ Օձը բարձրացրել է իր մարդկային գլուխը և հրճվում է բավականությունից։ Նկարչի համարձակ վրձինը այն նմանեցրել է Նիկոլայ II-ին։

«Խաթաբալա»-ն այդպիսով բացահայտ ցույց է տալիս, որ երկու բարեկամ ժողովուրդների հազարավոր անմեղ զոհերի ու անլուր տառապանքների իսկական մեղսագործը այն իժն է, որին ցարական բռնակալություն են կոչում։

Այս միտքը մարմնավորված է Նզո՞վ fիշատակիդ, եղբայրադավ շեյթան գրաֆիկական գործում (1907, № 15-ի շապիկը)։ Գաղափարական ու գեղարվեստական մտահղացման զարմանալի պարզ ու անմիջական վերարտադրություն։ Իսպառ վերացել է առեղծվածային տարրը. առաջին իսկ պահից դիտողն ըմբռնում է նկարչի միտքը— երբեմնի արյունարբու ու ամբարտավան վիշապ օձը, որ պատկերված է նույն մարդկային կերպարանքով, այլևս անկարող է աղետներ նյութել։ Այժմ արդեն նրա բերանից ու ջախջախված գլխից առատորեն հոսող արյունից է գոյացել արյան լճակը։ Հայ և ադրբեջանցի համերաշխ ու խաղաղ գյուղացիների մի խումբ արհամարհանքով դիտում է տեսարանը և ցասումով արտասանում վերոհիշյալ խոսքերը։ Այս է լինելու արյունոտ ու եղբայրադավ շեյթանի տրամաբանական վախճանը. ցարական բռնակալության ջախջախման ճանապարհով պետք է վերջ տրվի արյունահեղությանը։ Երգիծաթերթի քաղաքացիական արիության հասնող այս համարձակ ու հեղափոխական դիրքորոշումը խորապես համընկնում էր հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի հայեցակետին, նպաստում աշխատավոր խավերի քաղաքական-դասակարգային ինքնագիտակցության զարթոնքին։

Մեր օրերում, մի կողմից՝ զարմանք, մյուս կողմից՝ հիացմունք է պատճառում ընթերցողին այն համարձակ պայքարը, որ երգիծաթերթը ծավալել է իր էջերում մշակական լիբերալիզմի, դաշնակցության և սոցիալիզմի դրոշի հետև թաքնվող քաղաքական տարբեր հոսանքների դեմ։ Դրանց պարագլուխներն ու տպագիր օրգաններն այն թիրախներն էին, որոնց իր երգիծական խարանման տակ էր առել «Խաթաբալա»-ն։ Այդ հարցում ևս երգիծաթերթը սատարում էր բոլշևիկյան մամուլին։ Հայ բուրժուա-ազատամտական հոսանքի նկատմամբ երգիծաթերթի դիրքորոշումը խտացրած գույներով արտացոլված է այնտեղ տպագրված հրապարակախոսական մի նկարում, ուր Գ. Արծրունին՝ լապտերը ձեռքին, օրը ցերեկով ապարդյուն փնտրում է իր արժանի հաջորդներին։ Մշակական լիբերալները կերպարանափոխվել, դարձել են հայ կադետների պարագլուխներ։

«Խաթաբալա»-ում տպագրված բազմաթիվ ֆելիետոններ, դիպուկ ու սրամիտ տասնյակ ծաղրանկարներ արտահայտում են այն միտքը, որ չնայած հայ բուրժուական ազատամտությունն իր հասարակական էությամբ մոտենում էր եվրոպական ու ռուսական բուրժուական ազատամտությանը, սակայն այն չէր կամենում (և չէր էլ կարող) ազատագրվել կղերա-պահպանողական «ազգասիրության» բեռից։ Երգիծաթերթը համոզված պնդում էր, որ երբեմնի հակակղերական «Մշակ»-ը, դեն նետելով արծրունյան ավանդները, հակվել էր դեպի կղերականությունն ու դաշն կնքել նրա հետ։

Հայ ժողովրդի՝ դրամատիկ իրադարձություններով հարուստ հասարակական-քաղաքական կյանքի արտացոլման տեսակետից «Խաթաբալա»-ն հանդիսանում է հայկական կյանքի յուրահատուկ տարեգրություն և հանրագիտարան։ Ոչինչ չի վրիպել երգիծողների ուշադրությունից։ Հայ բանվորի ու արհեստավորի տնտեսական ծանր կացությունը, նրանց քաղաքական իրավազրկությունը, գյուղացու սակավահողությունն ու նրա անգութ կեղեքիչները, սովն ու համաճարակները, արևմտահայերի ողբերգական ճակատագիրն ու թուրքական բռնադատիչներից նրանց ազատագրումը, հայկական հարցն ու եվրոպական կեղծ բարեպաշտ դիվանագիտությունը— այս ամենը ժողովրդի կյանքի լայն ու բազմերանգ համայնապատկերն են ստեղծում երգիծաթերթում։ Եվ, հակառակ հայ ազգայնական ու կղերա-պահպանողական մամուլի, ուր իշխում էր հառաչանքն ու ողբը, Ստ. Շահումյանի արտահայտությամբ՝ լալկան տիրացուական ոգին, «Խաթաբալա»-ում իշխում է ցասման ու ընդվզումի ոգին։

«Խաթաբալա»-ն առաջավոր հեղափոխական դիրքերից, համարձակ ու վճռական պաշտպանում էր աշխատավոր խավերի դասակարգային շահերը։ Տպագիր խոսքի բազմազան միջոցներով և, հատկապես, գրաֆիկական ազդու նկարներում և ծաղրանկարներում, հայ աշխատավորության կեղեքիչները պատկերված են որպես արյունախում սարդեր ու վամպիրներ, իսկ բուրժուա-կալվածատիրական շահագործման սիստեմը՝ որպես մի հսկա մամլիչ, որն աշխատավորից քամում է նրա կենսական հյութերը։

Ճիշտ, ռեալիստական դիրքերից գնահատելով տասնական թվականների հասարակական մթնոլորտը, «Խաթաբալա»-ն, դեռևս առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, մեծագույն տագնապով զգում և գուշակում էր արևմտահայերի կյանքին սպառնացող վտանգը. թերթը չէր տարակուսում, որ մի նոր սպանդ է պատրաստվում հայ ժողովրդի համար և ընթերցողներին հաղորդակից էր դարձնում ժողովրդի կյանքի ահավոր դրամային, օգնելով նրան՝ ճշմարտացի պատկերացնելու հայկական միջավայրում գործող քաղաքական ուժերն ու նրանց գործելակերպը։

Ցարական գրաքննության դամոկլյան սուրը, որ մշտապես կախված էր հեղափոխական մամուլի գլխին, հարկադրում էր «Խաթաբալա»-ին զգուշանալ հեղափոխական մարքսիստների վերաբերյալ ուղղակի, բացահայտ դրական խոսք ասելուց։ Բայց և այնպես, որոշ առիթներ օգտագործելով, երգիծաթերթն իր համակրական ձայնն է հնչեցրել հեղափոխական ուսմունքի և նրա մեծագույն հիմնադիրների՝ Մարքսի, Լենինի, ինչպես և շատ ականավոր բոլշևիկների մասին։

«Խաթաբալա»-ի 1907 թ. № 35-ում մեծ համակրանքով է խոսվում Ստ. Շահումյանի մասին. Նա ներկայացված է որպես պրոլետարիատի գործի հաղթանակի անձնվեր մարտիկ, պրոֆեսիոնալ հեղափոխական՝ արտաքին նուրբ, հմայիչ գեղեցկությամբ։

Ուշագրավ է, որ երգիծաթերթը 1915 թ. համարներից մեկի ամբողջ էջով մեկ զետեղել է Հայկ Բժշկյանցի՝ լեգենդար Գայի հիանալի կատարված գրչանկար պորտրեն, նշելով նրա հերոսական սխրանքը թուրքական զավթիչների դեմ մղված մարտերում։

* * *

Հնարավոր չէ մի հոդվածում բացահայտել ժամանակի մտքերը հուզող հարցերի այն լայն շրջանակը, որն ընդգրկել ու որոնց հեղափոխական դիրքերից արձագանքել է «Խաթաբալա»-ն։ Ակնհայտ է երգիծաթերթի պատմա-ճանաչողական նշանակությունը և ափսոսալ կարելի է միայն, որ մինչև այժմ շատ սակավաթիվ հետազոտողներ են վկայակոչել դրա նյութերը՝ որպես արժեքավոր պատմական աղբյուր։ Հեղափոխական տպագիր խոսքի, իր բնույթով այդ եզակի, բազմահարուստ, պատմական ու գրական հուշարձանի՝ վավերագրերի ուժ ունեցող նյութերի օգտագործումն ու մեկնաբանումը նշանակալի չափով կհարստացնի պատմա-հեղափոխական գրականությունը։

**Ս. Թ. ԻՇԽԱՆՅԱՆ**



# ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

Գ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ

## ՏՊԱԳԻՐ ԽՈՍՔԻ ՈՒԺԸ

*Լույս է տեսել հոդված։ Այն բազմաբեղուն կյանքի հասարակական հետաքրքրական երևույթներից մեկի արտացոլումն է, ծլարձակող նորի, առաջադիմականի արձագանքը։ Սկզբունքային, թևավոր խոսքը տպագրվելով մամուլում դառնում է ընթերցողների սեփականությունը։ Եվ այդ խոսքը պետք է լինի դիպուկ, արտահայտիչ, այնպես, որ իրոք ապրի, գործի։ Ժուռնալիստը իր հույզերը, խոհերը, հանձնում է թղթին հազարների համար։ Ուրեմն, հազար անգամ պետք է կշռադատել, սկզբունք ունենալ հարցի հասարակական հնչեղության բնույթը։ Արձագանքելով կյանքի երևույթին, լավագույն ժուռնալիստական ելույթը ինքնին երևույթ է դառնում։ Լրագրողը մի դեպքում վերցնելով մի մասնավոր դեպք, փաստ, ընդհանրացնում է, դարձնում ուշագրավ իրողություն։ Մի այլ դեպքում համընդհանուր, ուշադրության արժանի երևույթը բեկվում է կոնկրետ իրադարձության ոլորտից, դրսևորվում առանձին փաստի մեջ։*

*Երկու դեպքում էլ ժուռնալիստը շաղկապում է կյանքի հուզող երևույթները, այն հանդես բերում միասնության մեջ, փնտրում հարցին նոր, հետաքրքրական մոտեցման ուղիներ, ձգտում նոր խոսքի միջոցով, հաճախ նույնիսկ հին ճշմարտությունները կրկնելով, նոր միտք հղանալ։*

*Մամուլում հանդես եկող հեղինակի առջև դրված հիմնական պահանջը՝ ժամանակի զգացողությունն է։ Քաղաքացիական ակտիվ դիրքորոշումը, օգնում է բազմակողմանիորեն վեր հանելու ժամանակակից մարդու, ստեղծագործության հերոսի ներաշխարհը, ցույց տալու հասարակական և անձնական կյանքի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքը, դրամատիզմն ու լավատեսությունը՝ կյանքի որոշակի փուլերում, առօրյայի հերոիկան։*

*Լույս է տեսնում օրաթերթը։*

*Ընթերցողին մատուցվում են ինֆորմացիաներ ամենատարբեր բնագավառներից, առաջնորդող հոդված, արդեն արծարծված հայտնի դրույթներ ու փաստեր, արձակ ու չափածո գործեր՝ գրական-գեղարվեստական բաժնում, ապահովված է հեղինակային ակտիվի մասնակցությունը, մի խոսքով ամեն ինչ՝ սովորական օրաթերթի համար։*

*Սովորակա՞ն։*

*Եթե թերթի համարում չկա իսկական, բոցաշունչ, մարտական հրապա-*



*րակախոսական ելույթ, որտեղ ընդհանրացված են փաստերը և արված նոր եզրահանգումներ, ապա հանգիստ խղճով կարելի է թերթի այդ համարը դասել ոչ «սովորականների» շարքը։*

*Օրաթերթը պետք է զգա օրվա զարկերակը, արձագանքի մարդկանց հուզող հարցերին։*

*Օրաթերթում, ամսագրում և մյուս պարբերականներում լույս տեսնող հրապարակախոսական հոդվածների, ելույթների լեզուն, ասելիքն արտահայտելու ոճը, արտահայտչականությունը անպայման պետք է լինի առավել կատարյալ։ Ընթերցողը օրաթերթի լուրջ ելույթը ըստ արժանին գնահատում է միայն այն դեպքում, երբ այն շարադրված է բարձր կուլտուրայով։ Նա չի ուզում հաշտվել դժգույն, անարտահայտիչ ոճով պարբերականում զետեղված «ստեղծագործության» հետ։ Որքան էլ հետաքրքրական ու հրատապ, որքան էլ հուզիչ ու անհրաժեշտ հարցեր արծարծվեն, եթե լեզուն աղքատ է, գրելաոճը՝ անհրապույր, ցանկալի արդյունքը, անշուշտ, չի ստացվի։*

*Ժուռնալիստի գաղափարական կողմնորոշումը, ստեղծագործական վարպետությունը, գրելաձևի հստակությունը, ոճի հարստությունը օրգանապես միաձուլված սկզբունքներ են։ Միայն դրանց առկայության դեպքում է ստեղծվում իսկական հրապարակախոսություն, որը մարդուն սխրանքների է մղում, զորավիգ դառնում։*

*Հասարակական կարծիքի ձևավորման համար անհրաժեշտ են համապատասխան միջոցներ, եղանակներ։ Այստեղ էական դեր կարող են խաղալ ժողովրդական բառն ու բանը, արվեստը։ Մի դեպքում կարելի է օգտագործել բանահյուսության հարուստ, անտակ ու անսպառ գանձարանը, մի այլ դեպքում՝ դիմել բանաստեղծներին, ասելիք միտքը առավել թևավոր դարձնելու համար, փիլիսոփաներին, չսահմանափակվել միայն սեփական ժողովրդի ստեղծագործություններով և որ գլխավորն է՝ գործի դնել այն բոլորը ինչ մտնում է տաղանդ հասկացության մեջ։*

*Մարդն իրեն հուզող հարցի պատասխանն է փնտրում գրականության, երաժշտության, գեղանկարչության, թատրոնի, կինոարվեստի, դասական և ժամանակակից ստեղծագործություններում, փիլիսոփայական ուսումնասիրություններում։ Նա դրան հետամուտ է ամենօրյա լրագրերում լույս տեսնող նյութերում, ուր հրապարակախոսական ելույթներում բազմակողմանի արտացոլում է գտնում մեր բովանդակալից առօրյան։*

*Երբ մատուցվածը ընթերցողի մեջ մտորումներ է առաջացնում, երբ ընթերցողը հեղինակի ելույթում ճշմարտություն է «հայտնագործում», դա ժուռնալիստի նվաճումն է։*

*Հեղինակն ընթերցողի հետ, ինչպես հավասարը հավասարի, ձգտում է հիմնավորել առաջ քաշված խնդիրները։ Երկուսի ջանքերի, նպատակների միաձուլումը հրապարակախոսության քաղաքացիական պաթոսն է, հասարակական կոչումը։*

*Լույս է տեսնում լրագիրը, ամսագիրը. շոշափված են ժամանակի շունչն արտահայտող խնդիրներ, գաղափարներ, կան թեմաներ, հարցեր, որոնք արձագանքում են օրվա հուզող դեպքերին։ Եթե սովորական հաշվետվության հարց դրվի, անշուշտ, հարցաթերթիկի բոլոր հարցերին կարելի է դրական պատասխանել։ Բայց, երբ խոսքը վերաբերում է տպագրված նյութերի գեղարվեստական առումով, մակարդակին, լեզվին, ոճին, այստեղ կատարելությու-*

նը հաճախ տեղի է տալիս։ Կա թեմա, սակայն այն դժգույն է գրված, չի կարդացվում, ցանկալի հետաքրքրություն չի ստեղծում երևույթի շուրջը։

Վատ, անհետաքրքիր, ձանձրալի թեմա չկա։ Կա վատ գրված հոդված, վատ «ստեղծագործություն», գորշ գրելաձև, շաբլոն, արձանագրային ոճ։ Սրանք տարբեր հասկացողություններ են։

Ինչ խոսք, ամեն ոք չի կարող գրել այնպես, ինչպես ասենք պրոֆեսիոնալ հրապարակախոսը, լավ գրողը, բանաստեղծը, լավ ժուռնալիստը։ Եվ, վերջապես, եթե գեղարվեստական խոսքը դարձնենք միտքն արտահայտելու միակ չափանիշը, ապա վտանգ չի՞ սպառնում, որ լրագրերը, հանդեսները դառնան միայն ստեղծագործողների մենաշնորհը։ Կա՞ այդպիսի վտանգ։

Ո՛չ, չկա։

Դրա փայլուն ապացույցն են հենց նույն օրաթերթերում և հանդեսներում տպագրվող հասարակության տարբեր խավերի ներկայացուցիչների ելույթները, որոնք հրապարակ են բերում նոր փաստեր, դրվագներ, հասարակական հետաքրքրություն ներկայացնող վավերագրեր, նոր շունչ հաղորդում տպագիր խոսքին։

«Սովետական Հայաստանը» տպագրել էր երկու հոդված։ Մեկի վերնագիրն է՝ Քարից համած հաղթանակ, մյուսինը՝ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար։

Արդեն վերնագրերից երևում է, որ հեղինակները իրենց առջև խնդիր են դրել գովերգել աշխատանքը, բարձրացնել աշխատանքով վեհացած, հողը շեն դարձնող մարդուն։ Նպատակադրումը նույնն է, բայց կատարումը՝ այլ։ Մի դեպքում, առանց նույնիսկ շեշտելու, այն ակնհայտ է վերնագրից, թևավոր խոսքի միջոցով ակնարկագիր-հրապարակախոսը պարզ և հասկանալի պատմում է իր տեսածը Հայաստանի գյուղերից մեկում, այն թե ինչ է տալիս մարդուն ու բնությանը ազատ, նվիրական աշխատանքը։ Թվում է, հեղինակը հենց այնպես, ուղղակի պատմում է իր տեսածն ու զգացածը։ Սակայն ամեն տողի մեջ, ամեն նկարագրում, լինի բնության, թե մարդու, զգացվում է հեղինակի որոշակի միտումը, տենդենցը. նա այդ շեշտում է և՛ ժամանակի իմաստով, և՛ մարդկանց ճակատագրերից էպիզոդների մեջբերումով, և՛ բնապատկերների նկարագրություններում։

Այսպես. «Պետությունը ջրանցքի բերանը բացեց, խմելու ջուր բերեց, վերջապես տներ կառուցեց ու բաժանեց մարդկանց։ Եվ միևնույն է, չվերջացավ քարակռիվը, ավելի ծավալվեց»։

Արդյունքը.

«Ու այգեստան է դառնում քարաստանը։ Հողի նման դիմացկուն է հողի աշխատավորը։ Եվ ի՞նչ է պետք մարդուն. մի սրտացավ հայացք, մի քանի ջերմ խոսք, արդար գնահատականի մի փոքր արտահայտություն, և նա հրաշքներ կգործի»։

Երկրորդ հոդվածում ամեն ինչ ճիշտ է, առարկելու ոչինչ չկա։ Սակայն այստեղ շարադրված ճշմարտություններն արդեն հաստատված են պաշտոնական բազմաթիվ փաստաթղթերում։ Դրանց բովանդակությունը քաջ հայտնի է բոլորին, չէ՞ որ դրանք տպագրվել են օրաթերթերում, հաղորդվել ռադիոյով ու հեռուստատեսությամբ, հրատարակվել առանձին գրքերով։ Հարկ կա՞ արդյոք այդ մասին նորից կրկնել։ Այո՛, անպայման, դա անհրաժեշտ է։ Սակայն ոչ այն ձևով, ինչպես մատուցվել է հիշյալ հոդվածում։ Այստեղ պարզ ճշմարտությունների լոկ թվարկում է։ Իսկ հրապարակախոսի խնդիրն է՝ այդ



ճշմարտությունների շուրջ նորից զրուցել ընթերցողների հետ, դրա համար յուրահատուկ, գրավիչ միջոցներ գտնել։

Հրապարակախոսական ելույթն իր բնույթով ընդգծված տենդենցիոզ է։ Լինի ակնարկ, թե հոդված, այն կամ հաստատում, կամ բացասում է ինչ-որ դրույթ։ Ինչպես արվեստն ու գրականությունը, հրապարակախոսությունը միտումնավոր է, հետապնդում է որոշակի նպատակ։

Լենինյան թեման ոգևորել, ոգեշնչել է բազմաթիվ ստեղծագործողների։ Գրվել են բազմաթիվ տաղանդավոր գործեր, որոնք բոլորն էլ հրապարակախոսական հզոր շնչով են ներարկված։ Լենին—Չարենց, Լենին—Մայակովսկի, Լենին—Պոգոդին, Լենին—Շահինյան և շատ ուրիշներ։ Եվ դարձյալ ստեղծագործողը նոր գույներ է որոնում արտահայտելու իր մտքերը, զգացումները։

«Սովետական Հայաստան» լրագրի մի համարում հանդես են եկել տարբեր հրապարակախոսներ. Վահագն Դավթյան, Պարույր Սևակ, Արտաշես Կարինյան, Վիկտոր Համբարձումյան։ Այսպես են գրել

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆԸ.

Քայլում է նա հիմա հողագնդով այս հին.
Ոտպես զարնան զարթոնքն ու ոտպես լույսն անմար.
Անցնում ամեն սահման, մտնում ամեն երկիր,
Քանզի վիզա պետք չէ ճշմարտության համար.
Քայլում է նա հյուսիս, քայլում է նա հարավ.
Արեգակի նամփով անցնում ծով ու գետեր,
Հույս է տալիս նրան, ով հույսի է ծարավ.
Ու լույս տալիս նրան, ով խավարում է դեռ:

ԱՐՏԱՇԵՍ ԿԱՐԻՆՅԱՆԸ.

«Լսելով Լենինին, մենք տեսանք և համոզվեցինք, որ նույնիսկ «ընթացիկ մոմենտի» մասին կարդացած իր զեկուցման մեջ ականավոր հեղափոխական տրիբունը միաժամանակ շատ խորհուն գիտնական է, որի զեկուցման թե՛ կուռ հյուսվածքը և թե՛ մեթոդոլոգիան մեզ՝ երիտասարդ մարքսիստներիս համար շատ և շատ ուսանելի են: Մոտավորապես երեք ժամ խոսեց Լենինը և մենք լսում էինք անհագ ուշադրությամբ: Բոլոր փաստերը նրա զեկուցման մեջ կապակցված էին միմյանց հետ և նորից հաստատում էին գալիք հեղափոխական նոր բռնկումների անխուսափելիությունը»:

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿԸ.

«Լենին.

Մեծությունը բազմաթիվ չափանիշներ ունի: Եվ դրանցից մեծագույնը թերևս այն է, ինչ ունեն շատ քչերը և նրանց առաջին շարքում՝ Լենինը: Նա, որ շրջապատված է եղել և այժմ էլ շրջապատված է հազարավոր գաղափարական թշնամիներով, նույն ինքը՝ նա անձնական կյանքում դժվար թե թշնամի ունեցած լինի, որովհետև նա է այն մարդը, որին չի կարող չհարգել նույնիսկ նրա թշնամին...»:

ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ.

«Լինում են մարդիկ, որոնք ուժեղ են իրենց տրամաբանությամբ, լինում են գիտնականներ, որոնց մեջ առանձնապես զարգացած է գիտական ինտուիցիան, լինում են շատ կարդացած էրուդիտներ, և լինում են, վերջապես, մտածողներ, որոնց միտքը շատ խորն է թափանցում այս կամ այն մասնավոր ուղղությամբ: Բայց Լենինի միտքը միավորում էր իր մեջ այդ բոլորը: Ահա թե ինչու, նրան հաջողվեց կանխատեսել ոչ միայն մարդկային հասարակության զարգացման ուղիները, այլև ճիշտ հասկանալ այն ռևոլյուցիոն նշանակություն ունեցող հայտնագործությունները, որոնցով հարուստ է ժամանակակից գիտության պատմությունը»:

Խոսքի արտահայտչական պատշաճ ձևերը հնարավորություն են տալիս հրապարակախոսին, անկախ նրա մասնագիտական կոչումից, դիպուկ ասել այն, ինչ մտածում և զգում են հազարները։

Մտքերը, գաղափարները թերթի էջերում թևավոր են դառնում միայն այն ժամանակ, երբ մատուցվում են վարպետորեն։ Տպագիր օրգանի հեղինակու-

թյանը մեծ հարված է հասցնում գորշ նախադասություններով արտահայտված միտքը, երբ բառը տեղին չի գործածված, երբ այն կեղծ է հնչում։ Մաքսիմ Գորկու դիպուկ բնորոշմամբ՝ բառերը փաստերի հագուստն են։ Այստեղից էլ. կարևոր է ո՛չ միայն այն, թե ինչ է ասվում, այլև այն, թե այդ «ինչը» ինչպես է ասվում։

Միտքը լավագույն ձևով արտահայտելը անմիջական կապի մեջ է «ինչի» մասին ասելու հետ։ Ամենափայլուն արտահայտչական ձևերն ու միջոցները կարող են, ըստ էության, միայն շատախոսելու տպավորություն թողնել, եթե հեղինակը չի կարողանում խոսքի գեղեցկությունը շաղկապել, ենթարկել գաղափարին։

Սեփական կարծիքը պետք է ապացուցել և ոչ թե ուրիշի վզին փաթաթել։ Դա և՛ կարողություն է, և՛ արվեստ։

Ժուռնալիստիկան պահանջում է կոնկրետ երևույթը վերցնել մյուս բոլոր երևույթների ամբողջության մեջ, ուսումնասիրել այդ կոնկրետ դեպքը՝ ուրիշ դեպքերի հետ շաղկապված։

Հեղինակը եթե իրոք ստեղծագործող-լրագրող է, ամուր թելերով կապված է հասարակության հետ, ժամանակին արձագանքում է ժողովրդի հույզերին։ Ժուռնալիստիկան ստեղծագործական գործունեության այն ոլորտն է, որը առաջամարտիկի դեր է խաղում հասարակական կյանքում։

Ամեն մարդ, մտնելով գիտակցական կյանք, աշխարհը «հայտնագործում է» յուրովի։ Վարպետ հրապարակախոսը տեսածը պատմում, նկարում է անկրկնելի գույներով, յուրովի։

Իսկական ստեղծագործողը դեպքերը, դեմքերը այնպես է կարողանում նկարագրել, գտնում է ասելիքն արտահայտելու այնպիսի միջոցներ, որոնք բնորոշ են միայն իր գրչին, ոճին։ Նա իր խոսքն ասում է յուրովի, նույնիսկ, երբ ասելիքը վերաբերվում է ամենասովորական երևույթներին։

Դա ստեղծագործողի ուժն է։ Սակայն լինելով սուբյեկտիվ իր դիտողության, հայացքների մեջ, իսկական ստեղծագործողը չի կարող պարփակվել միայն իր խոհերի աշխարհում։ Նրա անհանգիստ սիրտը բաբախում է հասարակական կյանքին համընթաց, ժամանակի պահանջով։

Իսկական հրապարակախոսությունը, խոսքի կուլտուրան, խորապես ազգային են, հեռու ազգային սահմանափակությունից։ Այն հասկանալի է ու հարազատ, նաև այլազգիներին։ Դրա շնորհիվ է, որ հրապարակախոսական շնորհալի, բարձրարվեստ ելույթը դուրս է գալիս ազգային շրջագծից, ստանում համընդհանուր ճանաչում։

Այս առիթով տեղին է վկայակոչել մեծ վարպետ Մարտիրոս Սարյանին։ Նա գրում է.

«Իսկական արվեստագետը— իր մտքերով, ոգևորությամբ, ստեղծագործությամբ, ամբողջովին պարտական է իր ժողովրդին: Ժողովրդից է նա վերցնում ամեն ինչ և վերադարձնում է երգեր, գրքեր, նկարներ: Եվ ինչ որ նա վերադարձնում է, պետք է որ համարժեքը լինի նրան՝ ինչ վերցնում է: Դրա համար էլ ճշմարիտ արվեստագետը միշտ զգում է, որ նա դեռ մեծ պարտք ունի ժողովրդի առջև և որ պետք է աշխատի, ավելի կատարելագործի իր արտահայտչական ձևերը, երբ արվեստագետը կորցնում է այդ զգացումը, նա դատապարտված է ստեղծագործական անհաջողության, նա ետ է մնում կյանքից»:

Մեծ է տպագիր խոսքի ուժը, ներգործուն, տպավորիչ։ Այն մարդու ստեղծագործական հնարքների արտահայտման լավագույն միջոցն է։ Բոլոր դեպքերում հեղինակից պահանջվում է խոսքի ուժը օգտագործելու մեծ կարողություն, արվեստ։



Ահա, վերցնենք լրագրային երեք հրապարակախոսական ելույթ։ Հեղինակներից յուրաքանչյուրն ունի իր թեման, ասելիքը։ Եվ դրան համապատասխան դիմում է խոսքը տեղ հասցնելու յուրովի հնարքների։ Դա նրա ոճն է, արվեստը, ձեռագիրը։ Գուրգեն Մահարին, իրեն հատուկ հակիրճությամբ, բառերը «ծախսելու» խիստ ժլատությամբ նկարագրում է ձյունը։ Դա մի արձակ, ավարտուն բանաստեղծություն է։ Այս պատկերում բնությունը կարծես խոսում է, խորհում, շունչ առնում, արձագանքում մարդու խոհերին։ «Ձյուն»-ը խոր, պատկերավոր շարադրված փիլիսոփայական հրապարակախոսություն է։

Ձյունը և՛ ուրախություն է, և՛ տխրության սիմվոլ, երբ «Ձյունը թափվել է ոչ թե գլխիդ, այլ հոգուդ վրա, ուղեղիդ ու սրտիդ վրա, բոլոր տեսած և չտեսած երազների վրա...»։

«Ձյունն» ընթերցողի առջև պատկերվում է որպես մարդու ճակատագիր, արտահայտում ուրախության և տխրության, գոհունակության և ափսոսանքի զգացմունքներ։ «Ձյունը» պատմական մի ամբողջ դարաշրջան է ներգրավում։ Պե՜տք է արդյոք երկար խոսել պատերազմի, նրա արհավիրքների և թանկագին մարդկանց, թանկ կորուստների մասին։ Արժե շեշտել, ուղեղում ուրույն տեղը նվաճած մտքերը խառնել։ Եվ այդ անել արվեստով, խոսքի ուժի արվեստով։ «Ու դեռ ձյուն կա մեծ ու փոքր կայարանների, մեծ ու փոքր հանգույցների վրա, անտառների ու բացատների վրա, գտնված և անհայտ կորած եղբայրական շիրիմների վրա... ձյուն»։ Հետո,— կեցցե՜ կյանքը. «Ձյուն՝ դիմացի շենքերի տանիքների ու բակերի, ցուցանակների ու մայթերի ու դպրոց շտապող տղաների ու աղջիկների սև թարթիչների վրա»։

Գրականագետ Վազգեն Մնացականյանի Զգալ հեղափոխությունը հրապարակախոսական ելույթի թեման սխալված չենք լինի, եթե ասենք, որ շոշափում է նույն գաղափարները։ Մի տեղ ասված է այն, ինչ հեղինակը զգում է, մյուսում՝ այն, ինչ նրա համոզմունքն է գրականության խնդիրների մասին։ Երկու դեպքում էլ խոսքը կյանքի երևույթների արտացոլման, արտահայտչականության, միտումի մասին է։ Վ. Մնացականյանը գրականագիտական տեսության տեսանկյունով ասում է այն, ինչ Գուրգեն Մահարին կատարում է գրականություն ստեղծելու հնարքով։

«Հեղափոխական գործողության հերոսությունը գրականության մեջ համապատասխանում է խոսքի հերոսությանը։ Անթույլատրելի է, որ արվեստի մեջ իրականության հում փաստը տիրապետող լինի գեղարվեստական մտածողության նկատմամբ։ Այս դեպքում գրողի խոսքը պարտություն է կրում «մերկ», անկախ փաստից, նրան չբարձրացնելով իր ընդհանրացման մակարդակին, այլ ենթարկվելով նրա եզակիությանը, խոսքի «բեռնաբարձությունը» իսկույն խիստ նվազում է։

Գրողի խոսքը մինչև մահ չսպառվող նրա աշխատանքն է»։

Կարծես հենց այդ նկատի ունենալով, Համո Սահյանի վկայությամբ, Ադրբեջանի մեծ գրող Սամեդ Վուրղունը, խոսելով Անդրկովկասի երեք հանրապետությունների, ժողովուրդների բնավորության, երկրների առանձնահատկությունների մասին, կարողացել է անչափ «ժլատ» բառերով, իմաստուն հանդարտությամբ, խոսքի հզոր ուժով ասել.

«Զարմանալի աշխարհ է Հայաստանը. ձորերի մեջ՝ ձորեր, սարեր՝ սարերի վրա, կծիկ-կծիկ, ծալվեծալ սարեր, մեկի ստվերը՝ մեկի ճակատին, մեկի գլուխը՝ մեկի կրծքին, գագաթներին ձյուն, լանջերին ցորենի արտեր, անտառ ու ծաղիկ, ստորոտներում դեղձ ու խաղող.— Դիլիջան, Արարատյան հովիտ, Զանգեզուր... Պոեզիա... Աբովյան, Թումանյան, Չարենց:

Զարմանալի աշխարհ է Վրաստանը, բոճչի պատրաստ շարան-շարան լեռներ, պարան-պարան գետեր, ծով. Մենգրելիա, Կոլխիդա, Կախեթ... Արևելքի և Արևմուտքի ժամադրավայր... Պոեզիա... Ծերեթելի, Ճավճավաձե, Տաբիձե...

Զարմանալի աշխարհ է Ադրբեջանը: Գլուխը հավիտենական ձյուների մեջ, կուրծքը պարզած արևին ու հողմին, ոտերը տաք ավազի վրա... Շիրվան, Բաքու, Քուռ ու Արազ... Պոեզիա... Վագիֆ, Նաքավան, Սաբիր...

Զարմանալի աշխարհ է մեր Կովկաս աշխարհը... Գլուխը երկնքում, բիկունքը լեռներին, զույգ ոտերը զույգ ծովերում: Պատմության անհիշելի հավիտենից: Ժողովուրդների մեծ ընտանիքում երբեք լեզվով խոսող մի ժողովուրդ, երբեք լեզվով խոսող, նույն սազի վրա նույն եղանակները նվագող մի Սայաթ-Նովա: Միասնական հավատ, միասնական կամք, միասնական ոգի... Ստեղծենք այդ մեծ միասնության մեծ երգը և թողնենք սերունդներին ավանդ...»:

Մարդիկ, ժողովուրդներ, երկրներ, բնություն, ճակատագիր. Գուրգեն Մահարին և Սամեդ Վուրղունը խոսքի ուժով ստեղծած պատկերներում անդրադառնում են այդ թեմաներին, խորհում, խորհել տալիս: Եվ այդ կատարում են յուրովի: Գրականագետ-հրապարակախոսն ունի իր ներկապնակը, պատկերների աշխարհը. «Կա մի կետ, որտեղ հեղափոխությունն ու արվեստը առանձնապես սերտորեն են շաղկապվում. դա մարդն է, նրա շահերը: Հեղափոխությունը աշխատանքի մարդկանց սոցիալական ու բարոյական մերձեցման ու միավորման միջոցներից մեկն է: Բայց մի՞թե արվեստը, ճշմարիտ արվեստը, այլ նպատակ ունի»:

Մեծ պատասխանատվության զգացումով է ստեղծագործողը վերցնում գրիչը խարազանելու կյանքի այս կամ այն խոցելի երևույթը:

Հրապարակախոսը, գրողը չեն կարող անտարբեր անցնել թեկուզ մեկ, առաջին հայացքից փոքր թվացող փաստի մոտով, առանց արտահայտելու իրենց որոշակի վերաբերմունքը, վերլուծելու, խորհելու կատարվածի շուրջ:

Համո Սահյանը այցի է գնացել հայրենի գյուղը: Այստեղ նա ծնվել է, բոբիկ ոտքերով քարերը չափել, երեխաների հետ պահմտոցի խաղացել: Նա հիշում է գյուղի անցյալը, տեսնում նրա ներկան, երազում ապագայի մասին: Հանդիպում է ծերերին, զրուցում ջահելների հետ: Եվ նա բարձրաձայն խորհում է, մտածում մարդկանց ճակատագրի մասին: Նրա սիրտը դառնությամբ է լցվում, երբ լսում է շաղակրատի մասին: Այս բոլորը նա մատուցում է զրույցի ձևով: Բայց այն որքա՜ն պատկերավոր է, որքա՜ն հասկանալի: Հեղինակը համամիտ է ուստա Աղալոյի հետ: Իսկ ուստան ահա թե ինչ է ասում.

«Ինչ որ ասում, ճիշտ եք ասում, էս իշխանությունը հողն էլ է մեզ տվել, երկինքն էլ, ճանապարհն էլ, լույսն ու լուսավորությունն էլ, մեր բախտը տնօրինելու իրավունքն էլ: Բայց թե, ինչ ասեմ, դեռ մարդիկ են ճարվում, որ էս բոլորը վայելում են ու գոհ չեն, տակից-գլխից դուրս են տալիս: Այ, օրինակի համար, մեր մարդիմազար Լոզվա Մուխանը... Լոզվա Մուխանը սրանրա էշի փալանն էր կարկատում, որ մի աման թան տան՝ խմի: Գլխի փափախը՝ կաչաղակի ցրիվ եկած բուն: Ղազիլե շալվարին՝ թիթեղի կարկատան: Ոտները՝ քարկիծ, ձեռքերը՝ ճաքճքած ճաթ: Էսպիսին էր երեխա ժամանակ Լոզվա Մուխանը...

Լոզվա Մուխանը հիմա դառել է Միխայիլ Մարկովիչ: Նա կոշիկները փայլեցնում է, դարձնում հայելի, մախմուր շլյապան կախում էր տան երկրորդ հարկի պատին խփած հատուկ մեխից, փողկապը թուլացնում, որ չխեղդվի, մակինտոշը քաշում ուսերին, որ չմրսի, բազկաթոռը քաշում տակը, փղոսկրյա նարդին դնում սեղանին, շեշ ու բեշ անում և (խաղը տանուլ է տալիս, թե տանում, միևնույն է) սկսում է տրտնջալ. «Էդ ինչի՞ եք միշտ մեր հին գյուղը կոխում իմ աչքը: Ինչի՞, Ամերիկայում մարդիկ տուն ու պարտեզ չունե՞ն, հագնելու կոշիկ չունե՞ն, ճանապարհ չունե՞ն, զարմացրիք էլի...»:



Շրջում է Սահյանը գյուղի փողոցներով. դժվարանում է նույնիսկ վերհիշել, թե որտեղ էին հին շինությունները: Գյուղը դուրս է եկել մթին ձորից ու ծաղկում է լեռան բարձունքին, «ժպիտներ փոխանակում ազատ երկնքի հետ»: Ի՞նչ է մնացել հին գյուղից. «Քարափից կախված քարայծի հին կածանով միայն ծարավ պախրաներն են գնում գետը՝ ջրի և մեկ էլ տոն օրերին մարդիկ են գնում նախնյաց գերեզմաններին այցի»:

Հեղինակը չի կարող հանգիստ առնել «Մուխանների» պատճառով: Թեկուզ և տոն օրերին, նա զայրույթով գրում է. «Դրանք՝ Լոզվա Մուխաններն են հիմա մեր թշնամիները»:

Հրապարակախոսական արվեստի փայլուն մարմնացում է Հրաչյա Քոչարի ստեղծագործությունը, որի գրական ժառանգության մեջ ժուռնալիստիկան զգալի տեղ է գրավում: Քոչարը թերթերի, ամսագրերի էջերում հանդես էր բերում կյանքի երևույթներն ըմբռնելու, վերլուծելու, ուղիներ փնտրելու մեծ, զարմանալի ունակություն: Նա միշտ տեսնում էր հեռուն, նրա ամեն մի միտք հորիզոններն էր թափանցում, մարդկանց ստիպում մտածել, լուրջ վերաբերվել երևույթներին, ակտիվ միջամտել կյանքին, պասսիվ դիտողի դեր չստանձնել:

Երկրի, ժողովրդի պատմության ամենատարբեր ժամանակաշրջանում նա իսկական հրապարակախոսի կրքոտությամբ, իրեն նետում էր կյանքի ամենաբարդ, ամենադժվարին հորձանուտները:

Գրականագետ Գրիգորի Սադալը «Литературная Армения» ամսագրում հանգամանալից հոդված է գրել Հրաչյա Քոչարի մասին, որպես հրապարակախոսի: Նա հոդվածը այդպես էլ վերնագրել է. «Հրապարակախոսություն, որ թելադրված է սրտից»: Նա պատմում է Քոչարի հետ ունեցած բազմաթիվ հանդիպումների մասին, մեջբերումներ անում նրա ասածներից:

«Ի՞նչ է մտածում նա՝ Քոչարը, հրապարակախոսական ժանրի մասին.

— Սովորական հոդվածում,— ասաց Քոչարը,— նշվում է փաստը, և հաղորդում այն մասին, թե ինչն է լավը և ինչը վատը՝ այս կամ այն բնագավառում: Որպես կանոն, այդպիսի հոդվածի հեղինակը սահմանափակվում է առանձին վերցրած փաստերով, մի դեպքում դրական, մյուսում՝ բացասական: Իսկ հրապարակախոսական հոդվածում փաստերի խոր վերլուծություն է արվում, հեղինակը ընդհանրացնում է փաստերը, նա կրքոտությամբ հանդես է գալիս հետամնաց հայացքների և երևույթների դեմ, վիճում է դրանց կրողների հետ:

Իսկական հրապարակախոսությունը էմոցիոնալ է, նա ոչ միայն մտքով է թելադրված, այլև սրտով, ճշմարտությամբ և շարադրանքի անմիջականությամբ է հագեցված: Թերթում գրում են այնպես, ինչպես կգրեիր հարազատիդ, մոտիկ մարդուն, կգրեիր ամենաթանկ զգացմունքների մասին, նրանց առջև բաց անելով հոգուդ գաղտնարանը:

Հրապարակած լավ հոդվածում, ընթերցողը զգում է հեղինակի միտքը, բայց դա սառը հաշվենկատ միտք չէ, որը նման է մաթեմատիկական բանաձևին, այլ ոգեշնչված, ժամանակի խնդիրների վերաբերյալ շահագրգռված միտք: Միայն այդ ճանապարհով հրապարակախոսը իր ետևից կտանի ընթերցողներին և նրանց կառաջնորդի դեպի կարևոր խնդիրների լուծումը»:

50-ական թվականներն էին: Պատերազմի վերքերը բուժվում էին, նկատ-

վում էր մեծ առաջընթացի շունչը։ Համաժողովրդական այդ հսկա վերելքի պայմաններում տեղ-տեղ ծնունդ էին առնում անբան պորտաբույծները։ Դրանց դեմ երիտասարդական «Ավանգարդ»-ի էջերում հաճախակի հոդվածներ, ծաղրանկարներ էին տպագրվում։

Դերենիկ Դեմիրճյանը, որը այդ ժամանակ հիվանդ էր, փոքր-ինչ լավ զգալու պահերը ամբողջովին նվիրում էր Մեսրոպ Մաշտոց վեպին։ Նա շտապում էր և իրավունք ուներ... Մեսրոպ Մաշտոցը պետք էր ժողովրդին այնպես, ինչպես Վարդանանքը, իսկ ժամանակը...

«Ավանգարդ» թերթի խմբագրատան դուռը ծեծեցին։ Ներս մտավ Դերենիկ Դեմիրճյանը։ Նա հազիվ էր քայլում։ Նստեց բազմոցին, խոր ներս քաշեց օդը։ Հոգնել էր, իր համար բավական մեծ ճանապարհ էր անցել։ Զգացվում էր, որ նոր է վեր կացել անկողնուց։ Հավաքվածները լուռ նայում էին վարպետին։ Վերջապես նա կարծես քիչ հանգստացավ, ձեռքը տարավ գրպանը և դուրս հանեց մի քանի թերթիկ, որոնց վրա մատիտով ինչ-որ բան էր շարադրված։

«Ահա, սա էլ իմ պատասխանը»,— արտասանեց նա։

Առաջին թերթիկի վրա, մեծ տառերով գրված էր. Ետ նվաճենք փողոցը խուլիգաններից:

Հոդվածը կրքով ու զայրույթով էր գրված։ Նա հիշում էր մեր ժողովրդի անցյալը, հիշում մեր ստեղծածը, անդրադառնում մեր ձգտումներին և այն բանին, ինչը խոչընդոտում է մեր ճանապարհը, դառնացնում աշխատավոր մարդուն։ Մի՞թե ողջ հասարակությունը չի կարող կարգի հրավիրել մի բուռ խուլիգանների, ինչո՞ւ ենք մոռացել «Գեղ կանգնի գերան կկոտրի» ասացվածքը, էլ ում ենք սպասում...

Հրապարակախոսական հոդվածը, ինչ խոսք, լույս տեսավ թերթի հաջորդ համարում։ Վերնագրի շուրջ փոքր առարկություններ եղան։ Ինչպես թե Փողոցը ետ նվաճենք, մի՞թե դա ճիշտ է, ովքե՞ր են այն առանձին թափթփուկները, որ նախ նրանց հանձնենք փողոցը, վիճում էին վարպետի հետ, ապա դնենք այն ետ նվաճելու խնդիրը։ Դերենիկ Դեմիրճյանը չէր զիջում, նա կրքով ապացուցում էր, որ հարցը պետք է սրել, հասարակական ուշադրություն հրավիրել դրա համար պետք է լուրջ հարցադրում։ Նա այնպես էր խոսում, կարծես ամենևին վատառողջ չէր։ Կյանքի այդ երևույթը խոր տպավորվել էր նրա սրտում և ամբողջովին արտահայտվել հոդվածում։

Դերենիկ Դեմիրճյանը ճիշտ էր։ Նրա հրապարակախոսական այդ կրակոտ ելույթը նույն վերնագրով էլ տպագրվեց և ընդունվեց բուռն ոգևորությամբ։

Դիրքորոշումը պետք է լինի հստակ, տրամաբանված և համոզիչ։

Հասարակական պատասխանատվության զգացումն այն աղբյուրն է, որից սկիզբ է առնում երևույթները վերլուծելու, տրամաբանելու, հասարակության վրա սեփական գրական-գեղարվեստական միջոցներով ազդելու, այդ ազդեցության արդյունքները կանխագուշակելու ունակությունը։

Լրագրողը հստակ պատասխան պետք է տա. ինչո՞ւ է ստեղծագործում, ո՞ւմ համար և ի՞նչի է ձգտում։

Ժուռնալիստը տեսած փաստերի բուն արձանագրողը չէ։ Նա մարտիկ է, համոզված իր գործի ճշմարտության մեջ։ Ժուռնալիստիկան թափանցում է մարդկանց ներաշխարհը, բացահայտում գործողությունների ողջ համակարգը, գտնում երևույթների շարժիչ պատճառները և այս բոլորը մատուցում ներդաշնակ բովանդակությամբ։ Մեկ բարձր է հնչում նոտան, մեկ մեղմ, մեկ կտրուկ է, մեկ հեռավոր մեղեդի փնտրելով՝ ընկալում մեծ կյանքի ռիթմը։

---

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ԿՅԱՆՔԻ ՀԵՏՔԵՐՈՎ

(Ակնարկ)

Սովետական Հայաստանի չքնաղ անկյուններից է Ղափանը։ Նրա լեռների բարձունքները ծածկված են թավշյա մարգագետիններով, լանջերը՝ սաղարթախիտ անտառներով։ Այդ լեռների ընդերքում թաքնված են անգնահատելի գանձեր՝ գունավոր մետաղների հարուստ պաշարներ։ Ղափանում պրիմիտիվ միջոցներով պղնձի ձուլումն սկսվել է հարյուրավոր տարիներ առաջ, ընդհատումներով։ XIX դարի կեսերից, մի խումբ դրամատերեր դառնում են այդ հանքերի տնօրեն ու կապիտալիստական եղանակով, կիսատնայնագործական միջոցներով վերսկսում պղնձահանքերի շահագործումը։

Հանքերում ու ձուլարաններում աշխատել են հայեր ու ադրբեջանցիներ, հույներ ու պարսիկներ։ Նրանք գործել են դժնի պայմաններում։ Նեղ ու ցածր էին հանքախորշերը՝ ծածկված փոշու խիտ շերտերով, լցված՝ թունավոր գազերով. միայն նավթի ճրագներն են աղոտ լուսավորել այրերը։ Այդ դժոխային պայմաններում լեռնագործներն աշխատել են ծնկաչոք, կամ մեջքները կռացած։ Նրանք ձեռքի աշխատանքով, չլուտ բազուկներով հանքաքարը հատել ու շալակած դուրս են բերել ընդերքի խորքերից։ Մեկը՝ մաթխափը (հորատողը) հորատը ձեռքին ժայռին է սեղմել, մյուսը՝ թոխմախչին (մուրճահարը) ծանր հարվածներ հասցրել՝ հանքաքարը պոկելու համար։ Բեռնակիրներն են հանքանյութը դուրս բերել՝ քթոցներով ու պարկերով։

Լեռնագործներն աշխատել են օրական 10—11 ժամ, արյուն-քրտինք թափել, չնչին վաստակ ստացել։ Ապրել են հանրակացարաններում, քնել կողք-կողքի, ընդհանուր, մի քանի հարկանի թախտերի վրա, սնվել միայն հացով, լավագույն դեպքում յուրաքանչյուրն իր համար կրակե օջախին ապուր եփել։

Բանվորների թշվառ վիճակի մասին ժամանակի մամուլում կարդում ենք.

«...Մի անօրինակ հուսահատության մեջ հոգևարքի օրեր է ապրում Ղափանը... Ապրուստ չկա, աշխատանք չկա... Իսկ մյուս կողմից ժողովում են ամենայն խստությամբ մի ամբողջ տարվա հարկը, զանազան տուգանքներ... Այժմ սև է պատել մեր գյուղերին... հողագործի վիզը ծուռ է, ձեռը ծոցին, արցունքն աչքերին... Սովն արդեն երկրագործի դուռն է բախում...

...Սոված է Ղափանի այն բանվորը, որ պղնձահանքերի մութ ու խոնավ այրերում, ցեխի ու մրի մեջ շաղախված, կյանքի գնով կռիվ է մղում ապա-

ռաժների հետ՝ պատառ կորեկ հացի համար սև կոպեկ վաստակելու...» (տե՛ս «Մշակ», 1907, № 172)։

Բոլշևիկյան գաղափարները շուտով թափանցում են Ղափան, ըմբոստության կոչում պրոլետարներին՝ ընդդեմ կեղեքիչների։ Բռնկվում է գործադուլը հանքատերերի վայրագ շահագործման դեմ։ 1907 թ. գարնանը հայ և ադրբեջանցի բանվորները դադարեցնում են աշխատանքը և հանքատերերին ներկայացնում 27 կետից կազմված անմեղ պահանջներ, որոնք չեն բավարարվել։

Քսանական դարի սկզբներին Ղափանի հարստությանը տիրում են ֆրանսիական կապիտալիստները։ Արևմուտքի համակրողները հրճվել են, կարծելով, թե «օտարների գալուստը կարելի էր համարել մի ազատարար երևույթ,— գրել է «Մշակը»,— մի լույսի ճառագայթ մեր խավար մթնոլորտում... բայց շատ չանցավ, երբ աշխատավորը տեսավ ի դերև եղած վարդագույն հույսերը։ Մարդասիրության փոխարեն նոր նեղություններ, ազատ աշխատանքի տեղակ հարկադիր աշխատանք... («Մշակ», 1911 թ., № 129)։ Պահպանվել է 10-ժամյա բանվորական օրը։ «Քաղաքակիրթները» գիշատիչ կերպով են շահագործել հանքերը, ձուլած պղինձն ուղտերի քարավաններով հասցրել Ջուլֆա, այնտեղից գնացքով՝ Բաթում, հետո նավով փոխադրել Ֆրանսիա։

Ցարական Ռուսաստանն ապրում էր փոթորկալից օրեր։ Վերահաս մեծ Հոկտեմբերը սարսափեցրեց նաև Ղափանի հանքատեր ֆրանսիական կապիտալիստներին։ Լեռնագործների դատաստանից խույս տալու համար նրանք թողին Ղափանն իրենց հետ տանելով պղնձահանքերի շահագործման նախագծային փաստաթղթերը։

Դաշնակցականների օրոք Ղափանը դադարեց արդյունաբերելուց։ Այստեղ իշխում էին սովն ու սուրը։

Կյանքը վերսկսվեց Զանգեզուրում սովետական կարգերի հաստատմամբ (1921 թ. ամառ)։

Ամեն ինչ պետք էր սկսել հասարակից, պարզից, որովհետև բոլշևիկները ժառանգեցին ավերված ու թալանված երկիր։ Պղնձահանքերը լցված էին ջրով ու տիղմով։ Ձուլող վառարանները քանդվել էին, սարքերը ժանգապատվել։ Անգործ էր ընտանիքով զրկանքի ու թշվառության մեջ թողնված բանվորը։ ՀԿ(բ)Կ Զանգեզուրի գավառային կոմիտեի զեկուցագրերից մեկում (այդ ժամանակաշրջանին վերաբերող) Ղափանի մասին ասված է. «...Գործվածքեղեն բոլորովին չկա, բնակիչները դրա խիստ կարիքն են զգում, ման են գալիս գրեթե մերկ, երեխաները դպրոց են գնում տկլոր, շատերը նույնիսկ դպրոց չեն հաճախում[1]։ Իսկ «Կարմիր ռաշպար» թերթը հաղորդում է՝ ...կանայք իրենց մերկությունը ծածկելու համար ստիպված են փակ կյանք վարել։

Ղափանը շենացնելու համար հարկավոր էր առաջին հերթին վերականգնել պղնձարդյունաբերությունը, որը հարյուրավոր մարդկանց կգրավեր աշխատանքի և կնպաստեր հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացմանը։ Այս հարցով մտահոգվում են ՀԿ(բ)Կ Կենտկոմն ու ՀՍԽՀ ժողկոմխորհը։ 1924 թ. սկզբներին հանրապետության կառավարության որոշմամբ սկսվում են Ղափանի պղնձահանքերի վերականգնման աշխատանքները։

Հանքավայր են գործուղվում լեռնային ինժեներներ՝ Վ. Զարաբովը, Ա. Պարոնյանը և Քոչարյանը։ Հավաքագրվում են հին ու նոր բանվորներ՝ Արզուման բիձան, Արշավիր Գասպարյանը, Ս. Գալստյանը, Ս. Մարտիրոսյանը,

[1] ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ ՀՖԱ, ֆ. 8, ց. 1, գ. 327, թ. 17։



Ա. Գասպարյանը և շատ ուրիշներ։ Գործն սկսվում է, հանքախորշերը մաքրվում են, ձուլարանը սարքավորվում։ Այդ մեծ ուրախություն է պատճառում աշխատավորներին, «...հարյուրավոր փորձված բանվորներ պատրաստվում են աշխատել հանքերում,— գրում է «Կարմիր ռաշպարը»,— նրանք սրտատրոփ սպասում են, թե երբ կհնչի գործարանի կենսարար սուլիչը» (1924 թ. № 25)։

Վերաշինման աշխատանքները կատարվում են օր ու գիշեր, ծանր ու դըժվարին պայմաններում։ Երկաթուղային կայարանը շատ հեռու էր (մոտ 300 կմ), չկային կանոնավոր ճանապարհներ ու փոխադրական միջոցներ, շինանյութն ու սարքերը փոխադրվում էին կենդանիներին բարձած կամ սայլերով։ Բայց նվիրական աշխատանքով մարդիկ հաղթահարում էին դժվարությունները՝ մետր առ մետր առաջ գնում հանքերի խորքը։

* * *

Յոթ տարի ավերված մնալուց հետո, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության յոթերորդ տարեդարձի օրը Ղափանի պղնձաձուլական գործարանը տվեց առաջին ձուլվածքը։ Այդ մեծ տոնախմբություն էր, լեռնագործների ու շրջակա գյուղերի աշխատավորության համար։ Չէ՞ որ հանքերի շահագործման շնորհիվ,— գրում էր «Կարմիր ռաշպարը» մի քանի տասնյակ անգամ կլավանա Զանգեզուրի աշխատավորների վիճակը։

Օրերն ու ամիսները անցնում էին մեկը մյուսի ետևից։ Օխչի գետի ափին կյանքը կենդանանում էր։ Լեռնագործները մեղվաջան աշխատանքով հետըզհետե ավելացնում էին հանքաքարի հանույթն ու պղնձի ձուլումը։ Խտանում էր բանվորների շարքերը, ավելանում կոմունիստների թիվը, որոնք աշխատանքային սխրանքներ էին կատարում։ 1924 թ. օգոստոսի 12-ին տեղի է ունենում կոմբջջի անդրանիկ նիստը։ Բջջում կային կուսակցության 15 անդամ (տե՛ս «Կարմիր ռաշպար», 1924 թ., № 30)։

Վերականգնման աշխատանքների ամենաեռուն շրջանում լեռնագործները որոշեցին՝ Կավարտ գյուղի շրջակայքի հանքերը կոչել պրոլետարիատի մեծ առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար Վ. Ի. Լենինի անվան։ 1925 թ. հոկտեմբերից մամուլում և կուսկազմակերպությունների ժողովներում հիշատակվում են Լենինի անվան հանքերը։

Երկրին հարկավոր է պղինձ։ Այն անհրաժեշտ է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին։ Պղնձի համար պայքարի են ելնում լեռնագործների ջոկատները, որոնց գլխավորում են կոմունիստները։ Նրանք ջանք չեն խնայում իրականացնելու կուսակցության՝ երկրի ինդուստրացման վեհ ծրագիրը։ Թերթում ես ՀԿ(բ)Կ Զանգեզուրի գավկոմի, Ղափանի շրջկոմի, լենինյան հանքերի միացյալ կուսկոլեկտիվի (քարտուղար՝ Շ. Առուշանյան) արձանագրությունները, որոնք տոգորված են աշխատանքային մաքառումների ոգով և խոր տպավորություն են թողնում ընթերցողի վրա։ Ժողովների հիմնական հարցերը՝ պղնձի արտադրության ավելացումն է, փոխադրական միջոցների կարգավորումը, բանվորների կուլտկենցաղային վիճակի բարելավումը... Արդյունքները գոհացուցիչ են։ 1924 թ. ձուլվել է մոտ 100 տոննա պղինձ, 1925 թ. մի քանի հարյուր, 1929 թ. այն հասնում է մոտ 1000 տոննայի։ Այդ տարիներին Ղափանում պղնձի ֆրոնտում են աշխատել անվանի տնտեսվար Ա. Մարտիրոսյանը, Ա. Կնդեղցյանը, գլխավոր ինժեներ Մ. Յուզբաշյանը, Ս. Շահինյա-

*նը, բանվորներ Մ. Մարտիրոսյանը, Ա. Համբարձումյանը, Ա. Պետրոսյանը և ուրիշներ։*

* * *

*Այդ ժամանակաշրջանից անցել է ավելի քան 40 տարի։ Վերջերս մտահղացա գնալ Ղափան, տեսնել, թե ինչպես են գործում լենինյան հանքերի լեռնագործները և ինչով են նշանավորելու մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյա հոբելյանը։*

*Կուսշրջկոմի քարտուղարներին հանդիպելուց հետո բռնեցի լենինյան հանքերը տանող ուղին։ Առաջին ընդհանուր տպավորությունն այն էր, որ Ղափանի կուսակցական կազմակերպությունը ջանք չի խնայել մոբիլիզացնելու լեռնագործների ստեղծագործական եռանդը, իրագործելու ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները։ Ասենք ավելին, որ այժմ ո՛չ միայն լենինյան հանքերում, այլև ամբողջ շրջանում ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակն արժանավայել հավերժացնելու համար։*

*Ղափանի պղնձահանքային կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար՝ Ա. Հայրապետյանը լեռնային ինժեներ է, երկարամյա կուսակցական աշխատող։*

*— Քանի՞ կոմունիստ կա կոմբինատում,— հարցիս նա պատասխանեց.*

*— Մոտավորապես՝ 500, որոնցից ավելի քան 200-ն աշխատում են հանքերում։*

*Դա բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մի հզոր ջոկատ է, որը բարձր պահած սոցմրցության դրոշը, ամեն ինչ անում է արտադրության կոմպլեքսային մեքենայացման, նորագույն սարքերի ու մեխանիզմների տեղակայման, աշխատանքի գիտական կազմակերպման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար։ Ամենուրեք կոմունիստներն աչքի են ընկնում աշխատանքային իրենց սխրանքներով, գործում և կենցաղում լավագույն օրինակ ցույց տալիս։*

*— Արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորել 1970 թվականի ապրիլ և նոյեմբեր ամիսները, այդ նշանակալի տարելիցները,— այս է կոմբինատի կոլեկտիվի նպատակը,— ասում է ընկ. Հայրապետյանը։*

*Կուսկոմի քարտուղարը հիշատակում է այն լեռնագործներին, որոնք նախապատերազմյան հնգամյակների տարիներին եղել են ստախանովյան շարժման նախաձեռնողներ, մարտնչել պղնձի ֆրոնտում՝ Մ. Պապյանը, Ա. Փիրյանը, Ղ. Ավագյանը, Կ. Պլիևը, Ղ. Ազատյանը, Ս. Առուստամյանը, Թ. Աբրալխովը, Լ. Ստեփանյանը և ուրիշներ։*

*Երիտասարդ տնտեսավարներից է պղնձահանքային կոմբինատի դիրեկտոր ընկ. Ժ. Գասպարյանը։ Այդ գործին անցնելու օրվանից նա իր երիտասարդական ավյունը ներդնում է, որպեսզի կոլեկտիվը հաջողությամբ կատարի հնգամյակի առաջադրանքները։*

*Իմ խնդրանքով ընկ. Գասպարյանը մի քանի խոսքով պատմեց կոմբինատի առօրյա գործերի մասին։*

*— Քսանական թվականների վերջերին Ղափանում հանքաքարի հանույթը հաշվվում էր հազարավոր, պղնձի ձուլվածքը՝ հարյուրավոր տոննաներով։ Ներկայումս հանքաքարի հանույթը տասնյակ հազարավոր տոննաներով հաշվելն էլ վայել չէ։*

*Բնիկ ղափանցի է Բ. Ս. Համբարձումյանը։ Նրա աշխատանքային գործունեությունն սկսվել է սևագործ բանվորից... կոմերիտական ուղեգրով ընդունվել է անդրկովկասյան ինդուստրիալ ինստիտուտը։ 1939 թ. ավարտելուց հետո նշանակվել է Ղափանի հանքերի լեռնասպասարկման խմբի պետ։ Տասը տարի նա անբասիր կատարել է իր պարտականությունը... Բորիս Սամվելովիչը հոգատար է եղել ենթակաների նկատմամբ, նրանց պատվաստել է հայրենիքի հանդեպ անձնվիրության, աշխատասիրության ու կարգապահության հատկություններ։ Ղափանում տասը տարի անընդմեջ աշխատելուց հետո նա նշանակվել է կովկասյան լեռնասպասարկման վարչության պետ։ Հեռանալով ծննդավայրից, Համբարձումյանը հոգով ու զգացմունքներով իրեն կապված է զգացել հայրենակիցների հետ... Բախտի բերումով նա 1959 թ. նշանակվել է Ղափանի պղնձահանքային կոմբինատի գլխավոր ինժեներ և այդ գործին է մինչև այսօր։ Բորիս Սամվելովիչը հիսունհինգն արդեն անց է։ Աշխատանքային հագուստով նրան դժվար է տարբերել բանվորից։ Բայց, երբ զրուցում ես, զգում, որ գործ ունես մի մարդու հետ, որը հմուտ մասնագետ է, լեռնային արդյունաբերության գործունյա հրամանատարներից մեկը։ Չնայած այն բանին, որ նա խիստ զբաղված է արտադրության հոգսերով, ակտիվորեն մասնակցում է կուսակցական-հասարակական աշխատանքներին... գրել է 14 գիտական աշխատություն, պաշտպանել տեխնիկական գիտությունների թեկնածուի դիսերտացիա՝ «Բարակ երակի սիստեմների մշակման կատարելագործումը» թեմայով։ Նրան շնորհված է հանրապետության վաստակավոր ինժեների կոչում։*

* * *

*Լենինյան հանքերումն եմ, հերթափոխության ժամը մոտենում է։ Զրուցում եմ հանքի պետի տեղակալ Ս. Ս. Արզումանյանի հետ։ Նա Կավարտից է, որի բնակիչները մեկ դարից ավելի է, սերնդից-սերունդ լեռնագործությամբ են զբաղվում։ Ինքն էլ երկար ժամանակ է աշխատում է հանքում։ Իր ենթականերին գիտե ո՛չ միայն անուն-ազգանունով, այլև համառոտ կպատմի շատերի կենսագրությունը։ Սերյոժա Սամսոնովիչին խնդրեցի նշել մի քանի հանքագործների անուններ, որոնք առաջավոր են արտադրության մեջ։ Նա ձեռքը դրեց ճակատին ու սկսեց խորհել... Մի պահ լռելուց հետո գլուխը բարձրացրեց և պատասխանեց.*

*— Դժվարանում եմ։*

*— Ինչո՞ւ։*

*— Որովհետև մեր հանքում բոլորն էլ առաջավոր են։ Չի եղել մեկը, որին հանդիմանած լինենք պլանը չկատարելու համար։ Նշեցեք բոլորի անունները, գրեցեք ամենքի մասին։*

*— Դուք իրավացի եք։ Բայց չէ՛ որ ինչպես կովի դաշտում խիզախներից խիզախը կա, այնպես էլ լեռնագործների շարքերում առաջավորներից գերազանցիկը կա։*

*— Լավ, գրեցեք Միշայի մասին։*

*— Ես ցանկանում եմ տեսնել նրան, զրուցել հետը։*

*— Եթե հերթափոխի չի գնացել։*

*Արզումանյանը նայեց ժամացույցին, ապա դուրս եկավ գրասենյակից... Մի քանի րոպե հետո վերադարձավ, իր հետ էր միջին տարիքի մի մարդ, որին ներկայացրեց ինձ, ապա իրեն մի քիչ թեթև զգալով ասաց.*

*— Մեր բրիգադավարներից է, ընկերոջ մասին կարող եք մի ամբողջ վեպ գրել։*

*Իրոք հետաքրքրական կենսագրություն ունի Միշա Համբարձումյանը։ Նա*

ժառանգական լեռնագործ է։ Հայրը՝ Անտոնը մտել է հանքերը՝ վերականգնման առաջին օրերին ու անընդմեջ, աղնվորեն աշխատել մինչև իր մահը՝ 1940 թվականը։ Միշան երկար խորհելուց հետո որոշել է գնալ հոր հետքերով և, 17 տարին լրացրած, 1943 թ. մտել է հանք ու մինչև այսօր անընդմեջ աշխատում է նույն տեղամասում։ Նրա օրինակին են հետևել Լենդրոշ և Կամո եղբայրները, մեկը ղեկավարում է ապարաբարձիչ մեխանիզմը, իսկ մյուսը՝ բաց հանքում ավտովարորդ է։ Համբարձումյանին խնդրեցի մի քանի խոսքով պատմել բրիգադայի արտադրական ցուցանիշների մասին։

— Ինչ ասեմ,— պատասխանեց նա,— ինչպես բոլորն են աշխատում, այնպես էլ մեր բրիգադան։ Ինչ վերաբերում է պլաններին, այդ պետական առաջադրանք է, պարտադիր բոլորիս համար, հետևաբար անթերի պետք է կատարել։

Միշան սիրում է իր գործը, բարձր պահում լեռնագործի պատիվը։ Նրա առաջին մտահոգությունն է, որքան հնարավոր է շատ հանքային հարստություն արդյունահանել ընդերքի գանձարանից, դրանով իսկ օգտավետ գործ կատարել հասարակության համար։ Նրա բրիգադան, երկրի մակերեսից 153—200 մետր խորության մեջ աշխատելով լրիվ կարողությամբ է օգտագործում մեխանիզմներն ու սարքերը, որի շնորհիվ արտադրական առաջադրանքը կատարում է 150—170 տոկոսով։

Համբարձումյանը սրբությամբ է կատարում իր պարտականությունը հայրենիքի հանդեպ։ Իսկ հայրենիքն ըստ արժանվույն է գնահատում իր զավակի ծառայությունները։ Նրա կրծքին շողշողում են Լենինի և աշխատանքային կարմիր դրոշի շքանշանները։ Լեռնագործները մեծ վստահություն ցուցաբերելով Մ. Համբարձումյանի նկատմամբ, նրան ընտրել են ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, իսկ Գերագույն սովետը՝ իր նախագահության անդամ։ Այս ուշագրավ երևույթ է։ Մեր երկրում բանվոր դասակարգի շարքերից, ինչպես հանքագործներից, այնպես էլ արդյունաբերության մյուս ճյուղերում աշխատող բանվորներից աճում, վեր են բարձրանում հասարակական քաղաքական գործիչներ։

Զրույցս Համբարձումյանի հետ շարունակվում էր, երբ ներս մտավ մաքուր, կոկիկ հագնված մի երիտասարդ։ Հանքի պետի տեղակալը նրան առաջարկեց նստել, ապա թեքվելով իմ կողմը ասաց.

— Խնդրեմ, Լևոն Բոյախչյան, սա էլ մեր մյուս բրիգադայի ղեկավարն է, պատահական է եկել, եթե կամենում եք զրուցեք հետը։

Լևոնը հայրենիք՝ Սովետական Հայաստան է եկել Բեյրութից, 1946 թվականին, երբ եղել է 14 տարեկան։ Սկզբում ծնողների հետ ապրել է Լենինականում, սովորել տեղի միջնակարգ դպրոցում։ Քսանչորս տարվա շեմին ոտք դրած եկել է Ղափան, ուր բազմաթիվ տեղեր են առաջարկել աշխատելու, բայց նա գերադասել է լեռնագործությունը, գործի է անցել լենինյան հանքերում։ Հրապուրվել է հորատողի մասնագիտությամբ և, ինչպես ինքն է ասում, չի սխալվել։ Լևոնը ամաչելով ու կցկտուր էր պատմում իր մասին, դրա համար էլ լրացնում էր Արզումանյանը. նշելով, որ Բոյախչյանը հմտորեն է տիրապետում իր գործը, հորատանցքեր է բացում թե ուղղահայաց, թե հորիզոնական։

— Որքա՞ն եք վաստակում,— հարցնում եմ Լևոնին։

— Ամսական 400 ռուբլի,— պատասխանում է։

— Բնակարան ունե՞ք,— հարցիս Լևոնը պատասխանեց անհամարձակ։



— Ունեմ։

— Այժմ մեկ սենյականոց է,— լրացրեց հանքի պետի տեղակալը, հաշվի է առնված, առաջին իսկ հնարավորության դեպքում կբարելավենք նրա բնակարանային պայմանները։

Մեր զրույցից հետո Լևոնը իր աշխատանքին վերաբերող հարցը Սերյոժա Սամսոնովիչի հետ լուծեց ու գնաց գործի։ Մնացինք ես ու Արզումանյանը, նրան հետաքրքրում էին միջազգային ու երկրի ներքին կյանքին վերաբերող հարցեր, իսկ ինձ՝ լեռնագործների աշխատանքն ու կյանքը։ Մեր զրույցը գուցե շատ երկար շարունակվեր, եթե ներս չմտներ հանքագործի արտահագուստով, սաղավարտը գլխին, կարբիտի ճրագը ձեռքին մի մարդ։ Նա նկատելով ինձ, մի փոքր շփոթված ասաց.

— Ներեցեք, որ այս տեսքով եմ ներկայանում։ Հանքից դուրս էի գալիս, ընկերներից մեկն ասաց. ընկեր Արզումանյանը շտապ կանչում է. մտածեցի, գուցե խիստ կարևոր գործ կա։ Եթե ասեին, որ օտար մարդ կա այստեղ, հագուստս կփոխեի, նոր կգայի։

— Խմբագրությունից է, ուզում է հետդ զրուցել,— ցույց տալով ինձ ասաց հանքի պետի տեղակալը։

Լեռնագործը նայեց կապտագույն ձեռքերին (հավանական է հորատի բռնատեղի հետքերն էին), ցեխոտ երկարաճիտ կոշիկներին, անհարմար զգաց այդ դրությամբ զրուցել մեզ հետ։

Իմ դեմ նստած է ընդամենը երեսունչորս տարեկան մի երիտասարդ, որն իր կյանքի կեսն անցկացրել է հանքում։ Աշոտ Ավետիսյանը եղել է էլեկտրազոդիչ, վարել է հանքաքար բարձող մեքենան, հետո հորատող, ապա նշանակվել բրիգադավար։

— Քանի՞ մարդ են աշխատում ձեր բրիգադայում, հարցնում եմ ես։

— Յոթ բանվոր,— ասում է նա,— ու թվում՝ Կիրիլ Ֆլորովը, Խասայ Ազատալիևը և ուրիշներ։

— Որքա՞ն է ձեր բրիգադայի՝ հանքաքարի արդյունահանության օրվա առաջադրանքը։

— Հարյուր ութսուն տոննա, բայց բոկում ենք 260—280 տոննա հանքաքար։

Բրիգադայի այս հաջողությունը գլխավորապես արդյունք է այն բանի, որ բարձր է աշխատանքային կարգապահությունը։ Մարդիկ 6-ժամյա աշխատանքային օրվա ընթացքում վայրկյան անգամ չեն բացակայում բանվորական տեղից, լրիվ կարողությամբ են օգտագործում մեքենաներն ու սարքերը։ Այնիվ, նվիրական աշխատանքը բերում է բարձր վաստակ։ Բրիգադայից յուրաքանչյուրն ամսական ստանում է 350—360 ռուբլի, և նույնիսկ ավելի աշխատավարձ։

Կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի նորմերը պահպանելու համար Աշոտ Ավետիսյանի բրիգադային շնորհվել է կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում։

Ես կամենում էի երկար խոսել այսպիսի մարդկանց հետ, որոնք մեր օրերի հերոսներն են։ Մարդիկ, որոնց համար չկա ավելի սուրբ գործ, քան Լենինի պատգամների իրագործումն է։ Մարդիկ, որոնք նվիրված են կոմունիստական կուսակցության գաղափարներին ու ստեղծագործական աշխատանքով կենսագործում են կուսակցության քաղաքականությունը։ Բայց ժա-

մանակը մութ էր, ոմանց աշխատանքն էր սպասում, ոմանց էլ հանգիստ էր հարկավոր։

* * *

Նպատակս էր գնալ հանք, լեռնագործներին տեսնել աշխատանքում։ Պղնձահանքային կոմբինատի գլխավոր ինժեներ Ս. Համբարձումյանն ու կուսկոմիտեի քարտուղար Ս. Հայրապետյանը, խիստ զբաղված լինելով հանդերձ, չմերժեցին խնդրանքս, իրենք ուղեկցեցին լենինյան խմբավորման հանքերից մեկը։

...Ցարնանամուտ էր։ Երբ մենք դուրս եկանք գրասենյակից, մառախուղը նստած էր քաղաքի վրա։ Օխչիի ձախ ափով, մի քանի կիլոմետր բարձրանալուց հետո թեքվեցինք դեպի աջ։ Ճանապարհի թեքությունը 50—60 աստիճան է։ Ավտոմեքենան դանդաղ է առաջ շարժվում։ Արևելքից փչող քամին մառախուղը մեզանից առաջ է մղում դեպի բարձունքները։ Անցյալում, բանվորներն այդ ճանապարհը՝ 7—8 կիլոմետր կտրել են հետիոտն, իսկ այժմ՝ կանոնավոր ուղերթ է կատարում կոմբինատի ավտոբուսը, որը հանքափորներին ձրի տանում է աշխատանքի վայրն ու վերադարձնում։

Գտնվում ենք ծովի մակարդակից ավելի քան 1000 մետր բարձրության վրա։ Շուրջը ընդերքի գանձերով լի բարձր-բարձր սարեր են՝ մառախուղով պատված, դիմացը Խուստուփ լեռն է՝ գագաթը ամպերով ծածկված, իսկ ներքևը Օխչի ու Վաչագան գետերն են։

Լենինյան հանքերի խմբավորման գրասենյակում մեզ ընդունեց հանքի պետ Է. Դանիելյանը։ Նա գիտեր մեր նպատակը, դրա համար էլ հանքի մասին հակիրճ բացատրություն տվեց։ Հանքախորշի մուտքն սկսվում է գրասենյակի բակից։ Գնում ենք 3,4—4 մետր բարձրություն, գրեթե նույնքան լայնություն ունեցող թունելով։ Չնայած այն լուսավորված է էլեկտրական լամպերով, բայց մեզ ուղղություն տվողը նեղ երկաթուղին է, որի ճյուղերը երբեմն բաժանվում են հարավ կամ հյուսիս։ Մենք բավական խորացել էինք երկրի ընդերքը, երբ գլխավոր ինժեներն ասաց.

— Գնում ենք 1095 հորիզոնականով։

— Իսկ ի՞նչ է նշանակում այդ։

— Այս հանքը ծովի մակերևույթից 1095 մետր բարձրության վրա է գտնվում։

— Իսկ որքա՞ն խորն է երկրի մակերեսից։

— 120—200 մետր,— պատասխանեց պետը և շարունակելով խոսքն ասաց։— Ստեղծել ենք օդափոխիչ հարմարանքներ, որոնք հանքերից դուրս են մղում թունավոր գազերն ու փոշին։

Մի քանի հարյուր մետր խորանալուց հետո մեր առջև բացվեց ստորերկրյա մի սրահ, որը միշտ լուսավորված է էլեկտրական լամպերի ճառագայթներով։ Ստորերկրյա վերելքային փականույցն (կամերա) է այդ։ Կառավարակետի (պուլտի) մոտ նստած է գործակարգավար (դիսպետչեր) Է. Ջիլավյանը, որը կոճակի մի սեղմումով շարժման մեջ է դնում՝ ավելի քան 50 տոննա բեռ բարձրացնող ու իջեցնող մեխանիզմը։ Դրանով շինանյութ ու սարքեր են իջեցնում հանքերի խորքը։

Շարունակում ենք ճանապարհը... Եվս մի քանի հարյուր մետր։ Կանգ ենք առնում վերելակի խցիկի առջև։ Բացվում է դռնակը ու մեր հետևից չխկալով փակվում... մի քանի տասնյակ վայրկյանում 45—50 մետր ես իջնում ենք գետնի խորքը՝ 1045 հորիզոնականը։ Անցյալում լեռնագործները այդ ուղղա-



հայաց տարածությունն իջել ու բարձրացել են աստիճաններով, որոնք մնում են այսօր էլ։

Լսվում էին դղրդյուններ, որոնք հիշեցնում են հեռաձիգ հրանոթի պայթյունների խուլ որոտներ։ Ուղեկիցներիցս մեկը ինձ նախազգուշացրեց, որ պայթեցման միջոցով ապառաժից պոկում են պղնձաքարը։

Կանգ առանք Վասիլի Սկլյարի բրիգադայի մոտ։ Արտադրական բոլոր պրոցեսները, հորատանցք բացելուց մինչև հանքաքարի բեռնելն ու թափելը մեքենայացված է ու էլեկտրիֆիկացիայի ենթարկված։ Յուրաքանչյուրն իր տեղում է, ինչպես զինվորն իր դիրքում և առանց վայրկյան կորցնելու կատարում է իր գործը։ Վ. Սկլյարի (ինչպես այլ բրիգադներ) բրիգադն աշխատում է կոմպլեքսային սիստեմով։ Սկսած նախապատրաստական աշխատանքից, հորատանցքի բացումից մինչև հանքաքարի փոխադրումը նույն բրիգադն է կատարում։ Բրիգադն հաշվետու է հանքաքարի հանույթի համար և դրան համապատասխան էլ վարձատրվում է, իսկ այդ շահագրգռում է հանքագործներին, լրիվին օգտագործել աշխատանքային օրն ու սարքավորումների կարողությունը։ Դրա շնորհիվ 1968 թ., 1967 թ. համեմատությամբ, հանքաքարի հանույթն ավելացել է 40 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել 30 տոկոսով։

Այստեղ էին սկրեպավարները՝ Գ. Մարտիրոսյանն ու Յա. Մահմեդովը։ Նրանք փութաջանորեն հանքաքարը մոտեցնում էին ուղղահայաց խողովակին ու նրա միջով թափում ցած, ամենաստորին հորիզոնականը։

Նայում ես Սկլյարին, Մարտիրոսյանին, Մահմեդովին... Նրանց հոնքերին նստած էր բրոնզե գույնի փոշի, արտահագուստը խոնացած, կոշիկները ցեխոտ։ Բայց նրանց դեմքի արտահայտությունն ասում է. «մի՛ք նայի մեր արտաքին տեսքին, մեզ գնահատեցեք մեր կատարած գործերով»։ Երբ խոսում էի նրանց հետ, համեստություն էին անում, ոչինչ չէին ասում իրենց կատարած գործերի մասին։ Բայց պերճախոս թվերն ու փաստերը ասում են. սրանք մաքուր խիղճ, ազնիվ հոգի ունեցող մարդիկ են, մեր օրերի հերոսները։ Նրանց համար չկա ավելի վեհ նպատակ, քան այն, որ որպես համերաշխ եղբայրներ, ընդերքի գանձարանից դուրս են բերում հարստություն, դրանով է՛լ ավելի ամրապնդում մեր հայրենիքի հզորությունը։ Լեռնագործներն այսպես են դիմավորում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը։

Երբ դուրս եկանք հանքից, Դանիելյանն ասաց.

— Կամենում ե՞ք լողանալ։

— Որտե՞ղ,— հարցրի ես։

— Մեզ մոտ, մենք ունենք հանդերձարան ու բաղնիք։ Հերթափոխից հետո բանվորները հանում են իրենց արտահագուստը, լողանում, հագնում զգեստները, հետո գնում տուն։

Կուսկոմիտեի քարտուղարը գրասենյակում իմ ուշադրությունը հրավիրեց մի ցուցափեղկի վրա, ուր փակցված են հնագույն լեռնագործներ՝ Ա. Կոստանյանի, Ա. Գրիգորյանի, Բ. Ավանեսյանի, Ա. Խաչատրյանի, Շ. Հայրապետյանի, Ս. Դանիելյանի, Լ. Անտոնյանի և ուրիշների լուսանկարները։ Հաճելի է, երբ մեծարվում են աշխատանքի վետերանները, տարիներ առաջ պղնձի համար մարտնչողները։ Այստեղ հանքի պետը ինձ ցույց տվեց մի դիագրամ, որի սկզբի ու վերջի թվերը միմյանցից հեռու են այնքան, որքան երկիրն ու երկինքը։ 1925 թ. Լենինի անվան հանքերում արդյունահանվել է ընդամենը 3500 տոննա հանքաքար... 1968 թ. հարյուր հազարավոր տոննա...

* * *

— Իսկ ո՞ւր է ուղարկվում հանքաքարը, նրանից ստացված պղինձը, կհարցնի ընթերցողը։

Հանքաքարը հանքից ստորերկրյա գլխավոր հանքուղիով փոխադրվում է հարստացուցիչ ֆաբրիկան։ Կոմբինատի կապիտալ շինարարության բաժնի պետ Ա. Հարությունյանն ասում է, որ Սովետական Միությունում այդ միակ հանքուղին է, որը կառուցված է հորիզոնական ուղիղ գծով և ամենաերկարն է՝ յոթ կիլոմետր։

Հարստացուցիչ ֆաբրիկան իր արտադրական կարողությունով գրեթե հավասարը չունի մեր երկրում։ Այստեղ տեղակայված են հայրենական նորագույն սարքեր ու հոսքային գծեր. հանքաքարը տեխնոլոգիական բազմապիսի պրոցեսներ անցնելուց հետո, դառնում է մածուցիկ՝ վերածվում կոնցենտրատի։ Ֆաբրիկայում աշխատող բանվորները մեխանիզմներն ու սարքերը հմտորեն օգտագործելու շնորհիվ կարողանում են ապարում պարունակվող պղնձի 96—97 տոկոսը կորզել։ Ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Մ. Գրիգորյանը գովեստով է խոսում գլխավոր կորպուսի հերթափոխի ավագ տեսակավորող՝ Ռ. Դավթյանի, ֆլոտատոր (հարստացնող) Սիրուն Գրիգորյանի և ուրիշների մասին, որոնց նվիրական աշխատանքի շնորհիվ այս տարվա հունվար—փետրվար ամիսների առաջադրանքը գերակատարված է, կոնցենտրատում պղնձի պարունակությունը 17 տոկոսի փոխարեն 19 տոկոս է։

Ուշագրավն այն է, որ հարստացուցիչ ֆաբրիկայում աշխատանքային բոլոր պրոցեսները՝ հանքաքարը հանքից փոխադրելուց մինչ կոնցենտրատ ստանալը և երկաթուղային վագոններին բառնալը, կատարվում է միայն ավտոմատ մեխանիզմների միջոցով, երբեք չի գործադրվում ձեռքի աշխատանք։ Այստեղից կոնցենտրատը գնում է Ալավերդու պղնձաձուլական գործարանը, այնտեղից էլ ձուլված պղինձը ուղարկվում է Երևան և Կամո քաղաքների կաբելի գործարանները։

Մոտ ապագայում ավելի է ընդարձակվելու պղնձի արդյունաբերությունը Ղափանում։ Միայն այս տարի այդ նպատակի համար ներդրվելու է 2.200 հազար ռուբլի։ Հետախուզական մեծ աշխատանքներ են կատարվում նոր, հարուստ հանքավայրեր հայտնաբերելու համար։

* * *

Նախահեղափոխական Ղափանում լեռնագործները երազել են բժշկի ու հիվանդանոցի մասին։ 1921 թ. ընդամենը մեկ բժիշկ և մեկ բուժակ է եղել։

— Իսկ այսօր,— ասում է ՀԿԿ Ղափանի շրջկոմի քարտուղար ընկ. Կ. Խաչատրյանը,— քաղաքն ունի 210 մահճակալանոց հիվանդանոց, դիսպանսեր, տարափոխիկ հիվանդանոց, պոլիկլինիկա, երկու առկայան (լեռնահանքերում և հարստացուցիչ ֆաբրիկայում), 19 բուժկետ, 5 դեղատուն։ 43 բժիշկ, 237 քույր ու բուժակ են աշխատում քաղաքում։

Կա գիշերային պրոֆիլակտիկա։ Բժիշկների որոշմամբ հանքագործները հերթափոխությունից հետո հանգստանում ու քնում են այստեղ, սնվում ձրի, զվարճալի անցկացնում հանգստի ժամը՝ մինչև հաջորդ հերթափոխությունը։ Միայն անցյալ տարի պրոֆիլակտիկայում եղել են 325 մարդ։ 1968 թ. 120 բանվոր-ծառայողներ՝ կոմբինատի և արհեստակցական միության միջոցներով բուժվել են սանատորիաներում ու եղել հանգստյան տներում։



...Մանուֆակտուրա չկա... Կանայք մերկ են... Երեխաները տկլոր են, դպրոց չեն գնում... Այժմ էլ աչքիս առջև են արխիվային այդ թղթերը։ Ուրիշ է պատկերն այսօր։ Քաղաքում ամսական վաճառվում է 162 հազար ռուբլու գործվածքեղեն ու պատրաստի հագուստ։ Պահեստներում ու խանութներում կա ավելի քան մեկ միլիոն ռուբլու գործվածքեղեն ու պատրաստի հագուստեղեն... Քաղաքում կան բազմաթիվ ռեստորաններ, ճաշարաններ, սրճարաններ ու խորտկարաններ։ Պղնձահանքային կոմբինատի հանքերն ու արտադրամասերն ունեն իրենց ճաշարաններն ու բուֆետները, որոնց փոխադրական վարձի, էլեկտրաէներգիայի, կոմունալ ծառայությունների ծախսերը հոգում է կոմբինատի վարչությունը։

Հաճելի է լինել հարստացուցիչ ֆաբրիկայի ճաշարանում։ Հախճասալապատ են խոհանոցի պատերն ու հատակը՝ մաքուր ու փայլփլուն։ Կուլտուրական ու բարեհամբույր է սպասարկող անձնակազմը, մատչելի՝ ճաշերի գները։ Եթե մսաջրով բորշչ, շնիցել՝ ճաշլրացով և մի բաժակ թեյ պատվիրես, ընդամենը կվճարես 43 կոպեկ։ Հանքափորներին օրական կես լիտր կաթ է տրվում անվճար։

* * *

Ավելի քան 75 տարի դրամատերերը տիրել են Ղափանի պղնձահանքերին։ Այդ ժամանակաշրջանում նրանց նպատակը եղել է՝ դաժանորեն շահագործել լեռնագործներին, որքան կարելի է շատ եկամուտ ստանալ, իսկ փոխարեն՝ հատուցել փշրանքներ, չմտահոգվելով պրոլետարների համար ապրուստի նորմալ պայմաններ ստեղծելու մասին։ Օխչի և Վաչագան գետամիջում մի քանի երկհարկանի շենք, որոնք պատկանել են հարուստներին, դրանց շուրջը հյուղակներ՝ բանվորների համար։ Ահա նախահեղափոխական շրջանի Ղափանի պատկերը։

Ընդամենը քառասունհինգ տարի է, ինչ Ղափանի պղնձահանքերի տերն ու տնօրենը բանվորներն են՝ սովետական իշխանությունը։ Այդ տարիներին պղնձահանքերի բազայի վրա ստեղծվել է մի գեղեցիկ քաղաք՝ բազմահարկ շենքերով, արդյունաբերական ձեռնարկություններով, կուլտուր-առողջապահական հիմնարկություններով, խանութներով, ռեստորաններով, ճաշարաններով ու սրճարաններով։ Քաղաքը ձգվում է ավելի քան 12 կիլոմետր։ Օխչի և Վաչագան գետի ափերում կառուցված են պետական բնակարաններ, լեռների լանջերին՝ բանվոր-ծառայողների մենատներ։

Պղնձահանքային կոմբինատի գրասենյակում մտադրվեցի տեսնել բանվորական հանրակացարանը։ Երբ այդ մասին խոսեցի դիրեկտորի տեղակալ ընկ. Ա. Ղարիբյանի (հին հանքագործ) հետ, նա ինձ պատասխանեց.

— Վաղուց է մեր մատյաններից ու հաշվապահական թղթերից ջնջվել «հանրակացարան» բառը անցյալի պատկերացումով։ Այժմ բոլոր մշտական բանվորներն ու ծառայողներն ապահովված են մեկից մինչև երեք սենյականոց բնակարաններով։ Իհարկե, կան մարդիկ, որոնց բնակարանային պայմանները դեռևս լավ չեն (տարածության իմաստով)։ Հույս ունենք, որ մոտ ապագայում մեր հիմնական աշխատողները կունենան իրենց ընդարձակ և հարմարավետ բնակարանները։ Ներկայումս մենք ունենք մի հանրակացարան. երկու—երեք բանվորին հատկացված է մեկ սենյակ իր հարմարություններով։

*Իրոք, Ղափանում մեծ գործ է կատարվում բնակարանային շինարարության բնագավառում։ Միայն վերջին տասը տարում քաղաքում կառուցվել է ավելի քան 83 հազար քմ բնակելի տարածություն, որի մեջ մեծ ներդրում ունի Ս. Վարդանյանի ղեկավարած շինարարական տրեստը։*

*Քաղաքը պատված է ուսումնական հաստատությունների ցանցով։ Այստեղ կա մեկ տարրական, տասը ութամյա, 8 միջնակարգ, մեկ հեռակա միջնակարգ, երկու բանորիտ (երեկոյան), մեկ երաժշտական դպրոց։ Գործում են լեռնամետալուրգիական տեխնիկում, բժշկական, երաժշտական, պրոֆտեխնիկական ուսումնարաններ. մոտ 9000 սովորողներ կան Ղափանում։ Միայն պղնձահանքային կոմբինատում աշխատողներից ավելի քան 150 հոգի հեռակայում են Սովետական Միության տարբեր քաղաքների բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում։*

*Գործից հետո ղափանցիները գիտեն՝ ուր և ինչպես անցկացնեն իրենց հանգիստը։ Դրա համար կա Ալ. Շիրվանզադեի անվան պետական թատրոն, կուլտուրայի երկու պալատ, 24 ակումբ ու գրադարան, երկու կինոթատրոն. յուրաքանչյուր հազար բնակիչ ստանում է 1050 թերթ ու ամսագիր։*

*Պղնձի արդյունաբերությունն ավելացնելու համար մղված պայքարի եռուն ժամանակաշրջանում սկսեց լույս տեսնել՝ «Պայքար պղնձի համար» երկօրյա թերթը, որը բոլորում է իր գոյության 40 տարին։ Շատ պատմաբաններ ու տնտեսագետներ իրենց մենագրությունների համար նյութեր ու փաստեր են գրի առնում այդ լրագրից։ Խմբագիր Գ. Գրիգորյանը թերթի շուրջն է հավաքել շնորհալի լրագրողների մի կոլեկտիվ, որը վառ կերպով լուսաբանում է լեռնագործների սխրանքները, շրջանի գյուղատնտեսության, առողջապահության, կուլտուրայի բնագավառի աշխատողների առօրյան։*

*Փոխվում է Ղափանը, փոխվում է ոչ թե տարեցտարի, այլ ամսե-ամիս։ Այն դարձել է մեր հանրապետության արդյունաբերական հանգույցներից և գեղեցիկ քաղաքներից մեկը։ Անցյալում Երևանից Ղափան գնալու համար օրեր, նույնիսկ մեկ շաբաթ էր հարկավոր։ Մեր օրերում երեկոյան նստում ես «Զանգեզուր» գնացքը, առավոտյան այնտեղ ես։*

Ղափան, մարտ, 1969 թ.



# ՕՐՎԱ հարցեր

## ԲԱՐԵԼԱՎԵԼ ՀԵՌԱԿԱ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ

*Վերջերս պաշտոնական շրջաններում, մամուլում և այլուր հաճախ են շոշափվում հեռակա ուսուցման հարցերը։ Արդարացնո՞ւմ է այն իրեն, նպատակահարմա՞ր է դրա գոյությունը պետության ու ժողովրդի շահերի տեսակետից, ի՞նչ տեղ պետք է գրավի այն բարձրորակ կադրերի պատրաստման մեր ապագա ծրագրերում։ Այդ հարցերում ի հայտ են գալիս հակադիր ու ծայրահեղ տեսակետներ։ Այսպես. «Գարուն» ամսագրի 1968 թ. № 9-ում կարդում ենք. «...Եթե, այնուամենայնիվ, համեմատության մեջ դնենք ցերեկային և հեռակա ուսուցումը, ապա լիարժեք մասնագետ տալու իմաստով հաղթանակը ակնհայտորեն երկրորդի կողմը կլինի»։ Բարյացակամ այս տեսակետը, անշուշտ ուշագրավ կլիներ, եթե հեղինակն իր միտքն ապացուցող փաստեր ունենար։ Բայց իրական վիճակը հաշվի չառնող ընկերներն ավելի շատ հակված են հակադրվելու ընդհանուր տեսակետին, առանձնանալու, քան լրջորեն մասնակցելու անհանգստացնող հարցի շուրջ բացված մտքերի փոխանակությանը։ Մեր կարծիքով հեռակա ուսուցումն անհրաժեշտ է, որ դեռևս շարունակվում է ու պետք է շարունակվի, քանի դեռ անհամամասնություն կա տեխնիկայի բուռն զարգացման և այն ղեկավարող որակյալ մասնագետների թվի միջև։ Բարձրագույն կրթության հեռակա սիստեմը ժողովրդա-տնտեսական խոշոր դեր կատարեց մասնավորապես յոթնամյակի տարիներին (1959—1965 թթ.)։ ՍՍՀՄ Գերագույն սովետի «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և ՍՍՀՄ ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» որոշման մեջ (1958 թ. դեկտեմբերի 24) նշվում է, որ նոր պայմաններում մեծ նշանակություն ունի հեռակա ուսուցումը բուհական սիստեմում։*

*Կյանքի թելադրանքով է առաջացել այդ սիստեմը, կյանքի թելադրանքով էլ այժմ հարուցվում է դրա աստիճանական նեղացման խնդիրը։*

*Ցանկանք այդ թե ոչ, կրթության հեռակա սիստեմը պետք է շարունակվի, որովհետև ժողովրդական տնտեսությունը դեռևս դրա կարիքն ունի։ Ուստի, ավելորդ կլիներ այժմ քննարկել դրա լինել-չլինելու հարցը։ Կարևորն այդ սիստեմի կատարելագործումն է։ Հիրավի, եթե հեռակա սիստեմի հակառակորդներն ունեն զորեղ ու անժխտելի փաստարկ— շրջանավարտների որակական համեմատաբար ցածր մակարդակը, ապա դրա կողմնակիցները կարող են վկայակոչել ոչ պակաս զորեղ ու անժխտելի մի այլ փաստարկ— պակաս որակյալ կադրերի առկայությունը, այնուամենայնիվ, գերադասելի է կադրերի «սովից»։*

Ելնելով գյուղատնտեսության ու արդյունաբերության զարգացման պահանջներից, այդ բնագավառների ղեկավարներն իրենք են կրթության գործուղում արտադրության տասնյակ հազարավոր աշխատողների։ Այդ պատճառով այժմ հանրապետության յոթ բուհեր՝ Երևանի պետական համալսարանը, Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական, ֆիզկուլտուրայի, գյուղատնտեսական, անասնաբուժական-անասնաբուծական, մանկավարժական ինստիտուտները և Երևանի Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիան ունեն իրենց հեռակա բաժինները։ Ըստ որում, մանկավարժականն ինքնուրույն ինստիտուտ է— երկրորդը Սովետական Միության մեջ՝ Մոսկվայի համապատասխան ինստիտուտից հետո։

Եթե 1958—1959 ուս. տարում հանրապետության բարձրագույն կրթության հեռակա սիստեմում սովորում էին 6796 ուսանող, ապա 1967—1968 ուս. տարում նրանց թիվը հասավ 15385-ի։ Միայն 1961 թ. Վ. Ի. Լենինի անվան հայէլեկտրամեքենաշինական գործարանից հանրապետության բուհերում ու տեխնիկումներում հեռակա կարգով բարձրագույն կրթություն էին ստանում 767, Լենինականի տեքստիլ կոմբինատից՝ 660, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատից՝ 230, Երևանի էլեկտրալամպերի գործարանից՝ 185 հոգի, հարյուրից ավելի ուսանող ունեցող ձեռնարկությունների թիվը հանրապետությունում հասնում էր մի քանի տասնյակի։ Այդ թվերն այժմ կրկնապատկվել են։ Գյուղական շրջանների աշխատավորներն զգալի տոկոս են կազմում հեռակա կրթության սիստեմում և, ի հակադրություն նախկին սահմանափակ հնարավորությունների, հողի աշխատավորն այժմ ավելի մեծ հնարավորություններ ունի աշխատանքը զուգակցել ուսման հետ։ Հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններում ընդունելության ժամանակ տարեցտարի ավելի ու ավելի մեծ չափով է առաջնությունը տրվում ընտրված մասնագիտությամբ աշխատողներին։

Ինչպես վերն ասացինք, հեռակա ուսուցմանն ընդհանրապես բացասաբար են վերաբերվում (օրինակ «Գարուն» ամսագրի 1968 թ. № 7-ում արտահայտված ընկերները)։ Հիմքեր կա՞ն այդպիսի եզրակացության համար։ Դժբախտաբար կան և բավականին լուրջ։ Որո՞նք են դրանք։ Այս հարցին պատասխանելիս առաջին հերթին պետք է նկատի ունենալ պետական շահը։ Ահա մի քանի փաստ, որոնք կօգնեն մեզ՝ ընդհանուր պատկերացում կազմելու ուսման այդ սիստեմի վիճակի մասին։ 1964 թ. Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի այգեգործական ֆակուլտետի հեռակա բաժանմունքի VI կուրսի 99 ուսանողներից 30-ը այդ կուրսին են հասել 12,5, 31-ը՝ 8,5 տարում։ Ագրոնոմիական ֆակուլտետի V կուրսի 100 ուսանողներից 36-ը տվյալ կուրսին են հասել 12, իսկ 74-ը՝ 8,5 տարում (տե՛ս ՀԼԿԵՄ ԿԿ IV պլենումը, 1964 թ., նոյեմբերի 3-ի արձ. № 14, ՀԼԿԵՄ ԿԿ ընթացիկ արխիվ)։

Հանրապետության բարձրագույն դպրոցներում 1965—66, 1966—67, 1967—68 ուս. տարիներին նույն կուրսում երկու և ավելի տարի սովորող 9843 ուսանողներից հեռակայում սովորողների թիվը հասնում է 6591-ի (այն դեպքում, երբ հեռակա ուսանողներինն ավելի քան երեք անգամ պակաս է ստացիոնարում սովորողների թվից)։

Առանձին ինստիտուտներում մաղումներն ու երկտարեցիությունն ավելի մեծ չափերի են հասնում։ Այսպես, եթե գյուղատնտեսական ինստիտուտում 1962—1963 ուս. տարում ստացիոնար բաժիններում կային 3 երկտարեցի, մաղումները հասնում էին 26-ի, ապա հեռակա բաժնում՝ համապատասխանաբար՝ 550 և 125։ 1963—1964 ուս. տարում՝ 1 և 41, հեռակա բաժնում՝ 541 և 315։ 1964—65 ուս. տարում ստացիոնարում 11 և 92-ի դիմաց հեռակայում՝ 1219 և 77, 1965—66 ուս. տարում՝ 9 և 41, հեռակայում՝ 872 և 305, 1967—68 ուս. տարում՝ 17 և 67, հեռակայում՝ 1743 և 438 (տե՛ս ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների կրթության մինիստրության 1969 թ. փետրվարին ինստիտուտի ներկայացրած զեկուցագիրը)։ Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի հեռակա բաժանմունքի ուսանողների առաջադիմությունը 1960—1961 ուս. տարվա առաջին կիսամյակում կազմում էր 26, երկրորդ կիսամյակում՝ 10 տոկոս։ Նույն ինստիտուտի Լենինականի բաժնի հեռակա ուսանողների առաջադիմությունը 1965—1966 ուս. տարվա երկրորդ կիսամյակում կազմում էր 25,2 տոկոս և այլն։

Հսկայական չափերի են հասնում մաղումները բուհերի հեռակա բաժիններում։ 1959—60-ից մինչև 1967—68 ուս. տարիները հանրապետության բուհերի հեռակա բաժիններից դուրս են մնացել մոտ 8.000 սովորող։ Մոտավորապես այնքան, որքան շրջանավարտներ են տվել հանրապետության բուհերը 1929—1941 թվականներին (այդ թվում և հեռակա)։

Ստորև բերվող աղյուսակը ցույց է տալիս ստացիոնար և հեռակա ուսուցման սիստեմների շրջանավարտների թվի տարբերությունը գյուղատնտեսական ինստիտուտում։

| Ուսումնական տարիներ | ՍՏԱՑԻՈՆԱՐ | | ՀԵՌԱԿԱ | |
|---|---|---|---|---|
| | ուսանողների թիվը | շրջանավարտների թիվը | ուսանողների թիվը | շրջանավարտների թիվը |
| 1961—62 | 940 | 153 | 2016 | 126 |
| 1962—63 | 1024 | 162 | 2154 | 79 |
| 1963—64 | 1092 | 173 | 2423 | 177 |
| 1964—65 | 1241 | 211 | 2507 | 170 |
| 1965—66 | 1305 | 191 | 2821 | 144 |
| 1966—67 | 1409 | 193 | 2889 | 190 |
| 1967—68 | 1605 | 222 | 3089 | 181 |

Շատ կարևոր է և հեռակայի ուսանողության առաջադիմության հարցը. այստեղ իշխողը «միջակ» գնահատականներն են։ Այսպես, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի հեռակայի ուսանողության դրական գնահատականներից «բավարարը» կազմում է 85—90 տոկոսը։ Վերջին չորս տարում (1964—1968 թթ.) այդ ինստիտուտում ընդամենը երեք հեռակայող ուսանող են բոլոր քննությունները հանձնել «լավ» և «գերազանց» գնահատականներով, կամ, եթե Երևանի պետական համալսարանում գերազանց գնահատական ստացան՝ 1966—1967 ուս. տարվա առաջին կիսամյակում ստացիոնարի ուսանողների 7, երկրորդ կիսամյակում՝ 6,9 տոկոսը, ապա հեռակա բաժնում այն համապատասխանաբար կազմեց 0,9 և 0,5 տոկոս։ Նույն ուս. տարվա երկրորդ կիսամյակում իրավաբանական, տնտեսագիտական և արևելագիտական ֆակուլտետներում ոչ մի գերազանց գնահատական ստացող չի եղել և այլն։ Հեռակա ուսանողության համար սովորական են դարձել թերացումները, հանձնարարված աշխատանքները չկատարելը։ Այսպես՝ Երևանի

գյուղատնտեսական ինստիտուտում 1959 թ. պահանջվող 10.750 ստուգողական աշխատանքների փոխարեն մինչև նոյեմբերի 1-ը ներկայացվել են ընդամենը 2310, 1960 թ. 30890-ի դիմաց՝ 899, 1964 թ. 22855-ի դիմաց՝ 4920, 1965 թ. 30138-ի դիմաց՝ 5608 աշխատանք։

Մխիթարական չէ վիճակը նաև հանրապետության մյուս բուհերում։ Միջակների այս համատարած թագավորության մեջ հնարավո՞ր է խոսել բազմակողմանի զարգացած, իրենց գիտելիքներով տեխնիկայի վիթխարի թռիչքների՝ մեր ժամանակներին համապատասխանող որակյալ կադրերի մասին։

Չմոռանանք ասել, որ մեր բերած վիճակագրական տվյալներում բացահայտված չէ մի կարևոր հանգամանք. այսպես. տոկոսներով ու թվերով ներկայացնելով հաջորդ կուրս փոխադրվածների թիվը, նշված չէ այն ուսանողներինը, ովքեր 1—2 առարկայից պարտք ունեն։ Այսպես, 1967—68 ուս. տարում Երևանի հայկական պետական հեռակա մանկավարժական ինստիտուտի լեզվագրական ֆակուլտետի լեզվի ու գրականության և գրադարանային բաժինների տարեվերջի քննություններին 1006 ուսանողից ներկայացել էին 609-ը, որոնցից միայն 307-ը դրական գնահատականով հանձնեցին բոլոր քննությունները (32,4 տոկոսը)։ Շատ շատերը պայմանականորեն փոխադրվեցին հաջորդ կուրս՝ 1—2 առարկա պարտքով։

Մի ցավալի իրողություն ևս. հեռակայող ուսանողության նկատմամբ պահանջներն անհամեմատ ցածր են ստացիոնարից. պատշաճ պահանջկոտության փոխարեն շատ ինստիտուտներում արվում են անհարկի զիջումներ։ Այստեղ տարածված չափանիշը նվազագույնն է. ուսանողը բավարար գնահատական կարող է ստանալ այնպիսի պատասխանի դիմաց, որի համար ստացիոնարում առանց տատանման նշանակում են անբավարար։ Այդ հանգամանքը նկատի ուներ «Правда» թերթը, այս տարվա փետրվարի 19-ի առաջնորդողում գրելով. «Այլ բան է օգնել մարդուն՝ ուսումը խելացի կազմակերպելու, այլ բան՝ նրա ցածր առաջադիմությունը, հանձնարարությունները չկատարելուն, կրթության նկատմամբ թեթևամիտ վերաբերմունքին մատների արանքով նայելը»։

Ստացիոնար ուսուցման համեմատությամբ, հեռակայի նկատմամբ ցածր պահանջների արտահայտություններից մեկն է նաև բուհական կյանքում տարածված մի այլ երևույթ։ Հաճախ ուսանողը չի կարողանում հանձնել ստացիոնար բաժնի ընդունելության քննությունները, անբավարար գնահատական ստանալուց հետո գործերը տեղափոխում է հեռակա բաժին ու ընդունվում։

Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի 1968 թ. հեռակա բաժինն ընդունված 411-ից 310-ը այն շրջանավարտներն էին, որոնք ստացիոնարի քննություններն անհաջող էին հանձնել (տե՛ս ինստիտուտի 1968 թ. դեկտեմբերի 21-ի կուս. հաշվետու ժողովի արձանագրությունը, կուսկոմիտեի ընթացիկ արխիվ)։ Այդ ամենի հետևանքը լինում է այն, որ հեռակա սիստեմի շրջանավարտներն աննշան մաս են կազմում հայ գիտականների փառապանծ ընտանիքում։ Այդ են ցույց տալիս հետևյալ թվերը։ Հանրապետության 11 բարձրագույն ուսումնական հաստատություններում 1967 թ. աշխատող 2727 պրոֆեսորներից ու դասախոսներից հեռակա բարձրագույն կրթություն են ստացել միայն 53-ը։

Հատկանշական է նաև հետևյալ փաստը։ Նույն բարձրագույն ուսումնական հաստատությունների 1968—69 ուս. տարվա 571 ասպիրանտներից 10 հոգին են ավարտել հեռակա բուհերը։



Հեռակա սիստեմի շրջանավարտներից շատերն են մասնակցել ասպիրանտուրայի ընդունելության քննություններին, բայց առաջին իսկ քննությունից դուրս են մնացել։ Այսպես, միայն Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտում 1964—1968 թթ. ասպիրանտուրայի ընդունելության քննություններին մասնակցած բոլոր հեռակա բուհերն ավարտածներն (15 հոգի) ստացել են անբավարար գնահատական։

Հետաքրքրական է մի փաստ ևս։ Ինչպես հայտնի է, հանրապետության մանկավարժական կադրերի կեսից ավելին ավարտել է հեռակա բարձրագույն ուսումնական հաստատությունները։ Բայց ահա Երևան քաղաքի 614 դպրոցների դիրեկտորներից և ուսմասվարներից միայն 90-ն (14,6 տոկոս) ունեն հեռակա բարձրագույն կրթություն։

Հազիվ թե հարկ կա ապացուցելու, թե որքան մեծ է դասագրքերի (հատկապես մայրենի լեզվով), ուսումնական ձեռնարկների, մասնագիտական հարակից գրականության դերը մեր ուսանող երիտասարդությանը գիտելիքներով զինելու, ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումներին, արտադրության նորույթներին ծանոթացնելու, բարձրորակ մասնագետներ պատրաստելու գործում։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ ծանր է հեռակայի ուսանողի վիճակն ընդհանրապես և Հայաստանի հեռակայողինը՝ մասնավորապես։ Ստացիոնարի ուսանողությունն զգալի առավելություններ ունի հեռակայի համեմատությամբ, թեկուզ այն իմաստով, որ հնարավորություն ունի պարբերաբար դասախոսություններ լսելու բոլոր առարկաներից, թեև գիտելիքների միակ աղբյուրը, հարկավ, դասախոսությունները չեն։ Բայց այդպիսի հնարավորություններից զուրկ է հեռակայողը։ Պետք է նկատի ունենալ, որ Հայաստանի հեռակայողների զգալի մասը չի կարողանում օգտվել ռուսաց լեզվով գրականությունից։ Եվ, վերջապես, ուսանողին հատկացված այդ չընչին ժամանակահատվածում նա չի հասցնում լսել և յուրացնել տարվա ընթացքում ծագած բազմաթիվ հարցերի, խնդիրների պատասխանները, գիտության այս կամ այն բնագավառի թեկուզ և ամենաընդհանուր կուրսը։ Այդ հարցն առավել ևս դժվարանում է, երբ նկատի ենք ունենում, որ առարկաների զգալի մասը ո՛չ միայն բուհական ձեռնարկներ չունի, այլև առհասարակ չկա դրանց վերաբերյալ սիստեմատիկ գիտական շարադրանք (եթե, իհարկե, նկատի չունենանք դպրոցական դասագրքերը)։

Այս ասպարեզում վճռական նշանակություն ունեն դասագրքերը։ Սակայն Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի և Երևանի պետական համալսարանի՝ մասնագիտական բազմաթիվ առարկաների գծով մայրենի լեզվով դասագրքեր չկան (խոսքն աննշան բացառությունների մասին չէ)։ Դասագրքերի հրատարակության անմխիթար վիճակը ցույց տանք համալսարանի օրինակով։ Այսպես. 1941—1945 թթ. հրատարակված մոտ 80 անուն հայերեն և ռուսերեն դասագրքերը (Беккер Р., Теория электричества, Д. Гайков, Аналитическая геометрия, Վ. Թորգոմյան, Վեկտորական հանրահաշիվ, Գ. Սևակ, Ժամանակակից հայոց լեզվի դասընթաց և այլն) մաշվել, համարյա շարքից դուրս են եկել։ Դրանց մեծ մասից մնացել են մի քանի օրինակ։ Եվ դա այն դեպքում, երբ համալսարանի երեկոյան բաժնում սովորում են 2586, իսկ հեռակա բաժնում՝ 2106 հոգի։ Վիճակը նույնն է նաև մյուս բուհերում։ Ուստի, վերոհիշյալ և մի շարք այլ դասագրքերի վերահրատարակությունը խիստ անհրաժեշտություն է։

Անհանգստացուցիչ է այն հանգամանքը, որ բարձրագույն ուսումնական

հաստատություններում ուսանողների թվի աճի համեմատ ոչ միայն չի ավելանում հրատարակվող դասագրքերի և ուսումնական ձեռնարկների թիվը, այլև պակասում է։ Այդ է ցույց տալիս հեռակա մանկավարժական ինստիտուտի օրինակը։ 1946 թ. այն ուներ իր տպարանը և լույս էր ընծայել 31 անուն դասագիրք և ուսումնական ձեռնարկ. բայց վերջին հինգ տարում, երբ ուսանողների թիվը 1946 թ. համեմատությամբ մոտ չորս անգամ ավելացել է, ինստիտուտը հրատարակել է միայն մեկ դասագիրք։

Այս ամենը պարզորոշ վկայում են, որ հանրապետության ուսանող երիտասարդությունն ապահովված չէ անհրաժեշտ դասագրքերով և ուսումնական ձեռնարկներով։ Այս փաստն արձանագրել են անգամ մամուլի պետական կոմիտեն և կուսակցության Երևանի կազմակերպության Սպանդարյանի շրջկոմը։ Բայց, ինչպես ասում են՝ սայլը տեղից չի շարժվել. դասագրքերի հրատարակման գործում էական փոփոխություններ չկան։ Կարծում ենք, համապատասխան վերադաս օրգանները և, ամենից առաջ՝ բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների մինիստրությունը անհրաժեշտ միջոցներ կգտնեն և ամեն կերպ կարագացնեն բուհական դասագրքերի հրատարակումն ու վերահրատարակումը։

Բացի դասագրքերի պակասից, հեռակա բաժնի ուսանողը զրկված է լաբորատորիաներից ու կաբինետներից մշտապես օգտվելու հնարավորությունից։ Մեր կարծիքով, հեռակա ուսանողության վիճակն ինչ-որ չափով կբարելավվի, եթե դասախոսների հանգամանալի դասախոսությունները բազմացվեն, ուղարկվեն ուսանողությանը կամ հրատարակվեն իբրև ձեռագիր՝ մինչև դասագրքերի երևան գալը։ Նման պրակտիկան միաժամանակ ավելի կբարձրացնի դասախոսի պատասխանատվությունը. թերևս այս մեթոդն արդյունավետ կլինի նաև ստացիոնար ուսման սիստեմում և հնարավորություն կընձեռի այս կամ այն դասախոսի գիտելիքների մասին հիմնավոր խոսելու։

Ամենքին հայտնի է, որ ստացիոնար և հեռակա ուսումնական հաստատությունների ծրագրերը նույնն են։ Սակայն գիտական հետազոտությունները ցույց են տվել, որ ստացիոնարի ուսանողն ինքնուրույն աշխատանքին կարող է հատկացնել (առավելագույնը) օրական չորս ժամ, իսկ հեռակայինը՝ մեկ ժամ 23 րոպե (տե՛ս «Актуальные вопросы экономии народного образования», изд. «Просвещение», М., 1965, стр. 143):

Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի առաջին կուրսեցիներին հանձնարարված պարտադիր գրականությունը յուրացնելու նպատակով ինքնուրույն աշխատանքի համար ուսանողին անհրաժեշտ կլինի օրական 6 ժամ. այսինքն՝ նրա օրվա տևողությունը կհասնի 26 ժամի, իսկ նույն կուրսի հեռակայող ուսանողի համար անհրաժեշտ կլինի ինքնուրույն աշխատանքին հատկացնել նույնպես օրական 6 ժամ, և նրա օրվա տևողությունը պետք է հասնի 28 ժամ 30 րոպեի։

Վերը շարադրվածը ցույց է տալիս, որ բարձրագույն կրթությամբ կադրերի պատրաստման հեռակա սիստեմն ունի խոշոր թերություններ, որոնք չեն կարող չանդրադառնալ կադրերի որակի վրա։

Այդ թերությունների հիմնական պատճառներից մեկն էլ այն է, որ դժվար է համատեղել ուսումը և աշխատանքը (ինչպես տեսանք, թեկուզ միայն ժամանակի առումով)։ Բայց, քանի դեռևս աշխատանքին զուգընթաց կրթությունը, մասնագետների պատրաստումը որոշ չափով նպաստում են ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացմանը, հրաժարվել հեռակա



կրթության սիստեմից, առայժմ չենք կարող. սակայն կատարելագործելով այն, պետք է նեղացնել այդ սիստեմի շրջանակները, ինչպես նախատեսված է մեր կուսակցության ծրագրում։ 1966 թ. նոյեմբերի 3-ի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի № 729 համատեղ որոշման մեջ («Մասնագետների պատրաստումը բարելավելու և երկրում բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության ղեկավարումը կատարելագործելու միջոցառումների մասին») կարդում ենք.

«Ինչպես ցույց է տվել պրակտիկան, ցերեկային ուսուցման պայմաններում մասնագետների պատրաստումը արմատական առավելություններ ունի ինչպես պատրաստման որակի, այնպես էլ տնտեսական նկատառումներով։ Ուստի, առաջարկված է՝ մասնագետների պատրաստման պլանները մշակելիս նախատեսել բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ցերեկային ուսուցման հետագա առավել զարգացում։ Ընդսմին դրանք պետք է որոշեն այն մասնագիտությունների ցանկը, որոնց գծով մասնագետներ են պատրաստվելու երեկոյան և հեռակա ուսուցման սիստեմում» («Սովետական Հայաստան» օրաթերթ, 1966 թ. սեպտեմբերի 9)։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի այս որոշումը քննարկվեց նաև ՀԿԿ Կենտկոմի 1966 թ. նոյեմբերի 29-ի բյուրոյի նիստում. մշակվեցին կոնկրետ միջոցառումներ այդ որոշման կենսագործման նպատակով։ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի համատեղ որոշման մեջ գրված է. «Հանձնարարել պետպլանին և բարձրագույն ու միջնակարգ ուսումնական հաստատությունների մինիստրությանը՝ մասնագետների պատրաստման պլանները մշակելիս նկատի ունենալ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատություններում ցերեկային ուսուցման հետագա ընդլայնում»։

Այժմ արդեն մեր բուհերում նկատելի է հեռակա սիստեմի աստիճանական նվազում։ Օրինակ, եթե Երևանի պետական համալսարանի հեռակա բաժինն 1960—61 ուս. տարում ընդունել էր 476 ուսանող, ապա 1968—69 ուս. տարում՝ 282։ Այս տարվանից արդեն չեն գործում Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի Լենինականի և Կիրովականի ֆիլիալների հեռակա բաժինները։ Զգալիորեն պակասել է առաջին կուրսն ընդունվողների թիվը նաև հայկական հեռակա մանկավարժական ինստիտուտում։ 1966—67 ուս. տարվա 1220-ի դիմաց 1967—68 ուս. տարում ընդունվել է 1080 ուսանող, իսկ 1969—70 ուս. տարվա ընդունելության համար պլանավորվել է 750 հոգի։

Կուսակցության և կառավարության վերոհիշյալ որոշումները հաստատում են, որ կյանքն ինքն է թելադրում նման քաղաքականությունը. տարեցտարի լրանում է վերը նշված մասնագետների պակասը, և հեռու չէ այն ժամանակը, երբ հեռակա կրթությունն իր տեղը գրեթե ամբողջովին կզիջի ցերեկային ստացիոնար ուսուցմանը։

ԱՍՊ. Ա. ԲԵՅԲՈՒԹՅԱՆ



## ՎԵՐԱՑՆԵՆՔ ՖԻԶԻԿԱԿԱՆ ԾԱՆՐ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պայմաններում մեքենաների և մեխանիզմների ներդրումը մեծ հնարավորություն է ընձեռում վերացնելու ֆիզիկական ծանր աշխատանքը և բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Սակայն արտադրապրոցեսների մեքենայացման հարցում լուրջ թերություններ կան. «դանդաղ է ընթանում արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, ընդ որում, ավտոմատացման որոշ միջոցառումների արդյունավետությունը շատ ցածր է»,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումում Ա. Ն. Կոսիգինի զեկուցման մեջ։ Դրա հետևանքով արդյունաբերության մեջ դեռևս տիրապետում է արտադրապրոցեսների մասնակի մեքենայացումը, բարձր է ֆիզիկական ծանր աշխատանքների տեսակարար կշիռը։

Հանրապետության արդյունաբերության մեջ 1965 թ. հաշվվում էր ձեռքի ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված մոտ 24 հազար բանվոր։ Չնայած վերջին ժամանակաշրջանում ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների թիվն աճել է 34 տոկոսով, բայց նրանց տեսակարար կշիռն արդյունաբերության մեջ զբաղված բանվորների թվի մեջ նվազել է։

Ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների տեսակարար կշիռն իջել է արդյունաբերության համարյա բոլոր ճյուղերում, իսկ նրանց բացարձակ թիվը կրճատվել է միայն սննդարդյունաբերության մեջ։ Թեթև արդյունաբերության մեջ, չնայած բանվորների ընդհանուր թվի աճի բարձր տեմպերին (54 տոկոս), ձեռքի ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների թիվը մնացել է 1959 թ. մակարդակին։ Ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների թվի միջին տարեկան աճի առավել բարձր տեմպերը բնորոշ են ծանր արդյունաբերության ճյուղերի՝ գունավոր մետալուրգիայի, քիմիական, մեքենաշինական և շինանյութերի արդյունաբերության համար։

Արդյունաբերության մեջ ֆիզիկական ծանր աշխատանքը գերիշխում է օժանդակ պրոցեսներում և որոշ արտադրամասերում։

Ինչպես 1959, այնպես էլ 1962 թ. Հայաստանի արդյունաբերության մեջ ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների ընդհանուր թվի մեջ օժանդակ բանվորների տեսակարար կշիռը կազմել է 69, իսկ 1965-ին՝ 64,2 տոկոս (տե՛ս աղյուսակը)։ Անհրաժեշտ է ընդգծել, որ ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված օժանդակ բանվորների 39,6 տոկոսը կենտրոնացված է օժանդակ արտադրամասերում, իսկ 60,4 տոկոսը, որպես կանոն, աշ-



խատում է հիմնական արտադրամասերում և տեղամասերում։ Միայն մեքենաշինական և քիմիական արդյունաբերության մեջ ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորների կեսից ավելին կենտրոնացված է օժանդակ արտադրամասերում։

Ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված հիմնական և օժանդակ բանվորների հարաբերակցությունը Հայաստանի արդյունաբերությունում (տոկոսներով)

| Արդյունաբերության ճյուղեր | Հիմնական բանվորներ 1959 թ. | Օժանդակ բանվորներ 1959 թ. | Հիմնական բանվորներ 1965 թ. | Օժանդակ բանվորներ 1965 թ. |
|---|---|---|---|---|
| Գունավոր մետալուրգիայի | 10,0 | 90,0 | 13,0 | 87,0 |
| Էլեկտրաէներգիայի | — | 100,0 | 6,5 | 93,5 |
| Մեքենաշինական և մետաղամշակման | 36,4 | 63,6 | 43,0 | 57,0 |
| Քիմիական | 20,0 | 80,0 | 22,0 | 78,0 |
| Փայտամշակման | 5,5 | 94,5 | 11,0 | 89,0 |
| Շինանյութերի | 53,9 | 46,1 | 56,0 | 44,0 |
| Թեթև | 26,7 | 73,3 | 39,0 | 61,0 |
| Սննդի | 16,8 | 83,2 | 28,0 | 72,0 |
| Պոլիգրաֆ | 16,0 | 84,0 | 13,0 | 87,0 |
| Ընդամենը՝ | 30,5 | 69,5 | 35,8 | 64,2 |

Հանրապետության արդյունաբերության մեջ ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորների 80,1 տոկոսը հիմնականում կենտրոնացված է սննդի (18 տոկոս), թեթև (17 տոկոս), մեքենաշինական և մետաղամշակման (22,3 տոկոս), շինանյութերի արդյունաբերության մեջ (22,9 տոկոս)։ Ձեռքի ծանր աշխատանքով զբաղված հիմնական բանվորների ընդհանուր թվի մեջ այդ ճյուղերի տեսակարար կշիռը 89 տոկոս է, իսկ օժանդակ բանվորներինը՝ 78։ Մի շարք ճյուղերում ձեռքի ծանր աշխատանքով զբաղված օժանդակ բանվորների աճի տեմպերը, հիմնական բանվորների համեմատությամբ, ավելի բարձր են եղել։

Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, շատ ձեռնարկություններում ծանր աշխատանքով զբաղված հիմնական և օժանդակ բանվորների աշխատանքը փոխադարձ կապված են միմյանց։ Ուստի ձեռքի ծանր աշխատանքի ծախսումները նպատակահարմար է կրճատել կոմպլեքս կարգով։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ներդրումներն առավել արդյունավետ կլինեն այնտեղ, որտեղ մեքենայացված սարքավորումների տեղադրմամբ կկրճատվեն մեծ թվով ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորներ։

Հիմնական և օժանդակ արտադրամասերում կապիտալ ներդրումների արդյունավետության հարցի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ շատ դեպքերում միևնույն գումարի ներդրումներն ավելի արդյունավետ են օժանդակ արտադրամասերում։ Այդ դեպքում յուրաքանչյուր ռուբլի լրացուցիչ կապիտալ ներդրումներից առավել մեծ տնտեսում (հատկապես կենդանի աշխատանքի) է ստացվում այն ձեռնարկություններում, որտեղ օժանդակ բանվորների աշխատանքի մեքենայացման մակարդակը ցածր է։

Հիմնական և օժանդակ արտադրամասերում ներդրվող միջոցների արդյունավետության հարցի դիֆերենցված ուսումնասիրությունը արդարացված է և արժանի է լուրջ ուշադրության, հատկապես նկատի ունենալով օժանդակ բանվորների աշխատանքի ցածր մեքենայացման մակարդակը ինչպես հանրապետության, այնպես էլ Միության արդյունաբերության մեջ։

Արդյունաբերության տարբեր ճյուղերի աշխատանքի բարձր տեխնիկական զինվածություն ունեցող ձեռնարկություններում ֆիզիկական ծանր աշխատանքի վերացման պրոցեսի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վերջինս, առաջին հերթին, ավելի ինտենսիվ է իրագործվում հիմնական պրոցեսների և աշխատանքների գծով, ապա հետզհետե տարածվում օժանդակ պրոցեսների ու գործառնությունների վրա և ավարտվում է ավելի վաղ, քան հիմնական արտադրության առանձին պրոցեսներում։

Ներկայումս ծանր աշխատանքով զբաղված օժանդակ բանվորների մոտ մեկ երրորդը ամբարձիչ տրանսպորտային և բեռնման-բեռնաթափման գործառնություններում զբաղվածներն են։ Նրանք կազմում են ձեռքի աշխատանքով զբաղված տրանսպորտային բանվորների 77 և հանրապետության արդյունաբերության տրանսպորտային բանվորների 43,5 տոկոսը։ Հայաստանի արդյունաբերությունում ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորների զգալի կրճատումը, առաջին հերթին, պետք է կատարվի օժանդակ բանվորների և, հատկապես, տրանսպորտային գործառնություններում զբաղված բանվորների գծով, որովհետև նրանց աշխատանքը ծանր է և զգալի չափով տարբերվում է ձեռքի այլ աշխատանքներից։ Այս խմբի բանվորների գերակշռող մասը զբաղված է բեռնման-բեռնաթափման աշխատանքներում, իսկ փոքր մասը՝ տեղափոխման պրոցեսներում։ Մինչ այժմ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում առավելապես մեքենայացվել են ամբարձիչ-տրանսպորտային աշխատանքները և համեմատաբար, ավելի դանդաղ՝ բեռնման-բեռնաթափման գործառնությունները։ 1965 թ. ձեռքի ծանր աշխատանքով զբաղված տրանսպորտային բանվորների 60 տոկոսը կենտրոնացված են շինանյութերի (21 տոկոս), մեքենաշինության և մետաղամշակման (19,7 տոկոս) ու սննդարդյունաբերության մեջ (19,3 տոկոս)։ Ուստի, տրանսպորտային պրոցեսներից ձեռքի ծանր աշխատանքի կրճատումը և տրանսպորտում բանող բանվորների աշխատանքի մեքենայացման մակարդակի բարձրացումը պետք է իրագործել արդյունաբերության նշված ճյուղերում։

Միաժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել, որ առավել աշխատատար ներգործարանային տրանսպորտային գործառնությունների մեքենայացումը, բանվորների ձեռքի ծանր աշխատանքը թեթևացնելուց բացի, ունի կարևոր նշանակություն և այն առումով, որ տրանսպորտը (հատկապես մեքենայացված) վեր է ածվում արտադրապրոցեսը կազմակերպող ու դրա ռիթմիկ ընթացքն ապահովող գործոնի։

Տրանսպորտում աշխատող բանվորներից հետո, ձեռքի ծանր աշխատանքով է զբաղված արդյունաբերության օժանդակ բանվորների զգալի մասը։ Ակներև է, որ այստեղ ձեռքի ծանր աշխատանքով զբաղված բանվորների տեսակարար կշիռն ավելի բարձր է, քան տրանսպորտում բանող բանվորներինը։ Օժանդակ բանվորների աշխատապրոցեսների ցածր մեքենայացման մակարդակը բացատրվում է նրանով, որ նրանց աշխատանքի մեքե-



նայացման հնարավորություններն ավելի սահմանափակ են, քան տրանսպորտային գործառնություններում զբաղված բանվորներինը։ Օժանդակ գործողությունների բազմապիսությունն ու տարբեր բնույթը դժվարացնում է մեքենայացումը։ Հետևաբար, օժանդակ բանվորների աշխատանքի մեքենայացման հետ կապված հարցերի լուծումը, ճյուղային առումով նպատակահարմար է կիրառել հերթականորեն՝ առավելությունը տալով համեմատաբար միատարր և կրկնվող բնույթ ունեցող աշխատանքին։

Հանրապետության արդյունաբերության մեջ ձեռքի ծանր աշխատանքով զբաղված օժանդակ բանվորների զգալի մասը սննդարդյունաբերության և մեքենաշինության ճյուղերում են ու դրանց պահեստային տնտեսություններում։

Անհրաժեշտ է նշել, որ շոգեհնոցների կենտրոնացմամբ, գազիֆիկացմամբ և հնոցապանների աշխատանքի մեքենայացմամբ, կրճատվել է էներգաուժային և էներգաջերմային տնտեսություններում զբաղված ձեռքի ծանր աշխատանք կատարող բանվորների թիվը։ Ձեռքի ծանր աշխատանք կատարող բանվորների ավելի քան 70 տոկոսը զբաղված է տրանսպորտային օժանդակ աշխատանքների և պահեստային տնտեսություններում, այդ իսկ պատճառով ֆունկցիոնալ մյուս խմբերը չենք ուսումնասիրել։ Նշված խմբերի բանվորների տեսակարար կշիռը միայն չորս ճյուղերում հասնում է արդյունաբերության մեջ ծանր աշխատանքով զբաղված բոլոր բանվորների 50, իսկ օժանդակ բանվորների՝ 72,8 տոկոսին, որից սննդարդյունաբերության մեջ՝ 26, մեքենաշինական և մետաղամշակման՝ 21,5, տեքստիլ արդյունաբերությունում՝ 13 և շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 13 տոկոս։

Այս բոլորից հետևում է, որ հանրապետության արդյունաբերության նշված ճյուղերում տրանսպորտային-փոխադրման, պահեստային ու օժանդակ աշխատանքների մեքենայացումն առաջնահերթ խնդիր է։ Դա առավել անհրաժեշտ է, որովհետև ֆիզիկական ծանր աշխատանք կատարող բանվորների ընդհանուր թվում կանայք զգալի տոկոս են կազմում (15 տոկոս)։ Ընդ որում, քիմիական արդյունաբերության մեջ այն հասնում է 19,4, սննդարդյունաբերությունում՝ 26,1, փայտամշակման մեջ՝ 29,3, շինանյութերի արդյունաբերությունում՝ 43,4 տոկոսի։

Հաշվումները ցույց են տվել, որ ֆիզիկական ծանր աշխատանք կատարող բանվորուհիները գերազանցապես զբաղված են տրանսպորտային-փոխադրման, բարձման-բեռնաթափման, պահեստային և օժանդակ գործողություններում։ Ինչպես տեսնում ենք, օժանդակ աշխատանքների և գործողությունների մեքենայացումն այդ տեսակետից, կարևորագույն խնդիր է, որը հնարավոր է լուծել արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացմամբ։

Ուսումնասիրությունից երևում է, որ արդյունաբերական ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և նոր տեխնիկայի ներդրման ներկա տեմպերը չեն ապահովում ֆիզիկական ծանր աշխատանքի վերացումը նախատեսված մոտակա տարիներում։ Եթե ֆիզիկական ծանր աշխատանքների վերացման ներկա տեմպերը պահպանվեն ընթացիկ և առաջիկա հնգամյակներում, ապա ուսումնասիրված ձեռնարկությունների բանվորների աշխատանքային գործունեության թեթևացման ուղղությամբ որակական փոփոխություններ և լուրջ տեղաշարժեր չեն լինի։

Լ. Ս. ՀԱԿՈԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՂԸ

Ժամանակակից ֆրանսիական գրականության բնագավառում առհասարակ և թատերգության մեջ առանձնապես՝ աչքի է զարնում Արթուր Ադամովի հեղափոխական ոգով տոգորված ստեղծագործությունը:

Արթուր Ադամովը մեր օրերի ականավոր ֆրանսիական դրամատուրգն է: Իր ստեղծագործություններում բեմ բարձրացնելով սոցիալ-քաղաքական սուր իրավիճակներ՝ նա քննադատորեն արտացոլել է ժամանակակից կապիտալիստական աշխարհի ճգնաժամը:

Արթուր Ադամովը (ծագումով հայ) ծնվել է Կիսլովոդսկում, 1908 թ.: Սովետական գրաքննադատությունը բարձր է գնահատում Արթուր Ադամով-դրամատուրգին, նրա առաջադեմ հայացքները պատմական պրոցեսի վերաբերյալ, որոնք մարմնացել են հատկապես ժամանակակից կյանքի շնչով հագեցած սքանչելի պիեսներում, նրա սոցիալական դիրքորոշման մեջ: Ֆրանսիական այդ առաջավոր դրամատուրգը վճռականապես ծառանում է անձնական իշխանության դեմ, մերկացնում օասովականների ծայրահեղ քաղաքականությունն ու գործարքները և ֆրանսիական ողջ առաջավոր մտավորականության հետ մեկտեղ ընտրությունների ժամանակ իր ձայնն է տալիս ֆրանսիական կոմունիստական կուսակցության թեկնածուների օգտին (տե՛ս **М. Н.** Черневич, А. Л. Штейн, М. А. Яхонтова, История французской литературы. Изд. «Просвещение», М. 1965, стр. 587. Deux lèttres à «L'Humanité», 17 juin, 1968, № 7407):

Վաղ հասակից է Ա. Ադամովը նվիրվել գրականությանը: Փարիզում նա հարել է գրական այնպիսի ուղղությունների, ինչպիսիք էին՝ սյուռեալիզմը կամ էքսպրեսիոնիզմը, որոնց երևան գալը կապված էր ռադիկալ տրամադրություններով համակված, բայց ինքնապարփակ մտավորականությանը պատկանող ստեղծագործող երիտասարդության գործունեության հետ: Սյուռեալիզմը ձևավորվում էր իբրև պոետական դպրոց, բայց շուտով ընդգրկեց նաև գրական այլ ժանրեր, միաժամանակ ազդելով կերպարվեստի, թատրոնի և երաժշտության վրա:

Այդ տարիներին Ադամովի վրա ազդեց, հատկապես, գրական այս ուղղության գորշությունն ու մռայլությունը: Հետագայում այդ տարիները նա անվանեց «ամոթալի ժամանակներ»: Պարադոքսներով ու ճշմարտությամբ հագեցած ստեղծագործությունների համարձակ ու անվախ հեղինակի՝ Արշակ Չոպանյանի արխիվում պահպանված նյութերը բացահայտում են Արթուր Ադամովի գրական գործունեության հետաքրքրական էջերից մեկը: Չոպանյանը, ինչպես վկայում են Ադամովի նամակները, ամենադրական դերն է խաղացել նրա վաղ շրջանի ստեղծագործական զարգացման համար:

Երբեմնի հարուստ նավթատիրոջ որդին՝ Ադամովը, 1944 թ. ավարտելով իր առաջին գիրքը՝ *Խոստովանությունը*, ֆինանսական ծանր կացության մեջ ընկավ: Նա փող չուներ իր գիրքը մեքենագրել տալու համար: Նրան օգնեց Արշակ Չոպանյանը: Ա. Ադամովը տարբեր հարցերով հաճախ է դիմել իր ուսուցչին, համոզված, որ միայն մարդկային վեհ հատկություններով օժտված այդ մարդը երբեք չի մերժի իրեն:

1944 թ. հուլիսի 5-ին Ադամովն իր ուսուցչին գրած նամակում տագնապով հայտնում է, որ գուցե ստիպված լինի կրճատել *Խոստովանություն* գրքի լավագույն էջերը, ուր խոսվում է «ամոթալի ժամանակների» մասին, քանի որ «Gallimard» խմբագրությունը չէր հանդուրժում, երբ այդ մասին խոսվում էր (տե՛ս Արշակ Չոպանյանի արխիվը: Նամակ № 17, ֆրանսերեն):



Այդպիսին էր բուրժուական իրականությունը: Դեռևս 1936 թ. Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության VIII համագումարում, իր զեկուցման մեջ Մորիս Թորեզն ասաց. «Այսպես կոչված մեծ մամուլը, որն, առաջին հերթին, հասարակական կարծիքի ձևավորման միջոց է, աղճատում է իր ընթերցողների կարծիքը, հրահրում նրանց նախապաշարմունքները և սահմանափակում նրանց աշխարհայացքը» («Избр. произведения», Госиздат полит. литературы, М., 1959, т. I, стр. 122):

Ջնայած մեծ մամուլը ջանում էր ներգործել շնորհալի գրողների վրա, Ա. Ադամովը, ինչպես ցույց է տալիս նրա գրական հետագա գործունեությունը, վճռականապես հրաժարվեց «ամոթալի ժամանակներից», անցնելով ռեալիզմի դիրքերը: Դժվարին էր Ադամովի այդ ուղին: *Խոստովանություն* գրքից հետո (1946 թ.), որն ասես երիտասարդ դրամատուրգի խոստովանանքն էր, 1950 թ. լույս է տեսնում *Ներխուժումը*, իսկ 1952 թ.՝ *Պարոդիան*, որոնք ուղղված են բուլվարականության դեմ: Այս պիեսներում Ադամովն ինքնատիպ, յուրովի է նկարագրել հետպատերազմյան քաոսը և անհանգստությունն ապագայի համար: Բայց նրա առաջին հերոսները անելանելի վիճակում գտնվող անօգնական մարիոնետներ էին, սոցիալապես ու հոգեբանորեն մեկուսացած: Դրանց մեջ վառ երևում են հետքերն, այսպես կոչված, «անհեթեթ թատրոնի», որի դավանանքն էր կյանքի աննպատակայնության համոզմունքը և դրամատիկական արվեստի՝ իրեն նախորդած բոլոր տեսակների նիհիլիստական ժխտումը: Դրա արդյունքն են Ադամովի առաջին գործող անձերի իմաստազուրկ գոյությունը, պիեսների ծայրաստիճան պեսիմիզմը (см. **Антология новейшей французской драматургии** (1935—1965), изд. «Просвещение», Л., 1967, стр. 26—27, 47—48):

Այժմ Ադամովն ինքն է խոստովանում այդ: «Այսօր, վերընթերցնելով *Պարոդիան*,— գրում է նա,— չխոսելով նույնիսկ դրա կառուցվածքային թերությունների մասին, որոնք հատուկ էին իմ վաղ շրջանի բոլոր պիեսներին, ես հանգում եմ այն եզրակացության, որ իմ առջև շատ հեշտ խնդիր եմ դրել: Կյանքին ես նայել եմ բոչունի բարձունքից, որի հետևանքով ստեղծել եմ գրեթե միմյանց փոխարինող անձնավորություններ, միշտ իրար նման, մի խոսքով՝ մարիոնետներ» (**A. Adamov, Théâtre Gallimard, 1955, p. 8**):

Ադամովը «անտի-դրաման» է խարազանում նաև խոսելով *Մեծ և փոքր մանյովրներ* պիեսի մասին, որն ինքնաքննադատորեն անվանում է հիմնովին կեղծ: Այսպիսով, ֆրանսիական դրամատուրգը վճռականապես ծառանում է կյանքի անիմաստությունը, մարդկային թուլությունն ու անօգնականությունը ցույց տալու ձգտման դեմ: 50-ական թվականների կեսերին Ադամովը լիովին համոզվում է, որ «անտի-դրաման» անհեռանկար է և աստիճանաբար հրաժարվում է դրանից: *Կյանքի իմաստը* պիեսն ասես թե ժամանակակից թատրոնի այդ ուղղությունից հեռանալու առաջին փորձերից էր: Պիեսում հեղինակն ստեղծում է ընտանեկան բախումների դրամատիկական պատկեր— պայքարը հոր և որդիների, հնի ու նորի, պահպանողական ու հեղափոխական տրամադրությունների միջև: Թեև գործողությունը տեղի է ունենում ժամանակից ու տարածությունից դուրս, նոր, հերոս հեղափոխականների հանդես գալը լուրջ նախադրյալներ է ստեղծում Ա. Ադամովի հեղափոխական դրամատուրգիայի ձևավորման համար:

1955 թ. Ադամովն ավարտում է իր նոր պիեսը՝ *Պինգ-պոնգը*: Այն չի կարելի նրա դրամատուրգիայի կտրուկ շրջադարձը համարել: Այդուհանդերձ, հեղինակն այստեղ ձգտում է կերպարները ներկայացնել պատմական, սոցիալական կոնկրետ զարգացման մեջ: Թեև *Պինգ-պոնգը* գոհացրել է հեղինակին, այնուամենայնիվ, նա գտնում էր, որ թե՛ հասարակության վիճակը և թե ժամանակի զարգացումը բավարար չափով չեն զգացվում պիեսում: Ի դեպ, մեր կարծիքով, այնտեղ որոշակի և բավական բացահայտ են XX դարի բուրժուական հասարակության մեջ տեղի ունեցող տնտեսական վերելքն ու տեխնիկական առաջընթացը, որը ծառայում է ձեռնարկատերերի շահադիտական նպատակներին:

Ադամովն իրավամբ նշում է. «...երբ ինձ վիճակված է ցույց տալ «դրամի մեքենան» (էլեկտրա-ավտոմատացված մեքենա, որի մեջ խաղացողները փող են նետում որևէ մրցանակ շահելու համար— Մ. Պ.), ապա ես ստիպված եմ նույնքան մանրակրկիտ ու լրջորեն ուսումնասիրել սոցիալական մեծ մեքենայի անիվների սխեմը» (նույն տեղը, էջ 17):

Ա. Ադամովի ստեղծագործական զարգացման կարևոր էտապն է *Պաոլո-Պաոլի* (1957 թ.) կատակերգությունը, որը բեմադրել է ռեժիսյոր Ռ. Պլանշոնը կոմեդիայի թատրոնում: Գործողությունն ընթանում է XX դարի առաջին տասնամյակում (1900—1914 թթ.): Դրամատուրգն իր նկարագրած ժամանակաշրջանն արտացոլելու համար կիրառում է արտահայտչական տարբեր ձևեր: Բայց նրա կատակերգություններում ամենագլխավորը ձեռներեց բուրժուայի մերկացումն է, որը հարստանում էր՝ կանացի փափուկ նորաձևությունների սպեկուլյացիան փոխարինելով իմպերիալիստական պատերազմի և զինվորական մատակարարման սպեկուլյացիայով: Բացի այդ, Ադամովն ստեղծեց բանվոր դասակարգի ներկայացուցչին՝ նոր հերոսին— Մարպոյին: Այդպիսով դրամատուրգը լուծեց իր ստեղծագործության կարևորագույն խնդիրը— բանվորների միջոցով արտահայտել իր պրոլետարական, հեղափոխական զգացմունքները:

«Վերջապես,— գրում է Ադամովը,— կարողացա դուրս գալ այդ «տնային կյանքից», ուր շնչահեղձ էի լինում և ստիպեցի խոսել ո՛չ միայն բուրժուային, այլև ողջ աշխարհին, աշխարհի մեծամասնությունը կազմողներին... պրոլետարիատին» (Arthur Adamov, Théâtre Gallimard, 1961):

Սոցիալիստական ռեալիզմի գրականության՝ որպես համաշխարհային նշանակություն ունեցող գրականության զարգացումը ստեղծագործական ամուր հիմք ուներ: Ա. Ադամովի *Պաոլո-Պաոլի* պիեսը հենց նրան հասցրեց սոցիալիստական ռեալիզմին: Բայց երբ այդ բանը Էլզա Տրիոլեն հայտնեց դրամատուրգին, սկզբում նա «զարմացավ. քանի որ այդ մասին երբեք չէր խորհել, բայց փոքր-ինչ մտածելով պատասխանեց. այո՛, այդպես էլ պետք է լիներ» (Lui Aragon. Il faut appeler les choses par leur nom, Edité par le PCF, P, avril, 1959, p. 55):

Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունն արվեստի և գրականության բնագավառում չէր ընդունում առաջավոր գրողների աղանդավորական մեկուսացվածությունը և կոչ էր անում նրանց՝ միավորվել ու համագործակցել բոլոր հումանիստ գրողների, նացիզմի և պատերազմի թշնամիների հետ: Այս բնագավառում ՖԿԿ-ի գլխավոր խնդիրն էր՝ ստեղծել ռեալիստական առաջադեմ գրականության միասնական, քաղաքական ռեակցիային ակտիվ հակազդող ճակատ:

Հասնելով այն բանին, որ առաջավոր գրողների ստեղծագործությունները՝ պահպանելով հեղափոխական ոգին և բարձրացնելով համազգային նշանակություն ունեցող հարցեր, վայելում են ընթերցող առավել լայն զանգվածների համակրանքը, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը միշտ հիշեցնում է, որ անհրաժեշտ է ստեղծագործաբար յուրացնել ազգային դասական ժառանգությունը: Այդ միտքն էր արտահայտված 1950 թ. ՖԿԿ XII համագումարում Մորիս Թորեզի՝ կոմունիստ գրողներին ուղղված խոսքում:

1964 թ. մայիսի 9-ին այդ հոդվածի հեղինակին հասցեագրած իր նամակում Մորիս Թորեզը գրում է. «...գրականության բնագավառում, ինչպես ամենուր, ես աշխատել եմ կիրառել Լենինի ուսմունքը և հատկապես օգնել կոմունիստ կամ *անկուսակցական* գրողներին՝ վերականգնելու և զարգացնելու ֆրանսիական մեծ հումանիստների հարուստ տրադիցիաները, ստեղծելու ռեալիստական և ազգային ստեղծագործություններ...» (*ընդգծումը մերն է— Պ. Մ.*):

Ֆրանսիական կոմունիստական կուսակցությունը, պահպանելով իրենց հերոս հայրերի նրվաճումներն ու լավագույն տրադիցիաները, 1951 թ. հրատարակեց *Կեցցե՛ Կոմունան* գիտապատմական տրակտատը («Vive la Commune!»), նվիրված Մորիս Թորեզի ծննդյան 51 և փարիզյան կոմունայի 80-ամյակին, որը, հավանաբար, ոգևորեց Արթուր Ադամովին՝ ստեղծելու *Յոթանասունմեկի գարունը* մոնումենտալ հերոսապատումը: Վերլուծելով իր *Յոթանասունմեկի գարունը* պիեսը, Արթուր Ադամովը վկայակոչում էր թերևս, այդ տրակտատը, գրելով, թե Փարիզյան կոմունան լուսաբանող այդ աշխատությունը հրապուրել է նրան և ոգեշնչել ուսումնասիրելու պատմության այդ արտասովոր ու բացառիկ ժամանակաշրջանը, մանավանդ՝ «հանրապետական հրատարակություններն անհիմն կերպով լռության են մատնում այն»: «Ես գիտակցեցի իմ պարտքը բանվոր դասակարգի՝ աշխարհում առաջին իշխանության նկատմամբ» (A. Adamov, Théâtre Gallimard, 1955, p. 7):

Արթուր Ադամովը հանգամանորեն ուսումնասիրել է Փարիզյան կոմունայի արխիվային փաստաթղթերը. պիեսի բնագրում զետեղվել են Թիերի և Լուի Բլանի խոսքերը՝ վերցված «Կոմունայի պաշտոնական թերթից» («Journal Officiel de la Commune»): Ադամովը պիեսում մարմնավորել է այնպիսի կոմունիստների, ինչպիսիք են՝ Կամելիան, Ռիգոն, Վալեսը՝ անվանափոխված (Ռուղե, Ֆուսիե, Տոնտոն): Պրոլետարիատի այդ ներկայացուցիչները գրեթե հայտնի չէին մինչև 1871 թ. մարտի 18-ը. պիեսում նրանք ավելի մնական ու արի են, քան բանվոր Մարպոն՝ *Պաոլո-Պաոլի*-ում, որը սիմվոլիկ էր իր դասակարգի միակ ներկայացուցիչը լինելու պատճառով: Արթուր Ադամովը ֆրանսիական ժողովրդին հիշեցնում է այն դժվարին օրերը, երբ Փարիզի բանվորներն ու զինվորներն իրենց ձեռքը վերցրին իշխանությունը, երևան բերելով պատմության մեջ մինչ այդ չտեսնված հերոսություն և պահեցին այն 73 օր:

Արթուր Ադամովին միշտ հրապուրել են այն ամենը, ինչ լույս են ընծայել առաջադեմ հրատարակությունները. բնականաբար, այդ հնարավորություն էր տալիս նրան ո՛չ միայն անդրադառնալու անցյալի հեղափոխական, այլև ժամանակակից սոցիալ-քաղաքական թեմաներին:

Ֆրանսիական դրամատուրգի՝ վերջին տարիների պիեսները գեղարվեստական ստեղծագործության բնագավառում նրա պրոգրեսիվ դիրքորոշման վառ ապացույցն են: Այժմ ավելի ու ավելի է բորբոքվում աշխարհի ողջ առաջադեմ հասարակայնության զայրույթը ընդդեմ ԱՄՆ-ում և Հարավային Աֆրիկայում հայտնի շրջաններն ծավալած ռասիստական քաղաքականության:

Այդ հրատապ քաղաքական թեման է արտահայտել Ադամովը իր հակառասիստական *Տականքների քաղաքականությունը* պիեսում, որի հաջող բեմադրությունը մեծ ընդունելություն է գտնում Ֆրանսիայում: Հեղինակը պատմում է նեգրին սպանած սպիտակի դատավարությունը «մի երկրում, որը կարող էր լինել միայն Հարավային Աֆրիկան, կամ ԱՄՆ («L'Humanité», 15 մայիսի, 1968 թ., № 7379):

Արթուր Ադամովին հուզում է նաև մի այլ, ոչ պակաս կարևոր թեմա— ամերիկյան գիշատիչների կողմից ռմբակոծվող վիետնամական ժողովրդի ճակատագիրը:

Ֆրանսիական հայտնի ժուռնալիստ Ֆիլիպ Մադրալը 1968 թ. նոյեմբերի 24-ին, «**Известия**» թերթում տպագրված *Թատերական Փարիզը* հոդվածում հայտնում է, որ Օբերվիլիե թատրոնը (Փարիզի մշտական պրոֆեսիոնալ թատրոնը) «պատրաստվում է բեմադրելու Ա. Ադամովի *Շրջանակներից, սահմաններից դուրս* պիեսը, որն արտացոլում է ֆրանսիական մտավորականության վերաբերմունքը Վիետնամի պատերազմի նկատմամբ:

Ֆրանսիական հիանալի դրամատուրգ, հայ ժողովրդի զավակ Արթուր Ադամովի ստեղծագործություններն ըստ արժանվույն են գնահատել լավագույն քննադատներն ու ռեժիսյորները: Ֆրանսիական հայտնի բեմադրող Ժան Վիլարը 1967 թ. մարտին գալով Մոսկվա, հայտնեց, որ ցանկանում է կրկին գալ Սովետների երկրի մայրաքաղաքը՝ ֆրանսիական ժամանակակից դրամատուրգների նոր պիեսներով: Սովետական հանդիսատեսին ներկայացվող լավագույն ըստեղծագործությունների մեջ կլինեն նաև Ադամովի պիեսները («L'Humanité», 1967 թ. մարտի 30):

Արթուր Ադամովի ստեղծագործական ուղին ժամանակակից մեծ արվեստագետի ուղին է, արվեստագետ, որը կարողացավ հեռանալ «աբսուրդ թատրոնից» և ստեղծել նոր թատրոն, ժամանակակից ոգով հագեցած, սոցիալական ու քաղաքական կյանքի կարևոր խնդիրներն արտացոլող նոր պիեսներ, շեշտը դնելով մեր դարի ողջ առաջադեմ հասարակայնությանը հուզող մոտիվների վրա:

*Տականքների քաղաքականությունը* և *Շրջանակներից, սահմաններից դուրս* պիեսները՝ Արթուր Ադամովին դարձրին սկզբունքային անաչառությամբ ԱՄՆ-ի իմպերիալիստական քաղաքականությունը քննադատող, ժամանակակից թատերական աշխարհի լավագույն դրամատուրգներից մեկը:



Դեռևս հիսունական թվականներին Ադամովը, խզելով իր կապերը հակաթատրոնականներից հարեց սուր հասարակական, քաղաքական բնույթ ունեցող թատրոնին, իրավամբ նկատում է Տ. Պրոսկուռնիկովան: Վերջերս էր, երբ Ժերար Ֆիլիպի թատրոնը բեմադրեց նրա *Տականքների քաղաքականությունը* պիեսը, որը մերկացնում է ցեղայնության անասնական տեսությունն ու պրակտիկան բուրժուական աշխարհում: Ուստի, իրավացի է սովետական թատերագետը, երբ գրում է, որ Ադամովի *Պաոլո Պաոլիի* բեմադրությամբ ֆրանսիական առաջավոր մտքի ներկայացուցիչները հարեցին այն հոսանքին, ըստ որի թատրոնը պետք է պատասխանի քաղաքական հրատապ հարցերին: Եվ միանգամայն իրավացի է Պրոսկուռնիկովան, երբ ասում է, թե ֆրանսիական թատրոնի նկրտումների փոփոխությունն առավելապես դրսևորված է արդի ֆրանսիական շնորհալի դրամատուրգներից մեկի՝ Արթուր Ադամովի ստեղծագործությունում:

Ուստի պատահական չէ, որ բուրժուական թատերաքննադատության ակնառու գրիչներն Ադամովի լավագույն գործերը որակում են որպես «ագրեսիվ ու թունավոր սոցիալիզմ կամ իբրև «Արևելյան Բեռլինի սոցիալիստական ֆրեսկների ոգով» գրված երկ: Զարմանալի չէր, որ *Յոթանասունմեկ թվականի գարունը* նրանք դիմավորեցին սվիններով, նրան համարելով Ռ. Ռոլանի հեղափոխական անավարտ ստեղծագործության շարունակողը: Հիրավի, Ադամովի այս երկը օգնելու է մարդկանց՝ ըմբռնելու, որ բանվոր դասակարգի հեղափոխական դերը Ֆրանսիայում շարունակվում է: «Դրամատուրգն անողոք է նրանց նկատմամբ, ում պատկերել է իր պիեսում: Սրբազան Եվրոպան կործանման է դատապարտված, նրա մահն անխուսափելի է» (տե՛ս «**Иностранная литература**», 1969, № 4, стр. 196—200):

**Մ. Ա. ՊԱՆԿՈ**

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈԼՈՐՏԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

Մենք հաճախ ենք լսում ու կարդում, թե ինչպես է մարդը վերափոխում բնությունը, թափանցում տիեզերքի խորքը, աշխատում արտադրության մեջ, ստեղծում նոր մեքենաներ ու նյութական այլ բարիքներ։ Սակայն մեզ համար, թերևս, խորթ է հնչում, երբ հենց մարդուն ենք դիտում որպես աշխատանքի «առարկա», երբ տարբեր տիպի ծառայությունների շնորհիվ վերափոխվում են, զարգանում նրա ֆիզիկական ու հոգևոր ունակությունները, թեթևանում ու հաճելի դառնում ընտանեկան ու հասարակական կյանքը։

Բնակչությանը ցույց տրվող ծառայությունների ոլորտը ժողովրդական տնտեսության այն բնագավառն է, որտեղ սոցիալ-տնտեսական բնույթի գիտահետազոտական աշխատանքները նոր են ծավալվում։ Այդ տեսակետից ողջունելի է, որ հանրապետության պետպլանի տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտում ստեղծվել է ծառայությունների ոլորտի բաժին, որտեղ մշակվում են բնակչության կոմունալբնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հրատապ պրոբլեմները։

Այդ խնդիրներին է նվիրված Հ. Ս. Պետրոսյանի մենագրությունը[1], որը ծառայությունների ոլորտին վերաբերող առաջին աշխատություններից մեկն է։ Դեռ մի քանի տարի առաջ Հ. Պետրոսյանը Մոսկվայում հրատարակեց «Внерабочее время трудящихся в СССР» խորագրով մենագրությունը։ Գրախոսվող աշխատությունը, ըստ էության, առաջինի օրգանական շարունակությունն է և որոշակի հետաքրքրություն է ներկայացնում գիտական հասարակայնության համար։

Աշխատության առաջին գլխում՝ Ծառայությունները որպես աշխատավորների բարեկեցության բարձրացման կարևոր գործոն, հեղինակը բացահայտում է ծառայությունների էությունը և ընդգրկման ոլորտը, ցույց տալիս դրանց սոցիալական ու ժողովրդատնտեսական նշանակությունը, պարզում այն գործոնները, որոնք պայմանավորում են ծառայություններից օգտվելու հնարավորությունները։

Տեսական և գործնական հետաքրքրություն է ներկայացնում այն հարցը, թե ինչ են «օգտակար արդյունքը» և «օգտակար գործունեությունը», որոնք, ըստ հեղինակի, կազմում են ծառայությունների էությունը։

Հասարակության անդամներին մատուցվող ծառայությունների ծավալի անընդմեջ աճը մեծապես նպաստում է մեր երկրի առանձին շրջանների ու սոցիալական խմբերի կենսապայմանների, մտավոր ու ֆիզիկական աշխատանքների, քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական ու կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացմանը։ Առանձնապես մեծ է ծառայությունների ոլորտի նշանակությունը սովետական ժողովրդի բարեկեցությունն ապահովելու, տնային անարդյունավետ աշխատանքից կանանց ձերբազատելու և հասարակական արտադրության մեջ ներգրավելու գործում։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կնոջ իսկական ազատագրումը, իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքարը «...տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝ նրա մասսայական վերակառուցումը որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն» (Երկեր, հ. 29, էջ 526)։ Գրախոսվող աշխատության մեջ կոմունիստական շինարարության վերջին տարիների ծառայությունների ոլորտի զարգացման կոնկրետ ու փաստական տվյալների հիման վրա ցույց է տրվում լենինյան այդ գաղափարների իրականացումը Սովետական Հայաստանում։

Ահա այն նվաճումները, որոնք ձեռք են բերվել հատկապես այդ տարիներին։

Այսպես, 1959—1965 թթ. հանրապետության քաղաքային բնակֆոնդն ավելացել է ավելի քան 1,5 անգամ՝ յուրաքանչյուր տարի աճելով, միջին հաշվով մոտ 530 հազար քառակուսի մետրով։ Բնակարանային ֆոնդի նման աճը հիմնականում կատարվել է նոր, բարեկարգ բնակելի շենքեր կառուցելու շնորհիվ։ Այդ ժամանակամիջոցում հանրապետության քաղաքներում և բանավաններում, միջին հաշվով, յուրաքանչյուր տարի մոտ 18 հազար նոր բնակարան է շահագործման հանձնվել, որի շնորհիվ իրենց բնակարանային պայմանները բարելավել և նոր բնակարաններ են ստացել տարեկան մոտ 130 հազար աշխատավոր։

1960—1965 թթ. հանրապետության քաղաքների և բանավանների բնակարանային ֆոնդի ջրամատակարարումը և կոյուղու ցանցը 59—60 տոկոսից հասել է 84-ի, կենտրոնական ջեռուցումը՝ 48-ից 79-ի, գազամատակարարումը՝ 12-ից 59 տոկոսի։ 1960 թ. վերջին հանրապետությունում գազիֆիկացվել էր ընդամենը 12 քաղաք (այդ թվում՝ գազատար խողովակային ցանցից օգտվող 2 քաղաք), իսկ 1965 թ. վերջին 23, այդ թվում՝ խողովակային ցանցից օգտվող 9 քաղաք։ Գազատար խողովակների ընդհանուր միագիծ երկարությունը 1960 թ. 62,5 կմ-ից, 1965 թ. հասել է 379 կմ։ Գազիֆիկացված բնակարանների թիվն այդ նույն ժամանակամիջոցում 10,2-ից հասել է 146,5 հազարի, այդ թվում՝ գազատար խողովակային ցանցից օգտվող բնակարանների թիվը՝ 1140-ից 38583-ի։

Լուրջ տեղաշարժեր են կատարվել հանրապետությունում աշխատավորների կենցաղային սպասարկման ասպարեզում։ 1965 թ. ոչ-արդյունաբերական բնույթի ծառայություններ մատուցող արհեստանոցների (ատելյեների) թիվը, չհաշված ընդունման կետերը, աճել է մոտ 80 տոկոսով, այդքանով էլ՝ կատարված աշխատանքների ծավալը, իսկ արդյունաբերական բնույթի ծառայություններ մատուցող արհեստանոցների թիվը՝ 60 տոկոսով. կրկնապատկվել է կատարված աշխատանքների ծավալը։

Առևտրի ու հասարակական սննդի բնագավառում վերջին տարիներին տեղի ունեցած տեղաշարժերը բնութագրող ամենաընդհանուր ցուցանիշն ապրանքաշրջանառության աճի տեմպերն են։ Այսպես, եթե 1940 թ. պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրի ու հասարակական սննդի օբյեկտների համատեղ ապրանքաշրջանառությունը կազմեց 100, ապա 1959-ին այն բոլոր ապրանքների գծով 120 տոկոս էր, այդ թվում՝ պարենային ապրանքներինը՝ 117, իսկ արդյունաբերական ապրանքներինը՝ 122 տոկոս։ 1960 թ. համապատասխանաբար՝ 370, 346 և 401 տոկոս, իսկ 1965-ին՝ 541, 548 և 537 տոկոս։ Այսպիսով, անցած 25 տարում ապրանքաշրջանառությունն աճել է 8,6 անգամ։

Սոցիալիստական շինարարության տարիներին մեծ չափով զարգացել են նաև ներքաղաքային տրանսպորտը, կապը, բժշկական, կուլտուր-լուսավորական, նախադպրոցական, ուսումնական, տեսլային, ֆիզկուլտ, սպորտ և ծառայությունների ոլորտի մի շարք այլ բնագավառներ։

Հ. Պետրոսյանը յուրաքանչյուր կոնկրետ դեպքում հասարակության անդամներին ցույց տրվող ծառայությունները պայմանավորում է որոշակի օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններով, դրանց շարքին դասում աշխատավորների կյանքի պայմանները և կենսամակարդակը, ամսական մեկ շնչին ընկնող եկամուտը, օրվա օրացուցային ռեժիմը, տարվա սեզոնը, զբաղմունքի բնույթը, սեռը և տարիքը, ընտանեկան դրությունը, ընտանիքի կազմը, երեխաների տարիքը, կրթության մակարդակը, կենցաղային տեխնիկայի առկայությունը ընտանիքում։ Այդ գործոններից առավել մանրամասն նա կանգ է առնում «կենսամակարդակի» և «կյանքի պայմանների» վրա։ Պարզելով ու սահմանազատելով այդ երկու հասկացությունները, հեղինակը բացահայտում է դրանց ազդեցությունը ծառայությունների բաշխման վրա։ Նրա այդ հարցադրմանը պետք է համաձայնել, քանի որ խոսքը վերաբերում է պլանավորման կարևորագույն բնագավառներից մեկին, այսինքն՝ այն բանին, թե ինչն է պլանավորվում՝ կենսամակարդա՞կը, թե՞ կենսապայմանները։ Նա հիմնականում ճիշտ սահմանազատելով այդ երկու հասկացությունները, մեր կարծիքով, թույլ է տալիս սխալ, երբ կյանքի պայմանների շարքն է դասում միայն ծառայությունների ոլորտի ճյուղերը։ Չէ՞ որ կյանքի որոշիչ պայմանը նյութական բարիքների արտադրությունն է, որը, դժբախտաբար, վրիպել է հեղինակի տեսադաշտից։

Գրքի երկրորդ գլխում հեղինակը վերլուծում է աշխատավորներին ցույց տրվող ծառայությունների արդի պրակտիկան։ Այստեղ նա բացահայտում է կենսապայմանների տերիտորիալ-շրջանային անհիմն մեծ տարբերությունները, քննադատում բնակչության կենցաղի ու հանգստի կազմակերպման, տնային աշխատանքի մեքենայացման բնագավառում գոյություն ունեցող լուրջ թերությունները։ Բերված տվյալները վկայում են, որ հանրապետության բնակավայրերում չափազանց անհավասարաչափ են տեղաբաշխված կենցաղսպասարկման օբյեկտները, խիստ ցածր են բնակչության սպասարկման կուլտուրան ու կատարած աշխատանքների որա-

[1] Հ. Ս. Պետրոսյան— Ծառայությունների ոլորտը սոցիալիզմի օրոք և նրա կատարելագործման ուղիները։ «Հայաստան» հրատ., 1968, 253 էջ։

կը, դանդաղ են ներդրվում կենցաղային ծառայությունների առաջավոր ձևերը, սահմանվում են չհիմնավորված գներ, իսկ հաճախ խախտվում հաստատված գները:

Նշելով երեխաների խնամքի հասարակական կազմակերպման բարելավման գործում ձեռք բերած նվաճումները, հեղինակն իրավացիորեն մատնանշում է, որ նախադպրոցական հիմնարկությունների կազմակերպումը խիստ ետ է մնում, չեն ստեղծվում մանկական լիարժեք կոմպլեքս-տերիտորիալ հիմնարկություններ, որոնք միավորեն մանկամսուրներն ու մանկապարտեզները, դպրոցները, մանկական ակումբները, պիոներ պալատները, մանկական ստադիոնները, դրանով իսկ ապահովեն երեխաների միասնական դաստիարակությունն ու աշխատավորներին ազատեն երեխաներին սպասարկելու շատ հոգսերից:

Այնուհետև, հեղինակը մանրամասնորեն վերլուծում է հանրապետության քաղաքային բնակարանային ֆոնդի կոմունալ հարմարությունները, ցույց տալիս, որ տնային կառավարչությունները չեն ստեղծում շենքերում տնային լվացքատներ ու խոհանոցներ, կենցաղային վարձույթի կետեր և այլ հարմարություններ: Նա առաջարկում է վերանայել կենցաղում ծախսվող էլեկտրաէներգիայի տարիֆները, խմելու ջրի փոխարեն արդյունաբերության մեջ օգտագործել ստորերկրյա ջրերը:

Ավելի հանգամանորեն կանգ առնելով բնակչության առևտրական սպասարկման վրա, հեղինակը բերում է կոնկրետ ուսումնասիրության արդյունքները, որոնք վկայում են գնումներ կատարելու համար ժամանակի անտեղի մեծ ծախսումները (օրինակ, Երևանի աշխատավորները 11 մթերային ապրանքներ գնելիս կորցնում են մեկ ժամ 43 րոպե, իսկ 10 տեսակ արդյունաբերական ապրանքներ գնելիս՝ 2 ժամ 30 րոպե): Խնդիր է դրվում բարձրացնել մանրածախ առևտրի մասնագիտացման մակարդակը, ռացիոնալ տեղաբաշխել առևտրի և հասարակական սննդի օբյեկտները, լայնորեն արմատավորել առևտրի սպասարկման առաջավոր ձևերը:

Առավելությունը տալով աշխատավորների կենցաղի կազմակերպման հասարակական ձևերին ու ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի արագ զարգացմանը, հեղինակը միաժամանակ գտնում է, որ կենցաղի աստիճանական հանրայնացումը լիովին չի վերացնում տնային աշխատանքի անհրաժեշտությունը: Նշելով տնային աշխատանքի մեքենայացման բնագավառում ձեռք բերած հաջողությունները, աշխատության մեջ թվարկվում են կենցաղային մի շարք մեքենաներ, ավտոմատ սարքեր ու հարմարանքներ, որոնց արտադրության մասսայական կազմակերպումը մասնագիտացված ձեռնարկություններում հնարավորություն կընձեռի զգալի չափով բարձրացնել տնային աշխատանքների մեքենայացման մակարդակը, վերացնել տղամարդու և կնոջ միջև աշխատանքի բաժանման անհավասարությունը:

Աշխատության վերջին՝ երրորդ գլուխը նվիրված է ծառայությունների մատուցման պրակտիկայի հետագա կատարելագործմանը: Ներկայումս ծառայությունների ոլորտը ներկայացնող առանձին ճյուղերի զարգացման պլանավորումը բացարձակ ցուցանիշներով բավարար համարել չի կարելի: Հեղինակը գտնում է, որ «...ներքևից մինչև վերև՝ համապետական մասշտաբով և լայնորեն պետք է պլանավորել ո՛չ թե «կենսամակարդակը», այլ «կենսապայմանները» (էջ 151): Այս դեպքում արդեն հնարավոր է դառնում համեմատել երկրի տարբեր տնտեսական շրջանների ու բնակավայրերի բնակչության նյութական ու կուլտուր-կենցաղային պայմանները (ելնելով ըստ առանձին բնակլիմայական գոտիների մեկ մարդուն ընկնող ծառայություններով ու բարիքներով ապահովվածության, սանիտարահիգիենիկական, բժշկա-ֆիզիոլոգիական, կուլտուր-էսթետիկական և այլ նորմերից) և կատարել համապատասխան հաշվարկներ ու մշակել յուրաքանչյուր հանրապետության, տնտեսական շրջանի, քաղաքի և բնակավայրի զարգացման հեռանկարային պլաններ:

Սպասարկող ճյուղերի օբյեկտների ներքաղաքային տեղաբաշխումը կարգավորելու նպատակով, հեղինակը նպատակահարմար է գտնում խոշոր քաղաքներում մշակել տեղաբաշխման «օպերատիվ պլան-քարտեզներ», որոնք, նրա կարծիքով, կնպաստեն ծառայությունների ոլորտի արդյունավետության բարձրացմանն ու հետագա կատարելագործմանը:

Հ. Պետրոսյանը ծառայությունների ոլորտի զարգացումը կապում է նաև աշխատավորների ապրելակերպն առավել ռացիոնալ ու կոմունիստական հիմունքներով կազմակերպելու պրոբլեմի հետ: Վճռականորեն դատապարտելով բազմաթիվ հետամնաց սովորությունների, բարքերի, կրոնական նախապաշարմունքների, ծեսերի, տոնային անիմաստ խաղերի, տոնական օրերը շռայլ անցկացնելու, պորտաբուծության ու հարբեցողության երևույթները, Հ. Պետրոսյանը գտնում է, որ հասարակությունը չպետք է անտարբեր լինի սոցիալիստական ապրելակերպին խորթ նման երևույթների նկատմամբ: Հասարակությունը պետք է աշխատավորների կենցաղը և ապրելակերպն անմիջականորեն վերցնի իր հսկողության ներքո: Նա առաջարկում է հաճախակի անցկացնել խորհրդակցություններ ու կոնֆերանսներ՝ նվիրված աշխատավորների էսթետիկական ու կոմունիստական դաստիարակությանը, կազմակերպել մասսայական զբոսանքներ ու պարեր, ցուցահանդեսներ, սպորտմրցումներ, բուհերում դասավանդել «սոցիալիստական ու կոմունիստական ապրելակերպը» կուրսը, քաղաքային ու շրջանային սովետների կուլտուրայի բաժինների փոխարեն ստեղծել աշխատավորների հանգստի կազմակերպման ու սպասարկման վարչություններ և այլն:

Մեկ աշխատության մեջ, անկասկած, հնարավոր չէ ընդգրկել և հավասարապես ներկայացնել ծառայության ոլորտի բոլոր ճյուղերը: Այդ պատճառով որոշ ճյուղեր գրքում թույլ են ներկայացված: Օրինակ, բնակչության բժշկական սպասարկման վիճակը քննարկվում է ընդամենը 1,5 էջի վրա, մինչդեռ առևտրի սպասարկմանը հատկացված է 18 էջ: Այստեղ, ըստ երևույթին, որոշ դեր է խաղացել հեղինակի նախասիրությունը: Դրանով կարելի է բացատրել, որ ծառայությունների մակարդակը բնորոշող 9 գործոններից նա փաստորեն կանգ է առնում միայն մեկի՝ աշխատավորների կյանքի պայմանների և կենսամակարդակի վրա: Մեր կարծիքով, ո՛չ կենսապայմանները, և ո՛չ էլ կենսամակարդակը «ծառայությունների բաշխման» գործոն չի կարելի համարել, քանի որ ծառայությունները մտնում են կենսապայմանների ու կենսամակարդակի մեջ: Հետևապես, ամբողջն իր մասի վրա ազդող գործոն լինել չի կարող, էլ չենք ասում այն մասին, որ հեղինակը ծառայություններն ու կենսապայմանները հաճախ նույնացնում է և քննարկում ոչ թե ծառայությունների, այլ կենսապայմանների տարբերությունները:

Պետք է նաև նշել, որ գրքում բերված վիճակագրական ու հատուկ ուսումնասիրության շատ տվյալներ հնացած, երբեմն էլ աղավաղված են ընթերցողին հրամցվում: Ահա թե ինչպես է բնութագրվում Երևանի բնակարանային ֆոնդի կոմունալ հարմարությունները: Այստեղ «առ 1/1—1965 թ. տվյալներով ջրամատակարարմամբ ու կոյուղով ապահովված էր բնակֆոնդի մեկ երրորդից էլ պակաս մասը, կենտրոնական ջեռուցմամբ՝ մեկ չորրորդ, լողարաններով՝ մեկ հինգերորդ մասը և այլն» (էջ 67): Մինչդեռ գրքի 39-րդ էջում նշվում է, որ «Միմիայն 1960—1965 թթ. հանրապետության քաղաքների ու բանավանների բնակարանային ֆոնդի ապահովվածությունը ջրամատակարարմամբ և կոյուղու ցանցով 59—60 տոկոսից հասել է 84 տոկոսի, կենտրոնական ջեռուցմանը՝ 48 տոկոսից 79 տոկոսի, գազինը՝ 12 տոկոսից 59 տոկոսի»: Ինչո՞ւմն է բանը: Մի՞թե Երևանի բնակարանային ֆոնդի կոմունալ հարմարությունները 2—3 անգամ վատ են, քան հանրապետության քաղաքներինը:

Երևանին վերաբերող ցուցանիշները մոտավորապես համընկնում են 1960 թ. հունվարի 1-ի բնակարանային ֆոնդի հաշվառման տվյալներին, իսկ հանրապետության քաղաքային բնակարանային ֆոնդի կոմունալ հարմարությունների փոփոխությունը բնութագրող տվյալներն ընդգրկում են միայն պետական բնակարանային ֆոնդը: Այլ կերպ չէր կարող լինել, քանի որ 1960 թ. հետո բնակարանային ֆոնդի հաշվառում չի անցկացվել: Կամ մի այլ օրինակ. գրքի 21-րդ էջում բերելով 1964 թ. վիճակագրական տվյալները բնակչության մոտ եղած կուլտուր-կենցաղային իրերի վերաբերյալ, նա դրանք ընթերցողին է ներկայացնում 1968 թ. դրությամբ:

Հ. Պետրոսյանն իր աշխատության 44-րդ էջում գրում է. «1935—1936 թթ. մասնավորն արդեն լիովին դուրս մղվեց կենցաղային սպասարկման ոլորտից, և ազգաբնակչության կենցաղային սպասարկմամբ սկսեցին զբաղվել կոոպերատիվ միավորումները»: Սա, իհարկե, չի համապատասխանում իրողությանը: Ճշմարտությունն այն է, որ այդ թվականներին և հետագայում կոոպերատիվ միավորումների հետ միասին, բնակչության կենցաղային սպասարկմամբ զբաղվել են ո՛չ միայն պետական ձեռնարկությունները, այլև մասնավորը՝ թեպետ և փոքր տեսակարար կշռով:

Աշխատության մեջ հաճախ ենք հանդիպում անհաջող արտահայտությունների ու լեզվական անհարթությունների:

Մի փոքր դիտողություն գրքի կառուցվածքի վերաբերյալ: Մեր կարծիքով, առաջին գլխի չորրորդ պարագրաֆը, որը նվիրված է ծառայությունների ոլորտի զարգացմանը Հայաստանում 1959—1965 թթ. և երկրորդ գլխի նյութերի այն մասը, որը վերաբերում է դրա շարունակությանը 1966—1967 թթ., նպատակահարմար է միացնել մեկ առանձին գլխում, վերնագրելով մոտավորապես այսպես՝ Ծառայությունների ոլորտի զարգացումը Հայաստանում: Նկատենք նաև, որ միշտ չէ, որ ծառայությունների ոլորտի ճյուղերի զարգացումը շարադրվում է որոշակի սիստեմով և պահպանվում դրանց տրամաբանական կապը: Գրքում հաճախ չափից ավելի են վկայակոչվում պաշտոնական վավերագրերը:

Հիշատակված թերությունները բոլորովին էլ չեն նսեմացնում գրախոսվող աշխատության տեսական և գործնական արժանիքները: Այն ո՛չ միայն ընթերցողներին ծանոթացնում է ծառայությունների բազմաճյուղ ոլորտի արդի վիճակին, այլև պարունակում է մի շարք հանձնարարականներ, որոնք կօգնեն պլանավորող օրգաններին գիտական հիմքերի վրա դնելու այդ բարդ ու բազմաբովանդակ բնագավառի զարգացման պլանավորումն ու կառավարումը:

Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Բ. Ս. ՄԻՐԶՈՅԱՆ



# ՄԵՐԿԱՑՆՈՂ ՓԱՍՏԵՐ*

Ֆաշիստական հրոսակախմբերի ոճրագործությունները մերկացնող վավերագրերում, ուշադրավ է վերջերս վերահրատարակված ժողովածուն, որը լույս է տեսել մի շարք լեզուներով։

Գրքում զետեղված փաստաթղթերը վկայում են հիտլերյան բարբարոսների ցեղասպան, մարդատյաց մեքենայությունների մասին, որոնք ֆաշիստական Գերմանիայի, նրա պարագլուխների կանխամտածված պետական քաղաքականության հրեշավոր ծրագրի կենսագործումն էին։

Ժողովածուի Գերմանա-ֆաշիստական օկուպացիոն ռեժիմը Սովետական Միության ժամանակավորապես զավթած տերիտորիայում բաժնում զետեղված վավերագրերը բնութագրում են գերմանա-ֆաշիստական իշխանությունների օկուպացիոն քաղաքականության ընդհանուր նպատակները։ Դրանք են՝ զավթել ՍՍՀՄ տերիտորիան, լիկվիդացնել Սովետական պետությունը, ֆիզիկապես ոչնչացնել ռուս ժողովրդի զգալի մասին, արգելք հանդիսանալ ռուսական որևէ ազգային պետության ստեղծմանը։ Այսպես կոչված՝ OCT գլխավոր պլանի համաձայն նախատեսվում էր սովետական տերիտորիայի գաղութացում՝ Գերմանիայից գերմանացիների վերաբնակեցման միջոցով։

«Գերմանիան,— ասել է ֆաշիզմի մոլի գաղափարախոս Ռոզենբերգը 1941 թ. հունիսի 20-ին արտասանած իր ճառում,— մտել է բոլշևիզմի դեմ մղվող վերջին մարտի մեջ և ռազմական ու քաղաքական բնագավառում մղվող այդ վերջին մարտը պետք է ավարտել... Չորս խոշոր բլոկներ պետք է պաշտպանեն մեզ և միաժամանակ հեռու, դեպի Արևելք առաջ մղեն Եվրոպայի էությունը՝ 1. Մեծ Ֆինլանդիան, 2. Մերձբալթիկան, 3. Ուկրաինան, 4. Կովկասը...» (փաստաթուղթ № 8)։

Ֆաշիստական ռեյխի պարագլուխների 1941 թ. հուլիսի 16-ին տեղի ունեցած խորհրդակցությունում, անդրադառնալով Սովետական Միության դեմ մղվող պատերազմի նպատակներին, Հիտլերը նշել է, որ Ուրալից արևմուտք ռազմական տերության ստեղծումը չպետք է նորից օրակարգի հարց դառնա, թեկուզ դրա համար մենք հարկադրված լինենք պատերազմել հարյուր տարի։ Ֆյուրերի բոլոր հետևորդները պետք է գիտենան, որ կայսրությունը միայն այն ժամանակ անվտանգ կլինի, երբ Ուրալից արևմուտք օտար զորքեր չլինեն։ Այդ տարածության պաշտպանությունը, հնարավոր բոլոր վտանգներից, իր վրա է վերցնում Գերմանիան...

Այնուհետև ֆյուրերը ընդգծում է, որ ողջ Մերձբալթիկան պետք է կայսրության մարզերից մեկը դառնա։ Կայսրության մարզերի պետք է վերածվեն նաև Ղրիմը, Պովոլժիեն, իսկ Բաքվի մարզը՝ կայսրության ռազմական գաղութի... (փաստաթուղթ № 10)։ Միաժամանակ, ինչպես վկայում են վավերագրերը, հիտլերականները ցանկանում էին օր առաջ խաղաղություն հաստատել գրավված վիթխարի տերիտորիաներում։ Դրա համար ֆյուրերը պահանջում էր գնդակահարել բոլոր նրանց, ովքեր թեկուզ ծուռ կնայեն իրենց (բռնազավթիչների— Վ. Վ.) վրա։

Եվ նացիստական ճիվաղները կատարում էին իրենց հրեշագործությունները։

«Հրեական-բոլշևիկյան սիստեմի դեմ մղվող արշավանքի գլխավոր նպատակն է,— ասված է 6-րդ բանակի հրամանատար գեներալ ֆելդմարշալ ֆոն Ռեյխենաուի 1941 թ. հոկտեմբերի 10-ի հրամանում,— լիովին ջախջախել այդ պետական հզորությունը, արմատախիլ անել ասիական ազդեցությունը եվրոպական կուլտուրայի վրա... Արևելքի պատմական ու գեղարվեստական ոչ մի արժեք նշանակություն չունի»։ Հեռանկարում օկուպացված արևելյան մարզերը տնտեսապես կօգտագործվեն իբրև գաղութներ... և բնակչությանը արժեքավոր սպառողական պարենով ապահովելու մասին խոսք անգամ լինել չի կարող։ Ընդհակառակը, ընդհանուր կենսամակարդակի բարձրացման բոլոր տենդենցները պետք է նախապես ճնշվեն ամենադաժան միջոցներով (փաստաթղթեր № № 16, 17)։

Օկուպացված արևելյան մարզերի գործերի մինիստրության առաջին գլխավոր քաղաքական վարչության գաղութացման բաժնի պետ Վետցելը OCT գլխավոր պլանի վերաբերյալ իր դիտողություններում և առաջարկություններում նշում է, որ օկուպացված ռուսական տերիտորիայում ռուսների ծննդաբերությունը պետք է հասցվի առավել նվազագույն չափերի, քան գերմանացիներինը։ Նույն այդ քաղաքականությունը անհրաժեշտ է կիրառել նաև Կովկասի չափազանց բեղմնավոր ժողովուրդների, իսկ հետագայում, մասնավորեն, նաև՝ Ուկրաինայի նկատմամբ... Այդ մարզերում մենք պետք է գիտակցորեն կիրառենք բնակչության կրճատմանն ուղղված քաղաքականություն։ Պրոպագանդայի՝ հատկապես մամուլի, ռադիոյի, կինոյի, թռուցիկների և այլ միջոցներով պետք է բնակչությանը մշտապես ներշնչենք այն միտքը, թե վնասակար է շատ երեխաներ ունենալ... Եթե երրորդ կայսրությունը պիտի գոյատևի հազարավոր տարիներ, ապա մեր պլանները պետք է մշակվեն ամբողջ սերունդների համար։ Դա նշանակում է, որ ռասայական-կենսաբանական գաղափարը պիտի վճռական նշանակություն ունենա ապագա գերմանական քաղաքականության մեջ (փաստաթուղթ № 18)։ Նոր նվաճված տարածությունը պետք է լցվի գերմանական արյունով ու գերմանական կյանքով, բայց ոչ գերմանացրած մարդկանցով։

Երկրորդ՝ Սովետական բնակչության մասսայական ոչնչացումը բաժնում բերված փաստաթղթերը վկայում են օկուպանտների այն արյունարբու ռեժիմի մասին, որը որակելու համար դժվար է համապատասխան բառեր գտնել։ Անցած պատերազմների պատմությանը հայտնի չեն խաղաղ բնակչության և ռազմագերիների նկատմամբ կիրառված նման եղեռնագործական արարքներ։ Ամենաաննշան անհնազանդության կամ գերմանական իշխանությունների հրամաններն ու կարգադրությունները չկատարելու համար կիրառվում էր պատժի առավելագույն չափը՝ կախաղան, գնդակահարում, հրկիզում։

№ 23 փաստաթղթում ասված է, որ մարդկային կյանքը օկուպացված մարզերում ոչ մի նշանակություն չունի, որ տեղական բնակչության ըմբոստությունները հենց սաղմի մեջ խեղդելու համար պետք է գործադրվեն բացառիկ դաժան միջոցներ, իսկ օկուպացիոն իշխանությունների հեղինակությունն ամրապնդելու համար՝ ամենուրեք իշխեն ահն ու սարսափը։ Գերմանական յուրաքանչյուր զինվորի կյանքը պետք է փոխհատուցվի 50—100 կոմունիստի մահապատժով։

Հիտլերականները ոչ միայն կախաղանի ու գնդակահարության, այլև սովամահության մատնելու միջոցով էին ոչնչացնում օկուպացված մարզերի բնակչությանը։ Ինչպես հաղորդվում է № 36 փաստաթղթում, Կիևի բնակչությանը շաբաթական տրվում էր 200-ական գրամ հաց և միայն աշխատողներին լրացուցիչ բաց էր թողնվում ևս 600 գրամ։ Իսկ այնպիսի մթերքներ, ինչպիսիք են՝ յուղը, միսը, շաքարը կիևցիները բոլորովին չէին ստանում։

Ֆաշիստները օկուպացված տերիտորիաներում ապրող սովետական քաղաքացիներին զրկում էին անգամ խմելու ջրից։ Այդ է վկայում գրքի 121-րդ էջում զետեղված հայտարարության ֆոտոպատճենը. «Ջուրը միայն գերմանական զինվորների համար է։ Այստեղից ջուր վերցնող ռուսները կգնդակահարվեն...»։

Գրքի վերջին՝ ՍՍՀՄ օկուպացված տերիտորիաների ազգային հարստությունների ավերումն ու կողոպտումը բաժնում բերված փաստաթղթերը պատմում են նացիստների տնտեսական դիվերսիաների մասին։ Ի լրումն Գյորինգի, այսպես կոչված «Կանաչ թղթապանակի», նացիստական իշխանություններն արձակել էին մի շարք հրամաններ ու հրահանգներ, որոնցում առաջադրվում էին օկուպացված տերիտորիաները կողոպտելու կոնկրետ խնդիրներ։ Այդ հրամաններում ու հրահանգներում հատուկ տեղ էր հատկացվում Բաքվի նավթի արդյունահանմանը, Կովկասի հարստությունների օգտագործմանը։

Բացի ռազմական նշանակություն ունեցող հումքից ու պարենամթերքից, հիտլերական ջարդարարները բռնագրավում և Գերմանիա էին փոխադրում նաև արվեստի, նյութական կուլտուրայի արժեքները։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների ու նրանց համախոհների չարագործությունների սահմանման ու հետաքննման պետական արտակարգ հանձնաժողովի տվյալներով (փաստաթուղթ № 183), Հայրենական մեծ պատերազմի տարիներին ֆաշիստական ջարդարարների կողմից ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությանը և օկուպացված քաղաքների ու գյուղերի բնակչությանը հասցրած վնասը, 1941 թ. գներով, կազմել են 679 մլրդ ռուբլի։

Ժամանակավորապես զավթած ՍՍՀՄ տերիտորիայում նացիստներն ավերեցին ու հրկիզեցին 1710 քաղաք ու քաղաքատիպ բնակավայր, ավելի քան 70 հազար գյուղ ու անօթևան թողեցին մոտ 25 մլն մարդ։ Քարուքանդ ու առավելապես տուժած քաղաքներից են այնպիսի խոշորագույն արդյունաբերական ու կուլտուրական

*) Преступные цели — преступные средства. Документы об оккупационной политике фашистской Германии на территории СССР (1941—1944 гг.). М., 1968 г., 384 стр.

կենտրոնները, ինչպիսիք են՝ Ստալինգրադը, Լենինգրադը, Կիևը, Մինսկը, Օդեսան, Սմոլենսկը, Նովգորոդը, Պսկովը, Օրյոլը, Խարկովը, Վորոնեժը և Դոնի-Ռոստովը: Գերմանա-ֆաշիստական զավթիչները հողին հավասարեցրին 32.850 արդյունաբերական ձեռնարկություն, 40 հազար հիվանդանոց, 84 հազար դպրոց, տեխնիկում, բարձրագույն կրթության հիմնարկություններ ու գիտահետազոտական ինստիտուտ, 44 հազար թատերական շենք, ակումբ և կարմիր անկյուն, 43 հազար գրադարան, 427 թանգարան, կողոպտեցին 98 հազար կոլտնտեսություն, 1876 սովխոզ և 2890 մեքենատրակտորային կայան: Նացիստական բարբարոսների ողորմածությանը չարժանացան անգամ կրոնական պաշտամունքի շենքերը: Նրանք ՍՍՀՄ տերիտորիայում ոչնչացրին կամ քարուքանդ արեցին 1670 եկեղեցի, 237 հռոմա-կաթոլիկական կոստյոլ, 69 մատուռ, 532 սինագոգա:

Ավերելով Սովետական Միության քաղաքներն ու բնակավայրերը, հրի ու սրի մատնելով օկուպացված տերիտորիայի բնակչությանը, ժողովրդի քրտնաջան աշխատանքով ստեղծված նյութական ու մշակութային արժեքները, նացիստական ջարդարարները ցանկանում էին մեր երկրում ստեղծել քաոսային վիճակ, ու դրանով հեշտացնել օկուպացված մարզերի շահագործումն ու կառավարումը, սովետական մարդկանց զրկել մարդկային ամենատարրական իրավունքներից, նրանց ճորտացնել:

Հիտլերյան բարբարոսների չարանենգ մտահղացումները հօդս ցնդեցին: Լենինյան վեհ գաղափարներով դաստիարակված սովետական մարդիկ պատերազմի հենց առաջին օրից ազատագրական պայքար ծավալեցին հիտլերյան հրոսակների դեմ: Ֆաշիստական բռնակալների տեռորիստական ամենադաժան ռեժիմի պայմաններում անգամ նրանք հավատարիմ մնացին սոցիալիստական հայրենիքին, կոմունիստական կուսակցությանը և, համառորեն տոկալով ամեն տեսակ զրկանքների, արյան ու կյանքի գնով պաշտպանեցին Մեծ հոկտեմբերի նվաճումները, ՍՍՀՄ պետական շահերը, նրա ազատությունն ու անկախությունը: Նրանք մեկ մարդու նման Հայրենական պատերազմի ելան ֆաշիստական զավթիչների դեմ և դաժան գոտեմարտերում գլխովին ջախջախեցին հիտլերյան ռազմական ու պետական մեքենան, հաղթանակի դրոշ բարձրացրին նացիստական որջի՝ Բեռլինի վրա: Իսկ 1945 թ. նոյեմբերի 20-ին ֆաշիստական գլխավոր ռազմական հանցագործները կանգնեցին միջազգային զինվորական տրիբունալի առաջ:

Նյուրնբերգյան դատավարությունն իր արդարացի դատավճռով արժանի պատիժ տվեց «երրորդ կայսրության» գլխավոր ռազմական հանցագործներին և միաժամանակ ագրեսիան համարեց միջազգային հանցագործություն:

Ցավոք, Արևմտյան Գերմանիայի միլիտարիստները և նրանց հովանավորող անգլո-ամերիկյան իմպերիալիստները մոռացության են մատնել Նյուրնբերգյան դատավճռով սահմանված այդ կարևոր հանգամանքը և, արհամարհելով պատմության դասերը, շարունակում են իրենց ագրեսիվ քաղաքականությունը: Նրանք ամեն տեսակ պրովոկացիաներ են հրահրում, սրում լարվածությունը, համաշխարհային նոր պատերազմի սպառնալիք ստեղծում:

Բոննի կառավարող շրջանները ոչ մի ջանք չեն խնայում բունդեսվերը նորագույն ժամանակակից զենքով զինելու համար: Ներկայումս Արևմտյան Գերմանիայի զինված ուժերի թվաքանակը հասնում է 640 հազար հոգու: Այժմ այստեղ կան ավելի շատ դիվիզիաներ, քան Արևմտյան Եվրոպայի որևէ երկրում: Տենդորեն աճում է զենքի ու զինամթերքի արտադրությունը: ԳՖՀ-ում արդեն կա այնքան տանկ, որքան ուներ Հիտլերը երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին: Երկրում մտցվում է այնպիսի օրենսդրություն, որը կարող է հնարավորություն տալ ցանկացած պահին հանրապետությունը փոխարինել ռազմական դիկտատուրայով, ինչպես այժմ, այնպես և առաջիկայում շարունակել ռևանշի ու էքսպանսիայի, հետպատերազմյան սահմանների վերանայման քաղաքականությունը: Այդ քաղաքականության ջատագովները՝ Բոննի ռազմատենչ գեներալները, մոնոպոլիստները և նեոնացիստները ձգտում են բունդեսվերը զինել ատոմային զենքով, ամբողջ Արևմտյան Եվրոպայում իրենց կամքը թելադրելու իրավունք ձեռք բերել: Նրանք պայքարում են ՆԱՏՕ-ի շրջանակներում լիակատար ինքնուրույնության և ավելի մեծ ազդեցության համար: Եվ այդ ամենը կատարվում է ԱՄՆ-ի ու Մեծ Բրիտանիայի կառավարող շրջանների թողտվությամբ ու աջակցությամբ:

Անդրադառնալով գրախոսվող ժողովածուի արժանիքներին, պետք է նշենք, որ այն մի կարևոր ավանդ է Հայրենական մեծ պատերազմի տարեգրությանը նվիրված գրականության մեջ: Դրա նպատակն է ո՛չ միայն արդի սերունդներին իրազեկ դարձնել ֆաշիստական բռնակալների գիվային չարագործություններին, այլև կրկին ու կրկին հիշեցնել անգլո-ամերիկյան ռազմամոլներին, թե ինչպիսի վտանգավոր ուղու վրա են կանգնել նրանք, հովանավորելով արևմտագերմանական ռևանշիստներին: Վերջապես, այն կարող է օգտակար լինել մեր պատմաբանների, պրոպագանդիստների, ագիտատորների, ինչպես նաև բոլոր նրանց համար, ովքեր զբաղվում են Հայրենական մեծ պատերազմի պատմության ուսումնասիրմամբ:

Վ. Գ. ՎԱՐԴԱՆՅԱՆ



# ՇՈՒՏՈՎ ԿԾԱԳԻ ԱՐԵՎԸ, ԿԲՈՂԲՈՋԵՆ ԾԱՌԵՐԸ....

1917 թվականի նոյեմբերի 14-ին հեղափոխական Մոսկվան Կարմիր հրապարակում վերջին հրաժեշտն էր տալիս հոկտեմբերյան մարտերում հերոսաբար ընկածներին. հազարավոր մարտիկներ երդվում էին ընթանալ զոհվածների ուղիով, կռվել մինչև վերջնական հաղթանակը: Մարտական շատ ընկերների հետ թաղում էին նաև հայ ժողովրդի արժանավոր դստերը: Պատմության իր ազնվագույն ուսուցչուհու՝ ականավոր բոլշևիկ Ելենա Ստասովայի անձնուրաց հետևորդն էր նա, որին վաղ թե ուշ դառանակալ մահն էր սպասում: Երբ Ստասովային Սիբիր աքսորեցին, դեռահաս Լուսիկը ո՛չ միայն կանոնավոր նամակագրական կապ ուներ աքսորյալ ուսուցչուհու հետ, այլև հաստատ վճռել էր գնալ նրան տեսության ու պատմել, որ ինքը և շատերը ուխտել են ընթանալ անզուգական Ելենա Դմիտրիևնայի տատասկոտ ուղիներով:

Դրանից հետո արդեն նրա համար մահը սոսկալի չէր: Նա բավականին կարդացել էր և համոզվել, որ սոցիալիզմի հաղթանակը շատ զոհեր է խլելու: Նա գիտեր, որ այդ ճանապարհով են ընթացել բոլոր նրանք, ովքեր երազել են խորտակել կեղեքման և անարդարության վրա հիմնված կարգերը:

Այժմ նրան էին թաղում, որն ընկավ մեծ գաղափարի հաղթության շեմին: Սոցիալիստական հեղափոխության բարիկադներում ընկած շատ փոթորկածինների հետ զոհվեց և հրաբորբ մի սիրտ. համոզված լենինյան, քսանամյա Լուսիկ Լիսինյանը (Լիսինովան):

Մոսկվայի հոկտեմբերյան մարտերի հերոսուհուն է նվիրել իր համեստ գրքույկը[1] պատմական գիտությունների թեկնածու Լ. Ի. Պետրոպավլովսկայան: Արխիվային փաստաթղթերի, Լիսինյանի՝ հարազատներին գրած նամակների, նրա հետ մարտնչող ընկերների, ուսուցիչների հիշողությունների հիման վրա հեղինակը կերտել է Լյուսյայի հմայիչ կերպարը: Ջերմ զգացմունքով գրված գրքույկն առաջին ամբողջական գործն է նրա մասին:

[1] Л. И. Петропавловская, Люсик Лисинова, М., 1968, 142 стр.

Այստեղ արտացոլված է այն ժամանակաշրջանը, երբ Ռուսաստանում սկսվում էր անձկալի սոցիալիստական հեղափոխությունը, երբ կեղեքողները ջանում էին ճնշել հեղափոխական շարժումը։ Այդ ժամանակ ծնվեց մի սերունդ, որն իր կյանքը նվիրաբերեց պատերազմները դադարեցնելու, ժողովուրդներին իմպերիալիզմի լծից ազատագրելու, կապիտալի տիրապետությունը տապալելու, սոցիալիզմի վեհ գործին։

Լուսիկը ծնվել է Թիֆլիսում, 1897 թվականին։ Հայրը՝ Հարություն Լիսինյանը, զբաղվում էր առևտրով, իսկ մայրը՝ Եկատերինա Լիսինյանը, կրթված ու զարգացած մի կին, նվիրվել էր չորս աղջիկների դաստիարակությանը։

Լիսինովների ընտանիքը հաճախ էր հանգստանում Սանահինում։ 1907 թ. ամռանը տասնամյա Լուսիկը ծանոթացավ Ալավերդու պղնձաձուլական գործարանի բանվորական խմբակի կազմակերպիչ Հովհաննես (Օնիկ) Աղաջանյանի հետ, որը հաճախ էր լինում նրանց տանը։ Օնիկի սրտաճմլիկ պատմություններն Ալավերդու բանվորների թշվառ կյանքի մասին տակնուվրա արին փոքրիկ Լուսիկի հոգեկան աշխարհը։ Շուտով նա մոտիկից տեսավ աշխատավորների զրկանքներով լի առօրյան։

1905 թ. նա ընդունվեց Թիֆլիսում գործող «Ուսուցիչների ընկերության» դպրոցը։ Այստեղ էին դասավանդում հեղափոխական գործունեության համար աքսորված, ոստիկանության հըսկողության տակ գտնվող ուսուցիչներ։ Լուսիկի հայացքների, գաղափարական ձևավորման գործում մեծ դեր է խաղացել այս դպրոցը, հատկապես նրա ուսուցչուհին՝ ականավոր հեղափոխական Ելենա Դմիտրիևնա Ստասովան։ Բազմակողմանի զարգացած ուսուցչուհին ոչինչ չէր խնայում իր սաների դաստիարակության համար։ Համառ, անհողդողդ բնավորությամբ, բանիմաց մանկավարժը հեշտությամբ հիպնոզում էր իր աշակերտների հոգին։ Նրանցից շատերի, ինչպես և Լուսիկի աշխարհայացքը ձևավորվեց նրա անմիջական ազդեցությամբ։

Ելենա Ստասովայի և Լուսիկ Լիսինյանի կապերը գնալով ամրապնդվեցին։ Լուսիկն ամենահարցասեր աղջիկներից էր,— հիշում է Ելենա Դմիտրիևնան... պատմության դասերին իր տըված հարցերով նա խիստ հետաքրքրեց ինձ, և աստիճանաբար մենք դարձանք բարեկամներ. ընդմիջումների ժամանակ հաճախ զրուցում էինք նրան հետաքրքրող հարցերի շուրջ... նա գալիս էր ինձ մոտ տուն։

Դեռ վաղ պատանեկությունից Արքա Լիր, Մակբեթ և շեքսպիրյան այլ երկեր կարդացած աղջիկը հրապուրվում է Շիլլերի Ավազակներ-ով, Կարլ Մորիի ազնվությամբ, կամքի ուժով։ Նրան ես շատ եմ սիրում,— գրել է Լուսիկն իր օրագրում։ Շատ վաղ է Լուսիկը սովորել մարդու մեջ գնահատել վեհ հպարտությունը, սեփական արժանապատվության, ազնվության զգացումը. ընկճվածությունը, հուսահատությունը դեռ փոքրուց խորթ են եղել նրան։

Ուսման ծարավը նրան բերում է Թիֆլիսի օրիորդաց պետական գիմնազիա։ Այստեղ նա ակտիվ մասնակցում է հասարակական մտքի զարգացումն ուսումնասիրող խմբակի (Մինասի) պարապմունքներին և դառնում «Երիտասարդ ուժ» ամսագրի ամենագործունյա աշխատակիցներից մեկը։ Բայց շուտով ոստիկանությանը հայտնի է դառնում նրանց գործունեությունը, արգելված գրականությանը հաղորդակից լինելը, և խմբակը ցրվում է։

Գիմնազիան ավարտելուց հետո Լիսինյանը մասնակցում է հեղափոխական ընդհատակյա մի այլ խմբակի գործունեությանը, տպագրում թռուցիկներ և տարածում աշխատավորական մասսաների շրջանում։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Լուսիկը քրոջ՝ Գոհարի հետ միասին սովորում է քույրական դասընթացներում և, որպես գթության քույր, աշխատում զինվորական հիվանդանոցում։ Նա գիշերները լուսացնում էր ծանր հիվանդների մոտ, փոխում վիրակապերը, նամակներ գրում նրանց հարազատներին։ Բոլորը սիրում և հարգում էին իրենց Լյուսյային։ Հեղափոխական տրամադրություններով համակված զինվորների հետ ունեցած զրույցներից նա ըմբռնեց պատերազմի իմպերիալիստական բընույթը, հասկացավ՝ ինչ է մահը և առաջին անգամ մոտիկից տեսավ այն։ Նրա համար ծանր էր այս միջավայրը, և նա վճռեց թողնել հիվանդանոցը։

Լիսինյանը պատրաստվում է 1916 թ. ընդունվել Մոսկվայի առևտրական ինստիտուտը։ Աքսորավայրում գտնվող Ելենա Ստասովային նա գրում է. «Չգիտեմ դուք կգա՞ Ձեզ իմ ընտրությունը թե ոչ... Ես սարսափում եմ մեկնել։ Վախենում եմ, որ չկարողանամ կատարել բոլոր պլաններս, իսկ դա ինձ ցավ կպատճառի։ Բայց գիտեմ, որ կկատարեմ, չէ՞ որ չի կարելի պատասխանատվությունը գցել ուրիշի վրա»։

Սեպտեմբեր, 1916 թ.։ Առևտրական ինստիտուտի ուսանող է Լիսինյանը։ Այստեղ էին սովորում «քաղաքականապես անբարեհույս» շատ ուսանողներ։ Ինստիտուտում գործում էր առաջավոր ու համարձակ գաղափարներ տարածող բոլշևիկյան խմբակը։ Աշնանը Լուսիկը կապվում է Զամոսկվորեցկի գաղտնի կազմակերպության հետ, մասնակցում առևտրական ինստիտուտի անլեգալ գործերին, ընդունվում ուսանողների սոցիալ-դեմոկրատական (բոլշևիկյան) կազմակերպության շարքերը։ Այստեղ նա ծանոթանում է Ա. Ստալյարովի, Ա. Ալեքսեևայի, Վ. Ալֆերովի, Լ. Ջենոկովայի, Ա. Կոլպակովայի, Ե. Տրոիցկայայի և այլ ուսանողների հետ։

Զամոսկվորեցկի բոլշևիկների հավաքատեղին ինստիտուտի ճաշարանն էր. Նկուղում (որը նրանց թաքստոցն էր) տպագրվում էին հեղափոխական թռուցիկներ։ Լյուսյան ամեն օր ճաշարանում էր։ Հետագայում նա ծանոթացավ ինստիտուտի մարքսիստական խմբակի «տարեց» կազմակերպիչների՝ Կ. Օստրովիտյանովի, Յա. Բոգոմոլովի, Վ. Ձերոտարևի, Մ. Նեստերովի, Պ. Հարությունյանցի և ուրիշների հետ, որոնք նըպաստեցին նրա հետագա հեղափոխական գործունեության ծավալմանը։

Ոստիկանությունն սկսեց հետապնդել Լիսինյանին. արդեն նրանց հայտնի էր վերջինիս նամակագրական կապը Սիբիր աքսորված Ելենա Ստասովայի հետ։ Բայց նա կարողացավ խույս տալ ձերբակալությունից։ 1916 թ. Լուսիկն ընդունվեց ՌԿ(բ)Կ շարքերը։ Նրան չէին վախեցնում ընդհատակյա աշխատանքի վտանգավորությունն ու դժվարությունները։ Նա ագիտացիոն պրոպագանդիստական աշխատանք էր վարում Միխելսոնի գործարանում, Բրոկարի ֆաբրիկայում և Դանիլովսկի մանուֆակտուրային ձեռնարկություններում։ Բանվորները մեծ սիրով էին լսում իրենց երիտասարդ ղեկավարին, որը բացատրում էր երիտասարդական միություն ըստեղծելու անհրաժեշտությունը։ Գործարաններում և ֆաբրիկաներում կազմակերպված խըմբակները համալրվում էին նորանոր բանվորներով։ Նրա ջանքերով 200 բանվոր անցան երիտասարդական միության շարքերը։

Հետաքրքրությամբ են կարդացվում Մոսկվայի գործադուլներին նվիրված գրքույկի էջերը։ Ամենուր իրարանցում էր։ Հակահեղափոխականները պահանջում էին Մոսկվան մեկուսացնել Պետերբուրգից, չտպագրել այնտեղ կատարվող իրադարձությունների մասին։ Փետրվարի 18-ին ոչ մի թերթ չտպագրվեց։ Մեծ անելիքներ ունեին Զամոսկվորեցկի բոլշևիկները. նրանք պետք է կազմակերպեին գործարանների ու ֆաբրիկաների գործադուլը։ Նրանց ջանքերով գործադուլը շուտով համընդհանուր դարձավ։

1917 թ. մարտ։ Բոլշևիկյան կուսակցությունը դուրս եկավ ընդհատակից։ Լույս տեսավ բոլշևիկյան «Правда» թերթը, իսկ մարտի 7-ին տպագրվեց Մոսկվայի բոլշևիկյան կոմիտեի օրգան «Социал-демократ»-ը։ Կուսակցական կոմիտեի հանձնարարությամբ Լուսիկ Լիսինյանը մի քանի այլ կանանց հետ բազմացնում և բանվորների շրջանում տարածում էր թերթերում տպագրված կարևոր հոդվածները։

Զամոսկվորեցկի կուսակցության կոմիտեն ցնծության մեջ է. Վլադիմիր Իլյիչը Պիտերում է։ «Правда»-ում տպագրված Ապրիլյան թեզիսները մեծ տպավորություն են գործում Լուսիկի վրա։ Շատ ակտիվ գործիչների հետ միասին նա ևս հրավիրվում է Պիտեր՝ մասնակցելու կուսակցության ապրիլյան պատմական կոնֆերանսի աշխատանքներին։ Ահա թե ինչ է գրում նա այդ առթիվ քրոջը՝ Անահիտին. «...այժմ ես գնալու եմ Պիտեր՝ լսելու իմ Լենինին։ Ես դեռ շատ պետք է խորհեմ այդ թեզիսների շուրջ։ Հետո կգնամ Մոսկվա, որպեսզի մեկնեմ բանվորական որևէ շրջան՝ ագիտացիայի և պրոպագանդայի»։

Պիտերում Լուսիկը հանդիպեց իր սիրելի ուսուցչուհուն՝ Ելենա Դմիտրիևնային։ Այդ օրը նրա համար ամենաերջանիկներից էր։ Իսկ ուսուցչուհին հիացած էր իր սանով, որն իրենց հետ էր, իրենց շարքերում...

Շուտով ուժեղացան ռեպրեսիաները Մոսկվայի բոլշևիկների դեմ։ Ժողովներում ու միտինգներում ելույթ ունեցող բոլշևիկների պահպանության համար գործարաններում և ֆաբրիկաներում զինված պահակախմբեր կազմակերպվեցին։ Կոռնիլովյան խռովությունը տապալվեց։ Հեղինակազրկված մենշևիկներն ու էսեռները հեռացվեցին սովետներից։ Մոսկվայի սովետը կանգնեց բոլշևիկյան դիրքերում։

Մոսկվայի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ ընդունեց զինված ապստամբության մասին Վ. Ի. Լենինի ցուցումները և բոլշևիկյան Կենտկոմի ու Մոսկվայի կուսակցական կոմիտեի դիրեկտիվները։ Կուսակցության շըրջկոմն ու գործարանային շատ կոմբջիջներ երիտասարդության շրջանում ծավալուն աշխատանք էին կատարում։ Այդ գործին ակտիվ մասնակցում էր Լուսիկը։ Հոկտեմբերյան հեղափոխությունից մի քանի օր առաջ, հիշում է Միխելսոնի բանվորուհի Ա. Բակլանովան, ընկեր Լիսինովան եկավ մեր գործարանը՝ մեզ զինված ապստամբության նախապատրաստելու։

Զինվորները կապված էին Միխելսոնի բանվորների հետ և նրանց զենք էին մատակարարում։ Վլադիմիր Ցայդիշը կարմիրգվարդիականներին զինվորական գործին ծանոթացնում, կրակել էր սովորեցնում։ Իսկ Լուսիկը բանվորներին, III Ինտերնացիոնալի երիտասարդությանը և Զամոսկվորեցկի աղջիկներին՝ առաջին բուժօգնություն։

Հոկտեմբերյան մարտերը ոգևորեցին Լուսիկին. հանգիստը մոռացած, հետախուզական աշխատանքներ էր կատարում նա, առաջին օգնություն ցույց տալիս վիրավորներին։ Գնդակների տարափի տակ դիրքից դիրք էր անցնում, բարիկադներ կանգնեցնում, ընկերների հետ միասին վերականգնում յունկերների գրաված հեռախոսակայանը։

Ամենավտանգավոր պահերին Լիսինյանն առջևում էր, գործում էր այնտեղ, ուր առավել կարևոր էր, վտանգավոր, ուր վերջնական հաղթանակն էր դարբնվում,— պատմում է Ե. Կարմանովան։ Նրան հաջողվում է անցնել յունկերների պահակախմբի միջով և տեղեկություններ

հաղորդել Զամոսկվորեցկի հեղափոխական կոմիտեին։

Հոկտեմբերի վերջերին միանալով բոլշևիկ Մաքսի դասակին, հերթական առաջադրանքը կատարելիս, սպիտակգվարդիականների գնդակից սպանվեց Լուսիկ Լիսինյանը։

Լիդիա Պետրոպավլովսկայան խիստ շնորհակալ գործ է կատարել։ Լիսինյանի մասին գրված գրքույկը վավերագրական-գեղարվեստական մի գողտրիկ վիպակ է, որում հրապուրիչ, պարզ և իմաստալի նկարագրություններով վերակերտվել է գաղափարական երիտասարդ Լուսիկ Լիսինյանի կենդանի կերպարը։ Ահա թե ինչու գրքույկը կարդացվում է հափշտակությամբ և գերում ընթերցողին՝ հերոսուհու վեհ պատկերով։ Լուսիկը զոհվեց հեղափոխության հաղթության շեմին այն խոր հավատով, որ շուտով կծագի արևը և կբողբոջեն-ծառերը։

Հայ ընթերցողը մասամբ ծանոթ է Լուսիկին այն գրքույկից, որը լույս տեսավ Երևանում, 1958 թ. Լուսիկ Լիսինյան վերնագրով։ Հուշերի, նամակների և Լուսիկի օրագրից արված քաղվածքների այդ օգտակար ժողովածուն ջերմ ընդունելության գտավ ընթերցողների շրջանում։ Չենք կասկածում, որ գրախոսվող գրքույկը, որը լույս է տեսել 100 հազար տպաքանակով, նոր լույս կսփռի հայ ժողովրդի անվեհեր դստեր հեղափոխական գործունեության վրա։

Նկատի առնելով նման գրքերի խոշոր դաստիարակչական նշանակությունը մատաղ սերնդի համար, մենք կուզենայինք, որ առաջիկայում «Հայաստան» հրատարակչությունն ի մի հավաքեր Լուսիկ Լիսինյանի վերաբերյալ եղած նյութերը և մի գրքով այն մատուցեր հայ ընթերցողին։

Կարծում ենք, որ միանգամայն հնարավոր է և ուսանելի կլինի Լուսիկ Լիսինյանի կյանքի գործունեության հարուստ դրաման տեսնել ո՛չ միայն Երևանի դրամատիկ թատրոնի բեմում, այլև Հայֆիլմի նկարահանումների պլանում։ Նյութն ինքնին շատ հարմար է էկրանացման համար։

ՁԵՓՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ






ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՆՑ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

ՎՖ 03217 Պատվեր 655 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$։ Տիրաժ 11.200 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 21/V 1969 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյանի փող. № 28։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին։ *Մ., Զինհրատ, 1968, 168 էջ։*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կուսակցության կանոնադրության առթիվ։ *Մ., Քաղհրատ, 1968, 215 էջ։*

*Կուսուսուցման ցանցի բարձր օղակներում կուսշինարարությունն ուսումնասիրողների համար նախատեսված ներկա ժողովածուում զետեղված են աշխատություններ ու քաղվածքներ կուսկանոնադրության մասին։*

Հուշեր Վ. Ի. Լենինի մասին, *հինգ հատորով։ Հատոր առաջին։ Հարազատների հուշերը։ Մ., Քաղհրատ, 1968, 639 էջ։*

*Ժողովածուում (առաջին հատորում) զետեղված են Վ. Ի. Լենինի կնոջ՝ Ն. Կ. Կրուպսկայայի, քույրերի՝ Աննայի և Մարիայի, եղբոր՝ Դմիտրի Իլյիչի, արտասահմանյան բարեկամների ու զինակիցների հուշերը մեծ առաջնորդի մասին։*

ՍՍՀՄ պատմության հնագույն ժամանակաշրջանից մինչև մեր օրերը։ *Երկու սերիայով, տասներկու հատորով։ Հատոր 6, Ռուսաստանն իմպերիալիզմի շրջանում 1900—1917 թթ., Մ., «Наука» հրատ., 1968, 854 էջ։*

ԱՎԵՏԻՍՅԱՆ Հ. Ա.— Անդրկովկասի կոմերիտմիությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։ *Երևան, ԳԱ հրատ., 1968, 266 էջ (ռուսերեն)։*

*Արխիվային նյութերի, գրականության և որոշումների հիման վրա հեղինակն ուսումնասիրել է Անդրկովկասի կոմերիտմիության 1921—1925 թթ. պատմությունը։*

ՕՍԻՊՅԱՆ Ս. Ա., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ. Մ.— Հայկական ՍՍՀ պետական իշխանության տեղական մարմինները ներկա ժամանակաշրջանում։ *Երևան, «Հայաստան» հրատ., 1969, 72 էջ։*

Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի քրեստոմատիա։ *Օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ունկնդիրներին, Երևան, «Հայաստան» հրատ., 1969, 495 էջ։*

*Քաղվածքները բերված են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի երկերի հայերեն հրատարակություններից։*

ՍԱՐԳՍՅԱՆ Ս. Վ.— Հայ-ռուսական արվեստի պատմությունից։ *Երևան, «Հայաստան» հրատ., 1969, 219 էջ։*

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսությունը 1967 թ.։ *(Վիճակագրական տարեգիրք) (ռուսերեն), Երևան, Հայվիճվարչության հրատ., 1968, 263 էջ։*

ԻՏԿԻՆԱ Ա. Մ.— Հեղափոխականը, տրիբունը, դիվանագետը։ *Ալեքսանդրա Միխայլովնա Կոլոնտայի կյանքի ուրվագիծը, Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 160 էջ։*

*Հին հեղափոխականը արտացոլել է լավագույն լենինյան Ա. Մ. Կոլոնտայի (1872—1952) հեղափոխական գործունեությունը։*

ՔԱՐԱՄՅԱՆ Կ. Ն.— Հայ ժողովրդի ազատագրական պայքարի և ազգային-ազատագրական շարժման օրինաչափության հարցի շուրջ։ *Երևան, «Հայաստան» հրատ., 1969, 129 էջ։*

*Ներկա ուսումնասիրության մեջ բացահայտված է հայ ազատագրական շարժումների օրինաչափությունը։*

ՄԱՆՈՒԿՅԱՆ Ռ. Ա.— Բոլշևիկների հեղափոխական աշխատանքը կովկասյան բանակում։ *1917 թ. փետրվար—1918 թ. փետրվար։ Երևան, «Միտք» հրատ., 1969, 271 էջ։*

*Արխիվային նյութերի և գրականության հիման վրա հեղինակը հետազոտել է բոլշևիկների բազմակողմանի գործունեությունը կովկասյան բանակում և նրանց սկզբունքային պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ։*

ԳԻՆԸ 25 Կ. 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԻԼԻՈՆ ԿԻԼՈՎԱՏ

*Այդպիսին է եզակի տուրբոգեներատորի կարողությունը, որը պատրաստում է Խարկովի Վ. Ի. Լենինի անվան «Էլեկտրատյաժմաշ» գործարանը։ Հզոր ագրեգատը նախատեսված է գործարանային ստենդի համար, որի օգնությամբ հնարավոր կլինի փորձարկել միլիոն կիլովատ կարողություն ունեցող սերիական ագրեգատներ։*

## ԱՆՏԻԲԻՈՏԻԿՆԵՐԻ ՈՐՈՆՈՒՄԸ

*Հակաուռուցքային անտիբիոտիկ—* Օլիվոմիցին *է ստեղծել ՍՍՀՄ բժշկական ակադեմիայի նոր անտիբիոտիկների հայտնաբերման ինստիտուտը։ Ինստիտուտի հիմնական խնդիրն է՝ հայտնաբերել հակաբակտերիալ նյութեր, որոնք գոյանում են միկրոօրգանիզմների գործունեությունից։ Ինստիտուտը հատկապես զբաղվում է լյարդի որոշ չարորակ ուռուցքներ բուժող անտիբիոտիկների որոնմամբ։ Այժմ երկրի կլինիկաներում ստուգվում են գիտնականների հայտնաբերած մի քանի տեսակ նոր դեղորայքները։*

## *ԱՇՏԱՐԱԿԱՅԻՆ ՆՈՐ ԱՄԲԱՐՁԻՉ*

*Լենինգրադի «Ստրոյմաշ» կենտրոնական կոնստրուկտորական բյուրոն նախագծել է աշտարակային նոր ամբարձիչ։ Ներկայումս բնակարանային շինարարության ասպարեզում հիմնականում օգտագործվում է մոտ 5 տոննա բեռնամբարձություն ունեցող կռունկ, իսկ նորը կարող է մինչև 70 մետր 25 տոննա բեռ բարձրացնել։*

## ՆԱԽԱՊԱՀՊԱՆԱԿԱՆ ՑՑԵՐ

*Քիշնևի կենտրոնում կառուցվելու է օպերայի և բալետի նոր շենք, որի հիմքի տակ շինարարները 1500 ցից են խրելու հողի մեջ։ Սա երկրաշարժից պահպանելու միջոց է, իսկ Մոլդավիան, ինչպես հայտնի է, գտնվում է երկրաշարժային գոտում։*

## ԼԻՄՈՆԻ ՆՈՐ ՏԵՍԱԿ

*«Տաշքենդ» լիմոնի թփերը կլոր տարին պտուղ են տալիս, որոնցից յուրաքանչյուրը կշռում է 500—700 գրամ։ Այդ տեսակն աճեցրել է սելեկցիոներ Զ. Ֆախրուդինովը։ Նա մշակել է ցիտրուսների աճեցման ջերմոցային սիստեմ, որի շնորհիվ ցիտրուսների պտղաբերության համար սարսափելի չեն ոչ չոր ու շոգ ամառը և ոչ էլ ցրտաշունչ ձմեռը։*

## ՊԼԱՍՏՄԱՍՍԵ ՋՐԱՐԳԵԼԱԿ

*Լեհաստանի Բիդգոշչիի շրջանի ջրանցքներից մեկում տեղակայված է թերևս աշխարհում առաջին պլաստմասսե ջրարգելակը։ Այն աշխատում է անբասիր։ Պլաստմասսե տարրերի ծառայության ժամկետը 20 տարի է, իսկ կաղնու գերաններինը՝ միայն 6 տարի։*

## ԱԽԱՆՑ ՇԱՐԺԱՁՈՂԻ ԵՎ ԾՆԿԱՁԵՎ ԼԻՍԵՌԻ

*Ներքին այրման այս շարժիչը նախագծել է Կուրչատովի անվան ատոմային էներգիայի ինստիտուտի բնակարանային կոմունալ բաժնի աշխատակից Ա. Աբրամովը։ Հորիզոնական վիճակում գտնվող ռոտորի գլխիկներից մեկում կան երկու մխոց, որոնց արտաքին ճակատները վերջանում են առանցքակալային գլխիկներով։ Դրանք հենվում են պողպատե շերտերից պատրաստված ձվաձև ռոտորի ներքին մակերեսի վրա և պտտում են այն։ Այսպիսով, մխոցների հետադարձ-առաջընթաց շարժումը փոխարկվում է ռոտորին միացած ելքի լիսեռի պտտական շարժման։ Միջակա որևէ հաղորդում բացառված է, համապատասխանաբար պակասում է նաև կարողությունների կորուստը։*

*Բացի այդ, շարժիչների կարողությունն ավելացել է նաև այն բանի շնորհիվ, որ քառատակտ ցիկլում ռոտորի ամեն մի պտույտը համապատասխանում է աշխատանքի ընթացքին։*